# ՆԿԱՐԱԳՐԱԿԱՆ ՈՒՂԵՒՈՐՈՒԹԻՒՆ Ի ՀԱՅԱԲՆԱԿ ԳԱՒԱՌՍ ԱՐԵՒԵԼԵԱՆ ՏԱՃԿԱՍՏԱՆԻ

## ՏԵՂԱԳՐՈՒԹԻՒՆՔ

ՍԱՐԷՆ ԵՒ ՁՈՐԷՆ, ՀՆԷՆ ԵՒ ՆՈՐԷՆ
ՊԻՏԱՆԻ ԳԻՏՆՈՑ

## ՄԱՍՆ Գ.

Տեղագրեց
ՄԱՆՈՒԷԼ Կ. ՄԻՐԱԽՈՐԵԱՆ

معارف نظارت جليله سنك ٦٩٥ نومرولى رخصتيله

Կ. ՊՕԼԻՍ
ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆ Ա. Գ. ՊԱՐՏԻԶՊԱՆԵԱՆ
1885

Mirakhorean Manuel K.

# ՆԿԱՐԱԳՐԱԿԱՆ

## ՈՒՂԵՒՈՐՈՒԹԻՒՆ
## Ի
## ՀԱՅԱԲՆԱԿ ԳԱՒԱՌՍ
## ԱՐԵՒԵԼԵԱՆ ՏԱՃԿԱՍՏԱՆԻ

ՏԵՂԱԳՐՈՒԹԻՒՆՔ
ՍԱՐԷՆ ԵՒ ՁՈՐԷՆ, ՀՆԷՆ ԵՒ ՆՈՐԷՆ
ՊԻՏԱՆԻ ԳԻՏՆՈՑ

Nkaragrakan ugheworut'iwn

**ՄԱՍՆ Գ.**

Տեղագրեց
ՄԱՆՈՒԷԼ Կ. ՄԻՐԱԽՈՐԵԱՆ

معارف نظارت جليله سنك ٦٩٥ نمرولي رخصتيله

Կ. ՊՈԼԻՍ
ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆ Ս. Ղ. ՊԱՐՏԻԶՊԱՆԵԱՆ
1885

# ՑԱՆԿ ԳԼԽՈՑ

# ՁՕՆ

# ԽՈՐԻՆ ԵՐԱԽՏԱԳԻՏՈՒԹԵԱՆ

ԱՌ

ԱՄԵՆԱՊԱՏԻՒ

## ՍՐԲԱԶԱՆ

# ՀԱՅՐԻԿ ԽՐԻՄԵԱՆ

## ՆԱԽՈՐԴ ՊԱՏՐԻԱՐՔ ԹՈՒՐՔԻՈՅ ՀԱՅՈՑ

*Առ եւ ընկալ, իմըս Հայրիկ*
*Զայս երրակի ՀԱՅ մատենիկ,*
*Զոր տամ ՆՈՒԷՐ Ձեր Ս. անուան,*
*Ի յիշատակ յաւէրժական :*

Ձեզ
Խ. Ծ.
ՄԻՐԱԽՈՐԵԱՆ

# ԿԱՆԽԱԲԱՆ

Հաւսկ ուրեմն կը հրատարակեմ իմ Տեղագրական Ուղեւորութեան այս Մնացորդն, որում սպասող ազնիւ ընթերցողաց ներողամտութիւնն կը խնդրեմ, մամլոյ տակէն ուշ ելնելուն համար . . . :

Երբ պարզօրէն մի արդա՛ր հաշիւ բռնեմք, ամեն ոք զարդացմամբ պիտի տեսնէ թէ Ուղեւորն ի՛նչ աստիճանի նիւթական զոհողութիւն եւ անձնանուիրութիւն ունի իւր Երկասիրութեան մէջ՝ որ այժմ կաւարտի սոյն Գ. Մասովն :

Ստուգիւ կը հաւատամ թէ ամեն աշխատութիւն, վաղ կամ անագան, վարձատրելի է համաձայն իւր կարեւորութեան եւ ծանրութեան, եւ թէ այս օրինակ պարագայից մէջ յուսահատութիւնն տկար մարդոց գործ լինելով՝ բնաւ չ՛կարեմ յանձն առնուլ զայն . գոհ եմ արդարեւ որ կարողութեանս չափով ծառայութիւն մը կը մատուցանեմ ոչ թէ միայն Ազգին, այլ նաեւ Բարեխնամ Կառավարութեան, որոյ Պետութեան Արեւելեան մասի դրոշմն կը կրէ գործոյս ամբողջութիւնն, զոր այժմ կը յանձնեմ մեր ընթերցասէր ազգայնոց 'ի նուրբ նկատառութիւն :

*
* *

Ներկայիւս կը փութամ զիմ խորին շնորհակալութիւն յայտնել առ Վսեմափայլ Յակոբ էֆէնտի Ֆրէնկեան, իւր այն բարձր դրից համար, զոր բարեհաճեցաւ 'ի գործ դնել 'ի դիւրութիւն իմ տաժանելի ԵՐԿՈՑ 'ի լոյս ընծայման : Նոյնպէս բանաւոր պատճառներ ունիմք մի եւ նոյն երախտագիտական ջերմ ըզգացմամբ աստ յիշել նաեւ Մեծապատիւ Լեւոն պէյ Փափազեանն : Յիշեալ երկու ազնուամիտ անձնաւորութիւններու դրուատանաց արժանի անուանքն աստ

նշանակելուս առթիւն կը յուսամ թէ իւրեանց ծանուցեալ համեստութիւնն ինձ պիտի ների ։

*
* *

Գործոյս այս մասի մէջ եւս երբէք չեմք ըրած եւրոպական դահլիճներու, արքայական պալատներու եւ կամ այլ շքեղ ապարանաց նկարագիրն, բնաւ մըտած չեմք Փարիզի, Պերլինի եւ Լօնտրայի նման աշխարհահռչակ մայրաքաղաքները, այլ միայն շրջագայած եւ նկարագրած եմք ալեւոր Երկրի մը Ֆիզիքական եւ ուրիշ զանազան կողմերն, ինչպէս նաեւ բընակչաց խրճիթներն, գետնափոր բնակարաններն, ՀԱՒԱՏՈՑ ՏԱՃԱՐՆԵՐՆ, 'ի մի բան, այն բոլոր վայրերը, ուր կը բնակին մեր Հայ գիւղացիք, որոց, ըրած եմք նմանապէս, տարեկան կենաց չորս եղանակի համառօտ նկարագիրն ։

*
* *

Գոհութեամբ սրտի տեսնելով որ Կեդրոնի Պատ. Ուսումնական խորհուրդն մեր երկասիրութիւնն (երեք Մասերն 'ի միասին) 'ի քննին առած՝ արժանի համարած է Ազգ. վարժարանաց յանձնարարել 'ի գործածութիւն, որպէս կերեւի իւր Ծ. րորդ նստի եւ յուլիս 13ի հըրատարակած պաշտօնական գրութիւններէն. ուստի պէտք զգացի աստ դնել հետեւեալ փոքրիկ հրահանգըն 'ի դիւրութիւն մասամբ մ'ուսուցչաց եւ առ հասարակ ուսանողաց ։

## ՀՐԱՀԱՆԳ

Ուսուցիչն նախ պէտք է աչքի առջեւ ունենայ մեր ուղեւորած մասերն պարունակող քարտէսը, որոյ վերայ կանխապէս լաւ մը սորվեցունէ ուսանողաց աշխարհիս չորս կողմնական կէտերն՝ իւրեանց գլխաւոր երկրորդականներովն եւ ապա քաղաքի մը կամ

տեղւոյ մը դիրք, այս ինչ տեղւոյ նկատմամբ, որոշելու վարժութիւնք ընել տալ եւ ասոր համար 3-4 դաս բաւական է, եթէ աշակերտք փոքր ինչ խելահաս են. այնուհետեւ դասն աւանդէ աշակերտաց եւ անոնցմէ պահանջէ որչափ որ կարելի է բերանացի պատմութեամբ (իմաստը առնելով)։ Այս դրութեամբ աշակերտքն պէտք է ուղեւորեն քարտիսովն, ոյր վրայ գտնուած տեղերն մատնացոյց ընել եւ անոնց անուններն տալ, զորս իրենք դասագրքին մէջ կարդացած լինելու են արդէն։

*

* *

Գաւառական անծանօթ բառերուն, ոմանց նման, փոխանակ ցանկ չինելոյ, պատշաճ դատեցինք իւրաքանչիւրի նշանակութիւն իրեն քով փակագծի մէջ դնել աւելի դիւրութեան համար, որ ընթերցողն չ'ըստիպուի շատ անգամ ցանկին նայիլ։

---

## ԿԱՐՃԱՌՕՏ ՏԵՍՈՒԹԻՒՆ ՄԸ

Հայաբնակ գաւառաց վերայ ընդհանրապէս խօսելոյ ատեն ընաւ չեմք ուզեր, ոմանց նման, չափազանց յոռետես կամ չափազանց լաւատես լինիլ՝ զոհելով մեր ուղղութիւնն զանազան նկատումներու, այլ մեզ համար մեթոտ ընտրած եմք պարզօրէն նկարագրել եւ տեղագրել Երկրի ճիշդ պատկերն ինչպէս որ տեսած, չօշափած եւ քննած եմք . . . . Երկրագործութիւնն արդէն ամեն տեղ տակաւին իւր նախնական վիճակի մէջ կը գտնուի. ժողովուրդն առ հասարակ ցորեան, գարի եւ տարեկան ցանել միայն գիտէ. իսկ ուրիշ արմտիք (զորս պէտք եղած տեղ յիշած եմք) եւ գետնախնձոր (փօթաթէս), որ ամենամեծ օգուտ կրնայ բերել, մանաւանդ սովոյ տարիներումն,

դուն ուրեք կը մշակուին եւ այն եւս խիստ նուազ քանակութեամբ ։ Գիւղացի բնակիչքն իւրեանց մտաւոր խեղճութեամբ, որով եւ անտարբերութեամբ, Երկրի կլիմային համաձայն, բնութեան հետ մրցիլ դժբաղդաբար դեռ չեն սորված ․ ահա խօսքիս ապացոյց, ունին ընդարձակ արտեր ջրարբի եւ միանգամայն բնակութեանց մերձ ․ սակայն իրենք միշտ կարօտ կը քաշեն սոխի մը եւ սխտորի մը, ՚ի բաց կը թողում ուրիշ կարեւոր բանջարեղէնք (զարզավաթ) ։

*

* *

Երկրի Հայ գիւղացիներն, ցաւ է ըսել, որ վարժուած են ամենաչնչին գումարի մը (500–1000 դհկն.) համար ձգել երեսի վրայ իւրեանց ընտանիք, ընդարձակ հողերն՝ ընտիր կալուածներն, խոփն, արօրն եւ վերջապէս ամեն ինչ թող տալով դիմել ՚ի պանդխտութիւն կամ աւելի ստոյգ բացատրութեամբ՝ գնալ ՚ի կորուստ ։ Այդ ուշակորոյս ողորմելիքն տարիներով կը թափառին պարտք վճարել եւ ապրուստով մը վերադառնալ ․ այս ժամանակամիջոցին Հայրենեաց արգաւանդ հողերն կը մնան անմշակ, ՚ի վնաս իւր եւ իւր Տէրութեան ․ մեր այդ պանդուխտքն թէ ինչ եղանակաւ կը յաջողին պսակել յոյսերնին, կը թողում իւրեանց մտածել, միայն թէ չ՚պէտք է մոռանալ եւ զայս՝ այսինքն երբ դոքա բնակավայրէն կը մեկնին, ո՛րպիսի կայտառութիւն, կազմուածք, ոյժ ունին եւ ի՛նչպէս ուղղաձիգ կը քալեն Երկրի վերայ ․ իսկ վերադարձին ինչպէ՞ս կայտառութիւննին կորսնցուցած, ուժէ ընկած, վատառողջ, գոգցես կմախ կտրած եւ մէկ խօսքով աղեղի նման ծռուած են յերկիր ։ Պանդխտութիւնն ուրեմն ազգի մ՚ամեն չարիքներէն գլխաւորն է ։

*

* *

Կարնոյ գաւառին մէջ, թերեւս ուրիշ շատ տեղերը, բազմաթիւ Հայ ընտանիք կան, որոնք սեպհական հող չունենալուն պատճառաւ աւատային դրութեան մը ներքեւ չարաչար աշխատելոյ դատապարտուած են. այս պարագային մէջ ներքին գաղթականութիւնք անհրաժեշտ են եւ խիստ շահաւոր՝ նոյն իսկ կառավարական տեսակէտով: Անհուն հողեր կան ամայի եւ տակաւին մտքէս չէ ելած Առբերանւոյ արեւելեան հիւսիսակողման լայնածաւալ դաշտն Ապաղայի. այդպիսի մշակելի տեղերը պէտք է փոխադրել անհող, այլ ժրաբազուկ այդ գիւղացիքն: Անհամար լեռներ, լեռնահովիտք, սարեր, ձորեր եւայլներ կան, յորս կարելի է հազարաւոր ոչխարներ ու զուարներ պահել եւ շատ տեղերու մէջ հասցնել ընտիր նժոյգներ, որք համեմատաբար լաւ արժէք ունին. ըսել է թէ գիւղացւոյն օգուտն կը պահանջէ որ այժմ գոնէ անասնաբուծութեան աւելի կարեւորութիւն տալով իւր ունեցածն բազմապատկէ, եւ եթէ չունի՝ ջանայ ձեռք բերել, ինքն թող անհաւատ չ'լինի տեղւոյ բընութեան վերայ, որ ժլատ չէ եւ կրնայ առատօրէն սնունդ մատակարարել այդ անասուններուն, որոց արդեամբք մի օր ինքն կ'ազատի պանդխտութեան անողոք ճիրաններէն:

Մեր Կայսերական Կառավարութիւնն բնաւ երբէք չուզեր իւր հաւատարիմ հպատակաց աղքատութիւնն, ըստ որում տիրողին եւ տիրելոյն շահերն սերտիւ իրարու հետ կապուած լինելով՝ մին չ'կրնար անվնաս մնալ երբ միւսն վնասուց ենթակայ է, եւ այս հօր ու զաւակաց համերաշխ կապն որչափ զօրանայ՝ այնչափ աւելի ժողովուրդն երջանիկ օրեր տեսնելոյ բաղդին կը հանդիպի, չ'նայելով այն մանաւոր հաշիւներուն, զորս իւրաքանչիւր ղարն իրեն հետ կը բերէ:

Երանի՜ թէ դրամատեարց կողմանէ յատուկ ըն-

կերութիւնք կազմուին 'ի շինութիւն, որով 'ի բնակութիւն ամայի տեղեաց, զարգացնեն Երկրի հողագործական, արհեստական եւ տնտեսական վիճակն, որ չ'լսուած կուրութեան մէջ է, արդար շահեկանութեամբ դրամ տան քրտնաջան գիւղացւոց, որք անտարակոյս պիտի ազատուին կարգ մ'անսիրտ վաշխառուներէ: Այդ դրամատեարք սկսին բանեցնել տալ պղնձի, երկաթի, ծծումբի, քարածուխի, աղի եւ այլ հանքեր՝ որ առատ են Երկրի մասնաւոր տեղերը. իրաւ է թէ յարաբերութեանց դժուարութիւնն մեծ արգելքներէն մին է այս տեսակ աշխարհաշինութեանց, բայց այժմ, շնորհիւ մեր Կառավարութեան, օր ըստ օրէ դիւրանալոյ վրայ է:

Բազում տեղերը ջրոյ պակսութենէն ժողովուրդը կը տառապի, որպէս է Վան-Տոսպայ Թիմարն, որոյ բնակչաց մեծ մասն 'ի պանդխտութեան կը գըտնուի, չքաւորութիւնն ծայրագոյն աստիճան տիրած է սոյն գաւառի վերայ, թէպէտեւ ունին պատուական արտօրայք եւ դաշտօրայք՝ յարմար ջրարբի լինելոյ. սակայն ի՞նչ օգուտ որ կը մնան անմշակ ջրոյ պակսութենէն, այր պատճառաւ տեղւոյ բուսականութիւնը նուազ է, որով անասունքն եւս՝ նման ասուններուն՝ մարմնով նիհարացած են. եթէ զանազան միջոցներով ջուր հանուի գաւառիս արտօրէից վերայ, հարստութիւնն կը լինի անսպառելի, եւ ասով դարձեալ առաջք կ'առնուի պանդխտութեան այդ Հայ գիւղացւոց, որք ինչպէս վերեւ յիշեցի, վտիտ անասնոց նման կմախ են դարձած, այնպէս որ կարելի է գըրենք կենդանի մեռեալ անուանել:

*

* *

Գաւառացւոց կրթական կողմն մասնաւոր տեղերը կրնամք բաւական գոհացուցիչ համարել. սակայն

առ հասարակ մտածելով՝ ժողովուրդն դեռ ներկայ դա-
րէն ներշնչուած չէ եւ ասոր համար չ'հաւատար կըր-
թութեան հրաշքին ։ Ցեղացի մասնաւորաց կողմանէ
Երկրի խաւարն փարատելոյ համար տարուած ջանքն
ովկիանոսին մէջ կաթիլ մի ջրոյ նման է, որ գոյու-
թիւն ունի եւ ոչ նշանակութիւն ։ Իմաստուն եւ հե-
ռատես ջանքեր պէտք են հետզհետէ մտցնել իւրեանց
մէջ « տեղական իւղով տեղացւոց գլուխն օծելոյ » ըղ-
բութիւնն, որոյ չահն անթուելի է ։ Գիւղացւոց ա-
մուսնական վիճակն ալ մեծ բարեկարգութեան պէտք
ունի ։

*

* *

Վանօրայքն երթալով ամայանալոյ ամենատխուր
դժբաղդութեան կը հանդիպին՝ եւ արդէն քանիներն,
զորս իւրեանց կարգին նշանակած եմք, ամայացած
եւ եղած են բնակարան անախորժ բուերու եւ ոմանք
եւս ալանըքէնտինէի անկարգութեան մէջ են ։ Ամեն
լուրջ միտք կատարելապէս համոզուած է եւ կը հա-
մոզուի թէ վանքերու հիմնաքարանց հետ անքակտե-
լի եղանակաւ կապուած է Երկրի Հայ ժողովրդեան
կեանքն, մանաւանդ գիւղական մասին եւ հետեւա-
բար, երբ այդ վանքերն անհետանան, իւրեանց շրջա-
պատի գիւղօրայքն ու թեմականքն ինքնին անհետա-
ցած են եւ ասոր ցաւալի օրինակներն Երկասիրու-
թեանցս մէջ պակաս չեն . ուրեմն ով որ այս բանի
ճշմարտութեան հաւատալ չուզէ, նա ուղղակի թշնա-
մի է Ազգին եւ միանգամայն Կայսեր, որոյ կենաց
երկարակեցութեան համար ընդ միշտ աղօթքներ եւ
բարեմաղթութիւններ տեղի կ'ունենան այդ նուիրա-
կան վայրերու մէջ, ըստ նախնի սովորութեան ։

Որչա՜փ բարիք պիտի լինէին ընդհանուրին, եթէ
Ազգ. Պատրիարքարանն յատուկ այցելու - պաշտօնեայ-

ներ խրկէ եւ համայն վանօրէից նկարագիրն առնել տալ հանդերձ նոցա նիւթական եւ բարոյական կողմերովն եւ այսպէս շրջահայեաց տեսութեամբ զայնս ուսումնասիրելէն ետքն, անխոնջ ջանքեր 'ի գործ դնեն բարեկարգել եւ ծաղկեցնել այդ սրբազան տեղիքն, ո'ւր Սահմանադրութեան համաձայն վարժարաններ բանալ, որք եթէ Երկրի կենաց յարմար ուղղութեան մը տակ դրուին, վանօրայքն շուտով կը դառնան մէկ մէկ Արեւ եւ իւրեանց լուսոյ ճառագայթներովն կը փարատեն զխաւարն տգիտութեան այդ գիւղօրէից։

Ազնիւ ընթերցող, այս օրինակ զգացումներ երբ կը յայտնեմ, չ'պէտք է հետեւցնել թէ գրողն չափազանց կրօնասիրութենէ մղեալ է (*), այլ ճշդրտապէս չօշափած լինելով Ազգի մահացու վէրքն՝ իւր սրտի ներքին ցաւէն ստիպեալ՝ կը գրէ զայս տողեր եւ 'ի բոլոր սրտէ կը փափաքի որ Հայ Ազգն միշտ ԳՈՅ լինի եւ ապրի ընդ բարձր հովանեաւ մեր Օսմանեան վեհանձն Կայսերաց, որոց վերայ աւելի շուք կը տայ այժմեան լուսամիտ վեհապետն Սուլթան Համիտ Բ. Կայսր համայն Թուրքիոյ Պետութեան։



(*) Մոլեռանդութենէ զերծ կրօնասիրութիւնն արդէն ամէն բանական-մահկանացուի կենսական պէտք մի է, զի որպէս է ՀԱՑՆ մարմնոյ համար, նոյնն է եւ ԿՐՕՆՔՆ հոգւոյն։

# ԼԵԶՈՒԱԲԱՆԱԿԱՆ ԴԻՏՈՂՈՒԹԻՒՆ ՄԸ (*)

*Այժմեան ազգեր կամ ժողովուրդներ, որոնք, 'ի նախնական ժամանակի, որոշ կազմակերպութիւն մը չունէին, յայտնի է որ բնական բերմամբ զգացածնին եւ ուզածնին իրարու կը հասկցնէին, դեռ չունեցած ո՛չ գիր եւ ո՛չ քերականութիւն. այլ հետզհետէ բնութեան այս ընդարձակ դպրոցին մէջ դիտողութիւններ, փորձեր, դէպքեր եւ առարկաներ զիրենք դաստիարակեցին, որով մտան ընկերական կարգ ու կանոնի տակ եւ ահա այս ուղղութեամբ իւրեանց մէջ նախ նշանագրին գաղափարն ծնած լինելու է, որ յառաջ երթալով մտաւ որոշակի ձեւերու եւ օրէնքներու ներքեւ, պատրաստուեցան տառեր եւ չինուեցաւ քերականութիւնն, զոր մարդիկ իւրեանց, օր ըստ օրէ զարգացման շնորհիւ, կատարելագործելով հասուցին ներկայ վիճակին (**). գաղափարներն եւ բառերն եւս բազմացան եւ զարգացան ժամանակի մտաւոր կարողութեան հետ եւ եղան ընդհանուրին գործածելի. սակայն մնացին, կան եւ պիտի մնան, գրականութեան այդ սահմանէն դուրս, ժողովրդային բազմաթիւ բառեր, ոճեր, եւ ընտիր իմաստներ տուող դարձուածքներ, որք դարերու ձեռամբ փոփոխութիւնք կրելով կրելով յառաջ կերթան։*

*

* *

*Ոչ ոք կրնայ տարակուսիլ թէ անգիր (գրել ու կարդալ չ'գիտցող) ժողովրդեան մը լեզուն ընդհանրապէս ունի նաեւ կանոնաւոր բառեր աղճատելոյ եւ*

(*) Սոյն դիտողութիւնն, փոխանակ վերջը ձգելոյ, աստ դնել հարկ եղաւ։

(**) Լեզուի այս յառաջ գնացութիւնն կրնայ համարուիլ միշտ շարունակելի :

մանաւանդ շատ անգամ կրճատելոյ բնութիւն, որով կստեղծէ ռամկական նորանոր բառեր, ոճեր եւ դարձուածքներ, որոնք, որպէս ասացի, կը պարունակեն այնպիսի իմաստներ եւ ձեւեր, որոց մասին քերականութիւնն որոշակի կանոն մը չունի տակաւին ։

Դարերն երթալով կը ծաղկին, գիտութիւնք յառաջ կը դիմեն անդիմադրելի եւ այս ամէնքն կը լինին առ հասարակ օտար լեզուաւ, որմէ առնելով մեր ժողովրդեան պիտի հաղորդուի, ուրեմն անհրաժեշտ հարկ է որ Ազգի գրագէտ մասն պէտք եղած կարեւորութիւն տայ գաւառական լեզուին, որոյ հարստութեան տարերքն (բառեր) ամենամեծ դիւրութիւններ կ'ընծայէ այդ գիտութիւնքն մեր ժողովրդեան հաղորդելոյ միջնորդին, որ երբեմն օտար բառեր գործածելոյ կստիպուի առ 'ի չ'գոյէ համապատասխան Հայ բառի ։

Երանի՛ թէ մասնաճիւղ մի կազմուի մեր մէջ, որոյ նպատակն լինի այլ եւ այլ միջոցներ ձեռքը առնելով գաւառական բառերն, ոճերն, եւ խօսուածքներն հաւաքել, զտել եւ իբրեւ դրական լեզու 'ի գործածութեան դնել մեր ամեն կարգի վարժարանաց մէջ ։

Այս պահուս եթէ մեր Հայկաբան ուսուցիչներու մատենադարաններն աչքէ անցունելոյ լինիմք աննշան թիւ մը հազիւ կարող եմք գտնել (բացառութիւն շատ քիչ), որ լեզուի այս ճիւղն մշակելոյ համար ունեցած ըլլայ դաւառացւոց կեանքին եւ լեզուին վրայ գրուած մի քանի կտոր գրեանք ։

*
* *

Գործոյս Բ. Մասի երես 179 ի ծանօթութեան նկատմամբ աստ կը յայտնեմ իմ կարծիքն ։

Երբեմն բառի մը գործածուելոյ առեն իրեն հետ,

*առանց չաղկապի, ուրիշ յարակից բառ մը եւս կը գործածուի, զոր օրինակ հաց մաց, ջուր մուր, գիր միր, թուղթ մուղթ, դրիչ մրիչ, հին մին, եւ այլն. սոյն վերջի բառերն, որպէս յայտնի կերեւին, կազմուած են առաջիններէն (*) որոց սկզբնատառն միշտ մ ի փոխուելով. այդ փոփոխեալ բառն առանձին ոչ նշանակութիւն մ'ունի եւ ոչ գործածութիւն, իսկ իւր նախընթաց որոշակի բառին հետ գործածուած ժամանակը անոր նշանակած նիւթի արժէքին կըտայ աւելի պարզ աստիճան մը, ինչպէս երբ կըսեմք հաց մաց սովորաբար կը հասկնամք որ եւ իցէ հաց, այսինքն չեմք հասկնար հացի ընտիր տեսակ մը, այլ մեզ կըտայ պարզ տեսակի մը գաղափար, այսպէս պէտք է ըմբռնել նաեւ միւսներն: Այն բառն, որ մ տառով կսկսի, սոյն օրինակ յարակից բառ մը չանէր:*



(*) Երբ ուշադրութեամբ դիտեմք պիտի տեսնեմք մի եւ նոյն բանն օտարար լեզուաց մէջ եւս յար եւ նման կազմութեամբ եւ գործածութեամբ:

կուզէի, Երկասիրութեանցս վերաբերութեամբ, պատկառելի գրագէտներէն եւ այլ ականաւոր անձանցմէ ց'արդ ընդունածս բոլոր նամակներն, հետեւեալներուն հետ, աստ կարգաւ շարել մի միայն 'ի պատիւ իւրեանց ազնիւ հեղինակացն. սակայն ինքնին մակաբերելի պատճառաւ մը չ'կարողացայ, ուստի փոխադարձօրէն զիմ յատուկ գոհունակութիւնն կը յայտնեմ առ այնս, որոց ինձ ցոյց տուած այսչափ համակրանաց եւ քաջալերութեան առջեւ զիս անարժան կը գտնեմ։

## Ա.

• • • Մանուէլ • • • Միրախորեան

ի Պոլիս

Ուրախութեամբ սրտի ընթերցայ ձեր երկասիրած «Նկարագրական Ուղեւորութիւն 'ի Հայաբնակ Գաւառս Արեւելեան Տաճկաստանի» անուն Գործի Ա. եւ Բ. Մասերն։

Ձեր սիրելութեան Հայորդիութիւն, որ արդէն վաղուց ի վեր ինձ ծանօթ էր, զգայուն հայասէրից ալ ծանօթացուցիք այդու հեղինակութեամբ, որով յաջողած էք Ազգին եւ միանգամայն Տէրութեան հաւասարապէս կարեւոր ծառայութիւն մը մատուցանել եւ սիրելի է մեզ որ շատերն եւս ձեր խոհեմ եւ լրջատես դրութեան հետեւին այդպիսի ծառայութեանց մէջ, զորս ամեն կարգի ազգայնոց օգտակար ընելու յատկութիւններով օժտած էք նոր ոճով մը եւ մի տեսակ սահուն գրչով։

• • • Պարոն, դուք, կը թուի թէ, մեր Հայ ժողովրդեան կեանք ուսումնասիրելն ձեզ մասնաճիւղ ընտրած էք, որ ամենուն չէք ձանձրանայր միշտ Սարերու եւ Ձորերու, Հիներու եւ Նորերու մէջ թափառելէ եւ մեծ ախորժ կզգայք գիւղական պարզ խըն-

ճոյքներէն քան թէ եւրոպական երեկոյթներէ ։ Ես հոգւով չափ ուրախութիւն կզգամ 'ի սրտիս, որ այդ ընդարձակ ճանապարհորդութեան մէջ վտանգի մը չէք հանդիպած եւ այս կէտն արդարեւ կրնայ պատիւ բերել Երկրին տիրող կառավարութեանն ։

Առ այժմ զայս եւեթ ասեմ թէ այդ Երկասիրութիւնքդ մէկ մէկ դպրոց են, զորս կը բանայք ընթերցողաց միտքերու համար եւ դուք ձեր առած դաստիարակութեամբն անշուշտ այդպիսի եղանակաւ սիրելու էիք զԱզգ եւ զՏէրութիւն, ուր հովանեացներքեւ մինչեւ ցարդ կ'ապրիմք ։

• • • Միրախորեան, դուք, իբրեւ գրական մարդ, ընդ հողով եւ ընդ հոլովմամբ ժամանակի ծածկեալներն դուրս տուած էք, Երկրի Ֆիզիքական, ժողովրդոց նիւթական, մտաւորական եւ ուրիշ օգտակար նկարագիրներուն հետ ։ Կը գովեմ զՁեզ որ զգուշացեր էք բանաստեղծականն երանկանի կարգը դասելէն. ապահով եղիք, ուշ կամ կանուխ պիտի գտնէք այն քաջալերութիւնն, զոր սպասելու իրաւունքըն վաստկած էք ձեր անխոնջ ջանքերովն եւ հաստատամտութեամբն ։

Մնամ աղօթարար առաւել բեղմնաւորել մտաց Ձերոց եւ արդիւնաւորեսջիք յայսպիսի աշխատութիւնըս ։

ՆԵՐՍԷՍ ԵՊԻՍԿ. ԳԷՈՐԳԵԱՆ

1885 Յունիս 26

Ի Բոտոսթօ



Բ.

1885 Մայիս 8/20 Իւսկիւտար

• • • Մանուէլ Կ. • • • Միրախորեան

ի Պօլիս

• • • Բարեկամ

Մինչ Ն. Շահնազարեան վարժարանի սրբանուէր

յարկին տակն էինք, արդէն իսկ ճանչցուած էր քու հայրենասիրական եռանդն եւ աւիւնն. բոլոր դասակիցքդ, ընդ որս եւ ես կը սիրէինք յաճախ ունկնդիր լինիլ քեզ, երբ զմեզ կ'ոգեւորէիր մեր Բնագաւառի քաղցր յիշատակներով եւ կը լնուիր մեր սիրտերը:

Նկարագրական Ուղեւորութեանդ Ա. եւ Բ. Մասերն երեք անգամ ծայրէ 'ի ծայր ընթերցայ եւ տակաւին կը փափաքիմ կրկնել:

Յաւէտ ողբացեալ մեր սիրելի տնօրէն Հ. Իփէքճեան, երբ կը տառապէր 'ի մահճի եւ իւր անձնանուէր աշակերտաց յաճախակի այցելութեամբք կ'սփոփուէր, շարունակ կամէր Ձեր ՈՒՂԵՒՈՐՈՒԹԵԱՆ վերայ խօսիլ:

. . . Բարեկամ, բաւական ատենէ 'ի վեր գրադարան մի պատրաստած եմ, որոյ հայերէն գրեանց մէջ Ձեր Երկերն եկան առաջին տեղին գրաւել եւ կազմել գրադարանիս արդն ու զարդն:

Իմ սրտին շնորհակալութիւնն առ Ձեզ

Քոյդ

ՄԻՍԱԿ Կ. ՄԱԿԱՐԵԱՆ

# ՆԿԱՐԱԳՐԱԿԱՆ
# ՈՒՂԵՒՈՐՈՒԹԻՒՆ
## Ի ՀԱՅԱԲՆԱԿ ԳԱՒԱՌՍ
## ԱՐԵՒԵԼԵԱՆ ՏԱՃԿԱՍՏԱՆԻ

## ՏԵՂԱԳՐՈՒԹԻՒՆՔ

ՍԱՐԷՆ ԵՒ ՁՈՐԷՆ, ՀՆԷՆ ԵՒ ՆՈՐԷՆ

ՊԻՏԱՆԻ ԳԻՏՆՈՑ



## ԳԼՈՒԽ Ա.

### ԱՌԲԵՐԱՆԻ ( ԲԵՐԿՐԻ )

Սոյն գաւառն, ըստ հին աշխարհագրական բաժանման, Վասպուրական նահանգի 36 գաւառներէն մին է, ունենալով Արեւելակողմէն աղեղնաձեւ լերանց մասնաւոր շղթայք, ոմանք Հիւսիսէն 'ի Հարաւ տարածեալ. Արեւմտահարաւէն կը տարածի Բզնունեաց ծովն, նոյնպէս և Քաջբերունիք (Արճէշ), Հարաւէն Վան-Տոսպ գաւառ, որ ունեցած սահմանը կը կազմեն 4–5 Քուրդ գիւղօրայք, պտտուական հողերով և ջրերով ու ամեն կողմերը լի խոտերով, յորս կը խրխնջան (ձիու ուրախութեան ձայն հանելը), Մարական ազատ թոռանց նժոյգներ, զորս տեսնողն մեծ հաճոյք կըզգայ, ո՛ւր կը մնայ հեծնողն։ Արեւելեան Հիւսիսակողմն է Ապաղայի

նշանաւոր դաշտն, որոյ վերայ քիչ մ'եւտք կը խօսիմք :

* * *

Երկիրն ընդհանրապէս դաշտային է, առողջարար օդով ջրով, եւ արդաւանդ հողով, որոյ բարեբերութենէն թերեւս ծագումն առած լինի այժմեան «բերկրի» անունն, որ հաւանականաբար աղաւաղեալն է «բերրի» բառին եւ կամ որպէս կ'աւանդուի «Նախնի ժամանակաց մէջ լի ծառաստան կը լինի, որք ամեն տարի առատօրէն պտուղներ կը տային եւ բնակիչքն իրարու «բերկրի'» (ուրախացիր) ըսելով պտղոց առատութիւնն կ'ողջունէին կամ կ'աւետէին իրարու :

Գաւառիս Արեւելեան լերանց մէջ նշանաւոր է «Սպահանի» կոչուածն, որոյ ստորոտը կը գտնուի համանուն լճակ մը, որ մերձակայ արտօրէից ջուր կը տայ. սոյն լճակի ջուրն անուշ է եւ շատ զուլալ, որոյ նկատմամբ կ'աւանդեն թէ «մի օր Երուսաղիմայ նուիրակներէն մին Գործոթ գիւղի 40 զաւակ ունեցող քահանայ մը կը խոստովանցնէ լճակիս եզերաց վերայ. սակայն ջրոյ մէջ գտնուած գորտերն աղմուկ կը հանեն եւ նուիրակն անոնց բարկանալով կըսէ «լռեցէ՛ք». նոքա եւս կը լռեն եւ ցարդ սերընդէ 'ի սերունդ նոյն լռութիւնն կը պահեն»: Այժմ սոյն լճակն բաղդատմամբ կրնայ անաղմուկ համարուիլ:

* * *

Վերոյիշեալ Ապաղայի լայնատարած դաշտը ունի գրեթէ 3 ժամ երկայնութիւն և 2 ժամ լայնութիւն և է հորիզոնական դիրք. այդչափ ընդարձակութեան մէջ հաւկթի մը մեծութեամբ գուն ուրեք կը տեսնուին քարեր և ամեն տարի կը ծայ անապառելի մաքուր խոտ, որոյ բարձրութեան մէջ ժամանակին մարդս կը թաղուի: Ունի սևագոյն ընտիր հող՝ պարարտ և բարեբեր, որ կրնայ մէկին փոխարէն 10–40 տալ ամենապատուական ցորեան և մանաւանդ գարի. սակայն ի՛նչ օգուտ, որ այժմ չունի բնակիչ, միայն թէ այդ ահագին դաշտի եզերքները տեղ տեղ մի քանի Քուրդ գիւղեր կը գտնուին՝ գլխաւորաբար Հայդարանցի ըսուած հաշիրէթներէն վերաբերեալ, որոնք 3–5–6–10 տնական հազիւ կը լինին և ընդ ամեն 400–450 ընտանիք կազմող և մեծագոյն մասամբ բնակողք շրջապատի լերանց միջավայրերը: Իրենք չունին սէր հողին վերայ, կը պահեն միայն ոչխար և ընտիր ձիեր, հետևաբար տեղւոյս հարուստ բնութեան բարիքներն կը կորսուին յումպէտս:

Ապաղայի առատ խոտերն աշնան ժամանակին կը բռնկցնեն և հրդեհի նման հրոյ ճարակ կը տան ամբողջ դաշտին, ըստ որում եթէ չայրեն կամ չքաղեն, յաջորդ տարին բնութիւնը կը զլանայ մի և նոյն պարգևի կրկին մատակարարութիւնն, նախընթաց տարուան առատութեամբը: Գիտես թէ բնութիւնն կը փափաքի

որ մարդիկ իւր բարիքն վայելելոյ համար մասնաւոր ջանքեր 'ի գործ դնելէ չ'դադրին, ապա թէ ոչ ինքն կը զայրանայ և անպտուղ կը լինի : Շատ տեղեր ալ առանց այրելոյ թող կը տան այդ խոտերն և ձմեռ եղանակին աչքէ ելած կենդանիք և մանաւանդ ոչխարներ ու ձիեր դարձեալ 'ի դաշտ հանելով՝ կը կերցնեն խոտերու ծայրերը, որք ձիւնէն վեր կը մնան :

Ըստ աւանդութեան և ըստ տեղ տեղ տեսանելի աւերակաց «յԱպաղէն 'ի հնումն 300 Հայ և մի քանի Եզնի գիւղօրայք գտնուած են» :

Այս ընդարձակ դաշտի շրջապատի լեռներէն բղխած մասնաւոր ջուրերն ժողվուելով՝ կը կազմեն Առեստ (բանդու մահու) կոչուած գետըն, որ յորդութեան կողմանէ Վանայ ծովը թափող գետերէն կրնայ առաջինն համարուիլ : Կը պատմուի թէ «Ապաղայի գիւղօրէից Շէն եղած ժամանակին սոյն գետն երբեմն բոլորովին կը ցամաքէր, ըստ որում կը բաժնուէր արտօրէից վերայ» :

Ականատեսք դարձեալ կը պատմեն թէ «Ճէննէթմէքեան Սուլթան Ապտիւլ Ազիզ ձեռնարկել տուաւ մի զօրանոց շինել Ապաղայի կեդրոնը՝ յապահովութիւն և 'ի գիւղաշինութիւն, սակայն ինչ ինչ պատճառաւ յետաձգուեցաւ : Սոյն անուանի դաշտի Արեւելակողմն է Պարսիկ և Հիւսիսակողմն Ռուս :

Ըստ նորագոյն տեղեկութեանց՝ Առբերանի

գաւառին մէջ մօտաւորապէս 90 գիւղեր կան , 20000 բնակչօք , յորոց 15000ն Հայ են , և մնաց-եալ 5000 Թուրք ։ Հայք կ'զբաղին առ հասարակ-երկրագործութեամբ և խաշնարածութեամբ ու վերջին աստիճան թշուառ են այլ գաւառաց գիւղերու հետ բաղդատելով ։ Թուրքերն , որ-պէս վերև յիշեցի , կը պահեն ոչխար և ձի , լեռնաբնակ են ու կը դրաւեն Ապաղայի շրջա-պատի լեռնամէջերը , ուր շատ երջանիկ կ'ապ-րին իւրեանց ընչաւորներովն , իւրեանց բոլոր հարստութիւնքն ոտաւոր են և Հայոց ունեցա-ծին նման անշարժ չեն ։

*
* *

Գաւառիս մէջ չեն պակսիր ազգային նուի-րական վայրեր , յորս նշանակելի է ՏԷՐ ՅՈՒՍԱ-ԿԱՆ ՈՐԴԻ անուն վանքն , որ այժմ ամայացեալ վիճակէ մը մեծ տարբերութիւն չունի , և կը ծառայէ միայն քահանայ մը հանդերձ ընտան-եօքն ապրեցնելոյ . այս քահանայն երեկոյ և առաւօտ առանձին կաղօթէ և կը յուսայ , որ քիչ ժամանակէն թերևս յոյսն կը սոտէ և աղօ-թելէ ալ դադրէ ։

Վանքն ունի հողային բաւական կալուած-ներ ։

## ԳԼ. Բ.

### ԱՌԲԵՐԱՆԻՈՑ ԿԱՐԵՒՈՐ ԳԻՒՂԵՐՆ

ԲԵՐԿՐԻ . — Գաւառիս հին բերդաքաղաքն

է, չինուած դրեթէ Առեստ գետոյ ափանց վրայ. և չունի բնաւ իւր հին ժամանակուան փայլն, որ այժմ աւերակ մի դարձած է, ուր կը բնակին մի քանի տուն Հայ՝ ողորմելի կացութեամբ։

ԳՈՐՄՈԹ. — Կը գտնուի գաւառիս կեդրոնական Արեւելը, ունի սիրուն դիրք մը և 60–70 տուն Հայ բնակիչ, որոց նիւթական վիճակը մերձակայ գիւղերուն նայելով կրնայ բաւական լաւ համարուիլ։ Տեղւոյս Հայերն չափազանց գանգատ չունին իւրեանց կեանքէն։ Աստ կը բնակի մեր հռչակաւոր Մէլօն (Մելքոն) գաւառին նշանաւոր Հայն, որ ամենայն հաւատարմութեամբ 'ի գործ կը դնէ իւր մեռած կակօյի (պապ) կտակն, և երբ դժբաղդութեան մը հանդիպի, անկէ դուրս ելնելուն վերայ ընթերցողն ևս կրնայ ինձ հետ ապահով լինիլ, որ մեր Մելօն ճարտարութեամբ ազատուելոյ կերպերով կը փրկուի։ Տեղւոյս Հայերն հայհոյութեանց բանաստեղծ են։

Գործոթ գիւղի մէջ հետևեալ նուիրական տեղիքն կը տեսնուին, յորոց ոմանք կիսակործան են, ոմանք տաղաւարիկ և ոմանք մատուռիկ. Ա. Ս. ՅՈՎՀԱՆՆԷՍ։ Բ. Ս. ԿԱՐԱՊԵՏ։ Գ. Ս. ՍԱՆԴՈՒԽՏ։ Դ. Ս. ՎԱՐՍԻԿ։ Ե. Ս. ԿԱՊՈՑՏ ԽԱՉ։ Զ. Ս. Զընճըլաւոր (շղթայաւոր)։ Գիւղացիք մի յատուկ սնտուկի մէջ կը պահեն Բուխ տնաուկ անուամբ մի ձեռագիր աւետարան, որում չի մերձենայր աշխարհականի ձեռք, այլ երբեմն,

նման մասունքի, դուրս կը հանէ քահանայն և կընթեռնու զայն ի բժշկութիւն հիւանդաց կամ ախտաժէտաց և 'ի բարձումն Աստուածային պատժոց, որոց շատ անգամ ազատ չեն ։

Միացեալ Ընկերութիւնն աստ ունի Նախակրթարան մի ։

ՊԶՏԻԿ ԳԻՒՂ. — Ունի 30 տուն Հայ բնակիչ, որոյ հողերն համեմատաբար շատ պարարտ և ջրարբի են, իսկ մտքերն աղքատ և ծարաւի ուսման և գիտութեան ։ Տեղւոյս հայերն շատ անգամ սեպհական քահանայ չունենալով զուրկ կը գտնուին կրօնական կամ հոգեկան մխիթարանքէ, ուրիշ տեղերէ այցելու քահանայ կը գայ ի պահանջել հարկին, եթէ կայ իւրեանց համար փոքր ինչ մխիթարական մի կողմ, այն ևս Ս. ԹԱԴԷՈՍ անուամբ ամայացեալ վանքն է, գիւղէն բաւական հեռու և սրտերու մօտ ։

*
* *

Թող տալով գաւառիս մնացեալ մի քանի Հայ գիւղեր, որք չունին նշանակութեան արժանի մի բան, շարունակեմք մեր ՈՒՂԻՆ, մեզ համար պէտք պիտի լինի անցանել Առեստ գետէն, որոյ մէջ 'ի գարնան « տառեխ » կոչուած անթիւ ձկունք կը խաղան և կորսացուին կողովներով. շատ հազուագիւտ են 1-2 օխանոց ձկունք ։

Առեստ գետն ունի հին, այլ ամրաշէն և գեղեցիկ կամուրջ մը մեր ճանապարհին վերայ,

որ կը տեսնուի անխնամ վիճակի մէջ , յորմէ անցանելով յառաջ գնամք դէպ 'ի Բաջբերունեաց գաւառն :

Առեստ կամ Նոր անուամբ սոյն « պէնտ մահու » գետն 'ի գարնան սոսկալի եղանակաւ կը յորդի և երբեմն խսկ դժբաղդութեանց առիթ կը լինի մարդկային կեանքեր կուլ տալով , թերևս ասկէ ծագումն առած լինի իւր վերջի անունն : Գետոյս բնական ընթացքն զինքն ժըլատ ըրած է գաւառիս համար պէտք եղած ջուրն մատակարարելոյ , իւր ընծայած օգուտն շատ աննշան մի բան է համեմատաբար :

Գետոյս եզերաց վերայ , ինչպէս նաև մեր նախորդ ճանապարհի (Թեմարայ սահմանակից տեղերն աւելի) մերձ 2–3 Եզտի գիւղերու , ունի խիստ զուարճալի տեսարաններ , ուր բաւական քանակութեամբ եղէգներ կը բուսնին , և ձմեռատենը, ով որ համարձակի, կրնայ ներս մտնել ու քաղել եղէգներն իրեն համար , զորս ընդհանրապէս կը տանին 'ի քաղաք վաճառել և խիստ օգտակար են տանց ծածքերու համար . մանաւանդ եթէ գիտնան գերմանական դրութեամբ գօտեւոր տանիքներ կազմել (որը նկատմամբ Տեղագրութեանցս Ա. Մասի ԼԱ. գլխոյն մէջ խօսած եմ) :

Այսպէս ահա Վանայ կամ Բզնունեաց ծովու Արեւելեան Հիւսիսային ըղտանման վզի եզերքներէն մեր ՈՃՆ շարունակելով կը տեսնուին

քրդական 3 գիղեր, որոնք կը պատկանին Ալ-տաւ դէկ կոչուած քրդուն, որ Մոկացի է և «Խան Մահմուտ» անուանեալ հուչակաւոր քրդու ցեղէն սերած:

Սոյն ցեղապետ Հաշիրէթի պատմութիւնն լի է հետաքրքիր երևոյթներով, զորս աստ յիշել մեր նպատակէն բոլորովին դուրս լինելով զանց կառնումք: Մեր ճանապարհի ուղղութիւնն այսպէս դէպ 'ի յԱրևմուտս լինելով՝ և 5–6 ժամու չափ ուղի կտրելով կը մտնեմք հետևեալ գաւառն:

## ԳԼ. Գ.

### ՔԱՋԲԵՐՈՒՆԻՔ

Գաւառիս սահմանն է Արևելքէն Առբերանի, Արևմուտէն Խոռխոռունիք, Հարաւէն Վանայ ծովը և Հիւսիսէն կրնայ համարուիլ Ծաղկանց լեռան (ալտաղ), ինչպէս և Ալաշկերտ:

Երկիրն Հիւսիսէն բլրային է, իսկ Հարաւէն դաշտային: Բուսականութիւնն շատ առատ է, մանաւանդ Հիւսիսական կողմերը: Գաւառիս երկայնութիւնն է Արևելքէն յԱրևմուտ 11–12 ժամ, և լայնութիւնն Հարաւէն 'ի Հիւսիս 10 ժամ, միջին հաշուով: Ունի պատուական կլիմայ և պատուականագոյն ջուր, հողն ընտիր, որով և արգաւանդ. այլ մեծագոյն մասամբ անջրդի. (ունի միայն Աճէշ գետ, որ Արճշու հովիտ ոռոգելով 'ի ծով կը թափի):

Քաջբերունիք կը պարունակէ 120 ի մօտ գիւղեր, յորոց 38–40 Հայ են և մնացեալներն Քուրդ, և մանաւոր գիւղեր Զէրքէզ. սակայն Հայոց թիւն անոնցմէ շատ մեծ է, ըստ որում Հայք բազմաբնակութիւն են, այն ինչ Քուրդերն ոչ այնպէս: Հայոց գիւղերու բնակութեանց թիւն կրնամք, միջին հաշուով, 35–40 տուն սեպել: Ի բաց առեալ 3-4 գիւղեր, մնացեալքն են առանց դպրոցի և առանց նոյն իսկ դպրոցական գաղափարի: Գիւղերէն 5–6 հատ հաղիւ կան քրդախառն:

*
* *

Գաւառիս Հայերն ընդհանրապէս երկրագործութեամբ կ'զբաղին և քիչ խաշնարածութեամբ. իսկ Քուրդք, մանաւանդ Հիւսիաբընակներն շատ քիչ գործ ունին ՀՈՂԻՆ հետ, իրենց բոլոր հարստութիւնք են քառատանի կենդանիք և մանաւանդ կը պահեն ընտիր ձիեր:

Քաջբերունեայ Արմենական բնակիչքն ընչանաւոր են . . . . հիւրասէր և ընտանեսէր, պանդխտութեան դիմելն ի՛նչ է չ'գիտեն ու շատ աշխատասէր են: Գիւղերէն ոմանք ծառաստանով են և յառաջ կը բերեն սովորական պտուղներ: Ականց և Արրափ (որոց վերայ 'ի կարգին կը խօսուի) կոչուածներն միայն ունին խաղողի այգիներ, որոց խաղողներն կը տարուին յայլ գիւղօրայս 'ի վաճառ:

Հայ ժողովրդեան երկրագործական արհեստ-

տըն համբաւ ունի և կը ցանեն ցորեան ամե-նէն շատ, նոյնպէս գարի, կորեակ, ոսպ, կը-լուլ, կտաւատ, ինչպէս նաև ժամանակին ձմե-րուկ և սեխ, որք մեծութեամբ և քաղցրու-թեամբ անուանի են։

## ԳԱՒԱՌԻՍ ՑՈՐԵԱՆ ՑԱՆԵԼՈՅ ԵՂԱՆԱԿՆ

Նախ և առաջ ցանելի հողն կը վարեն եր-կու անգամ խաչաձև, յետոյ վրան տափ կը տան (կը հաւասարցնեն) կուեթներ (հողի կոշ), հողն այսպէս իր վիճակաւ կը մնայ մինչև ցորեան ցանելոյ ժամանակն, զոր օրինակ աշուն. երկ-րագործող խոփի երկու կողմերը տրափէզէ ձևով երկու տախտակներ կը հաստատեն. խոփն զհող կը ճեղքէ, երկրագործը ցորեանն (սերմն) եր-կայն ուղղութեամբ կը ցանէ այդ տախտակնե-րու մէջ տեղը և երբ տախտակներն իրեանց տեղին կը փոխեն, յայնժամ եա քշուած եղե-րաց հողերն երկու կողմէն գալով կը ծածկեն ցորենի հատիկներն, յորոց և ոչ մէկ հատ կոր-սուելոյ ենթակայ կը լինի կամ դուրս մնալով ըլլայ կերակուր թռչնոց։ Այս դրութեամբ բը-նականաբար պիտի բուսնին ամեն հատիկներն, կանոնաւոր չնչառութեան մը ներքև և 'ի ժամա-նակին հունձքերը քաղելոյ համար եւս դիւրու-թիւն կը տայ առանց հասկ մը կորսնցնելոյ։

Ցանելոյ սոյն կերպն « տիր » կ'անուանեն, որ պէտք է լինի օրինակելի։ Հողն 1 ին 8–60

արդասաւորութիւն ունի և ցորեանն ձիւնի նը-
ման ճերմակ կը լինի ու հատիկներն սովորական
ցորենի հատիկներէն աւելի խոշոր ։

## ԳԼ. Դ.

### ՔԱՋԲԵՐՈՒՆԵԱՑ ԳԼԽԱՒՈՐ ԳԻՒՂԵՐ

ԱԿԱՆՑ. — Գաւառիս կեդրոնական տեղին կամ գիւղաքաղաքն է առ և որոյ ։

Գիւղս շինուած է ընդարձակ և տափարակ դաշտի վերայ. ունի 300 տուն բնակիչ, յորոց 30-35 տուն հազիւ Հայ են և մնացեալն Մահմետական ։ Տեղւոյս Հայքն ունին երկու եկեղեցի, յորոց մին է Ս. ԹԱԴԷՈՍ ԱՌԱՔԵԱԼ և միւսըն Ս. ԳԷՈՐԳ, որ իբրև վանք, Վանայ Առաջնորդարանին տուրք (մուխաթայ) կը տայ և անշուշտ ինքն կառնու՝ որ տալոյ պարտական եղած է ։ Սոյն վանքն 212 տարիէ 'ի վեր եկեղեցւոյ ձեւի վերածուած է նորոգմամբ, միայն խորանին համար կարելի է ասել Առաքելոց ժամանակէն մնացած լինի, որպէս և կ'աւանդեն իսկ ։ Ս. Թադէոսին դալով՝ արդէն առաքելաշէն է և տաճարաւոր բաւական գեղեցիկ, իսկ եկեղեցին նորոգութիւն մը տեսած է և շատ հին չէ ։ Ունի երկու քահանայ, որք միջնադարեան մօօք կառաջնորդեն ժողովրդեան. դպրոցն տխուր բացակայութեամբն ցաւ կը ներշնչէ ամեն զգայուն սրտերու ։

Աստ կեդրոնական նախակրթարան մը բա-

նալոյ ամեն յարմարութիւն կայ․ վասն զի 2–3 գիւղեր կան իրեան մօտիկ, որոնց անգիր մանուկներն ևս կրնան ամենայն դիւրութեամբ գալ 'ի նախակրթարան և ամբողջ օրն դասատուութեամբ զբաղիլ ու երեկոյ տեղերնին վերադառնալ․ այլ ուր է նախակրթարանն և ուր դայն բանալոյ ջանադիրք ։ Գիւղիս 300 տուն բնակիչներն, առանց բացառութեան, հողագործ են․ իսկ առն և տուրը Վանեցւոց և Բաղիշեցւոց ձեռքը կը գտնուին․ աստ կան բաւական թըւով կրպակներ շինուած քով անն չան ։

Ականից մէջ կը նստի գաւառին դայմագամն, ընդ գերիշխանութեամբ Վանայ կուսակալին, և հարիւրապետ մ'ընդիւրև ունենալով 100–150 ձիաւոր զօրքեր ի պահպանութիւն և յապահովութիւն ժողովրդեան ։

Երկրին Առաջնորդ կը նստի Մեծոփայ վանքը (յանուն Աստուածածնայ կառուցեալ) 3$^1/_2$ ժամու չափ հեռաւոր, որուն վանահայրն ալ է միանգամայն, և ի պահանջել հարկին տեղս կը գայ և կրկին 'ի վանս կը վերադառնայ ։

Այս գիւղաքաղաքի գլխէն անցածներն ծերունիք կը պատմեն և իւր ամենահին ու փառաւոր ժամանակէն մնացած է միայն 4–5 տուն Հայք, որք ց'արդ ապրած են իւրեանց հացառատ ՍԵՂԱՆԻ շնորհիւ միայն, մնացեալքն ետքէն այլ և այլ կողմերէ եկած են ։

## ԱԿԱՆԻՑ ԳԼԸՆԿԱՂ

Ականից մի Գլընկաղ (պատառատուն զգեստով) Հայ նստած էր վարդենույ մը նման կարճիկ ծառի մը շուքին տակ ամառուան Արեւու խայթող ճառագայթներէն ազատ՝ գոհ կը լինէր բնութենէն կարծելով ինքզինքն աւելի բարեբաղդ քան զոխակն։ Սոյն պահուն իմ անհոգ ուղեկիցք ցիր ու ցան աստ և անդ ցորեկուան հանգիստն կառնէին ու կը զուարճանային, որ 'ի վերջանալն միջօրէի տաքութեան ելնէինք յուղի հանգչելէն։ Սոխակի փառաց նախանձորդ այս գիւղացւոյն առընթեր բարեւելով նստեցայ։ Դժբաղդութիւն մի չէր ինձ համար, որ այս ծերուկն չգիտէր խօսիլ ընդ ես զգրոցէն, այլ շատ աւելի գոհ եղայ և ուրախ ի վերջոյ, երբ գիտացի թէ վարժ էր նա զբրոյցէն ճառել, որ սկսաւ իւր սիրած վարդի թփան տակն Ուղեւորիս պատմել . . . և իւր խօսքերն թէև ճշմարիտ, սակայն ինչ օգուտ որ մտիկ չընելոյ պատճառներով միտքս պաշարեալ էր. մարդոյ պատմութիւնն 'ի գիր առնուլ իմ յատուկ բաղձանքս էր, զոր դժբախտաբար ընուլ չկըրցայ, զի նոյն պահուն իմ սեւակոթ գրիչ կոտրած էր, որով սիրտս տխրութեամբ լեցուած։ Գլընկաղի խօսքերն պարզ էին և անմեղ, որք կը բղխէին ճերմակ սրտէ և առողջ մտքէ։ Շատ լաւ ըմբռնեցի թէ ինչ կամէր ասել մեր գիւղացի ծերուկն, զոր մխիթարելոյ համար

բնականէն չէր ինչ պակսիր ինձ մի բան ։ Ճշմարիտն խօսելով մարդուն խօսքերն այնչափ առատ էին և նիւթերով լի, որ ինձ կարգ տալ բնաւ չէր ուզեր և ես յայս վայրկենիս երբէք չէի փնտռեր քաղաքավարութիւն դաշտի եզերքը, որոյ ծոցածին էր ազնիւ Հայն ։

Այս առեն ցորեկուան ժամ վեցն էր, Երկնից կամարին վերայ Արեգական ճառագայթից մէջէն մի աստղ նշմարեցի, որ կը փայլէր յԱրեւելս, որոյ լոյսն բնականէն ինչ կարժէր, երբ Արեւու լուսոյ հեղեղն բաշկատարած և տիեզերքին ցորեկ բերած կը թագաւորէր ամեն ուրեք ։ Մեր խօսից շարքին ասացի գիւղացւոյն, որ ապաշ կրթած ինձ կը նայէր, կը տեսնե՞ս կըրկնեցի այս աստղ, ով գեղջուկ, նա շատ լոյս ունի և մենէ աւելի հեռու է քան թէ Արեւն, որոյ տաքութենէն փախ տուած՝ կապաստանիս այդ կարճիկ ծառի ներքեւ, երբ գիշեր ըլլայ պէտք է դիտնաս որ նորա (աստեղ) լոյսն մեզ շատ աւելի զգալի կը լինի, միայն թէ երանի այնմ, որ հեռատեսութեամբ գիտէ օգտիլ գիշերուան այ լուսինէն, ոյր ճառագայթից տակ Ձեր կալերու ցորեանները կը մաքրէք՝ էրան ընելով, զայս ասացի իւրեան կրցածին չափ հասկնալի լեզուաւ մը և բաժնուեցայ իրմէ զինքն թող տալով հոգեկան զուարթ տպաւորութեան մը ներքև ։

# ԳԼՈՒԽ Ե.

## ԱՐՃԷՇ՝ ՀԻՆ ԲԵՐԴԱՔԱՂԱՔ

Սոյն քաղաքն, որոյ երբեմն հռչակաւոր անուամբ ց'արդ կը կոչուի նաեւ գաւառն. կը գտնուի Ականից Հարաւակողմն և անկէ 1 ժամ հեռաւոր՝ Ազնուննեաց ծովուն եզերքը: Այս պատմական բերդաքաղաքն 50–55 տարիէ ի վեր ծովն առած լինելով՝ այժմ կիսաւեր և բոլորովին ամայի դարձած է, տխուր աւերակաց մեծամեծ բեկորներն ծովու աղային ջրերէն շրջապատեալ կը կենան և կրնան երբեմն խորհրդաւոր լեզուաւ մը խօսիլ Ուղեւորաց սրտերու հետ, որպէս յարաժամ ծովու ալեաց հետ: Աստ կը տեսնուին 2 Հայկական գետնատարան եկեղեցիք և մի մզկիթ, որ դարձեալ ծնուրէն կիսով չափ տակաւին կանգուն է: Անտեսանելի չեն նաեւ հին շուկայից և արհեստական բերդի հիմնաքարինքն:

Արճէշ՝ գաւառիս ամենէն չէն և բազմաբնակութիւն ունեցող տեղին եղած է երբեմն, խիստ բանուկ և վաճառաշահ: Ականատես ծերունիք տակաւին կապրին և կաւանդեն հարցանողաց այն ամեն ինչ, որ իւրեանց այդ քաղաքի անցելոյն կը վերաբերի:

### ՄԵԿՆՈՒՄՆ

Ականցէն մեկնիմք դէպ ի յԱրեւմտահարաւ և 1 1/2 ժամէն կը հասնիմք յՕրօրան: Սոյն

գիւղն 35–40 տուն բնակիչ ունի կիսով չափ Մահմետական ։ Հայք ունին Ս. ԱՍՏՈՒԱԾԱԾԻՆ անուամբ նորաշէն եկեղեցի մը կառուցեալ գիւղական ճաշակաւ , կայ մի քահանայ՝ կրօնական մատակարար , որոյ մարմնոյ մէկ աչք կոյր է , իսկ մնաց երկուքն ալ և այս է ահա առաջնորդ տեղւոյս մեր աշխարհական ԺՈՂՈՎՐԴԵԱՆ ։ դպրոցին գալով՝ արդէն անունն չունի ։

Գիւղիս առջեւէն կանցնի Արճու գետն , որ երբեմն յանուն գիւղիս կանուանի « Օրօրան » , որոյ մէջ գարնան ատեն բաւական թուով մանր ձկունք կը խաղան , որք պարապ գիւղացիներէն կորսացուին ։

ԲԼՈՒՐՄԱԿ . — Սոյն գիւղն 60 տուն Հայ բնակիչ ունի , նոյնչափ ալ գրեթէ Քուրդ ։ Հայք ունին եկեղեցի և ունին քահանայ , իսկ դըպրոց՝ի հարկէ «մի օր Աստուած պիտի տայ» գըթալով 50 էն աւելի կայտառ մանկանց վերայ ։ Գիւղըս շատ զուարճալի է բնութեան սիրուն տեսարանաւն , միայն թէ ծառաստանքն անպտուղ են . տեղւոյս հողն շատ զօրաւոր է և մանաւանդ խիստ յարմար բարտի ծառեր հասցնելոյ , այնպէս որ 8–10 տարուան տնկուած բարտին կարելի է համարիլ օրինաւոր հաստ գերան ։ Ահա բնութեան մի այլ տեսակ բարիք , որմէ անբընազդէտ ժողովուրդ զուրկ է օգուտ քաղելէ , վասն զի զուրկ է մտաւոր լոյս վիճակէ ։ Աստ

կան պարտիզպան (պօստանճը) գաղթական պարսիկներ, որ շատ լաւ շահիլ գիտեն իւրեանց արուեստովն. զարմանալի է որ մերայինքն բընաւ միտք չունին նորանոր զբաղումներ ունենալ ցորեանէն զատ։

ԲԱՆՈՆ. — Բնակիչք 45 տուն, ունին Ս. Գէորգի անուամբ պարզ եկեղեցի մը և պարզագոյն քահանայ մը, իսկ դպրոց ունին ոչ և որոյ անունն իսկ արտաքուստ մի բան է իրենց ականջին։ Բանոն ճանապարհի վերայ լինելով միշտ բազմաթիւ հիւրեր անպակաս են համասեռէ և մանաւանդ տարասեռէ։ Գիւղիս մէջ նշանաւոր արեւշատ (տարեւոր) անհատներ կը գտնուին՝ այնպէս որ 80–100 տարի ապրիլն տեղացւոց համար գրեթէ առ հասարակ է։

ՀԱՄՊԻՄԻՆԱԿ. — Ունի 55-60 տուն բնակիչ, եկեղեցի մը և 2 քահանայ, որք կառաջնորդեն ժողովրդեան կոյր զկուրայն, որպէս երբեմն իրենք առաջնորդուած են. վարժարան գնել կը փափաքին, սակայն ծախուց չ՛կայ ահա իրենց դժբաղդութիւնն։

ՅԱՐՈՒԹԻՒՆ. — Բնակութեանց թիւն է 40, բարուոք նիւթական վիճակի տէր. ունին տաճարաւոր գեղեցիկ եկեղեցի մը, որոյ անուամբ կոչուած է և գիւղն, ուր մերձ կայ մի կոկիկ, և ամայի մատուռ, ո՛ւր տարին 2–3 անգամ պատարագ կը լինի և աստ է Արճիշեցի Յովհան-

նէս « ոսպնակեր » մականուանեալ վարդապետի գերեզմանն ։

Գաւառիս գիւղերէն նշանաւոր է մանաւանդ ԱՍՐԱՑ, որ բազմահայներէն մին լինելով հանդերձ, մասնաւոր առ և որոյ ալ տեղի է և ուղիղ կը լինի ասել « իւր գինւոյ այգիներովն ներշնչեալ է Գողթան գաւառէն » ։

*
* *

Բաջբերունիք ունին մի քանի նշանաւոր վանօրայք և բազմաթիւ յիշատակութիւնք արժընցնող նուիրական տեղիք ։

Գիւղերն ամենամեծ մասամբ կարող են իրենց յարմար նախակրթարաններ պահել, սակայն ո՞ւր են պահել տուողներն, որք Պօլսոյ հըրապարակին կամ լրագրական ասպարէզն աղմըկաւ կը լեցնեն, երբ մի քանի գիւղացի մանուկներ մի տեղ ժողովելով՝ նոցա ձեռք կը տան քերական կամ ընթերցարան ։

Գաւառիս Մեծոփայ հռչակաւոր վանքն ամենապատուական տեղի մի է գիշերօթիկ վարժարան մ՚ունենալոյ իւր նիւթական վիճակաւն, դիրքովն և մանաւանդ նուիրական պարտականութեամբն, զոր ց՚արդ չէ կատարած ։ Սոյն վանքն, որպէս յիշեցի, կարող է ցորեանի նման իւր ծոցէն գաւառիս համար ուսուցիչներ և ուսեալ քահանաներ դուրս տալ, երբ կամք լինի ի ներքուստ և կամեցողք յարտաքուստ ։ Կը ցաւիմ ասել որ Մեծոփայ վանքն ալ Մշոյ Ս. Կա-

բապետի վանուց նման ալան ժէնդէնէի պէս է. տխուր զգացմամբ կրկնեմ ուրեմն, զոր ինչ շատ տեղեր կրկնած եմ թէ «սատ եւ գործ կայ գործող չ'կայ»։

Քաջբերունեաց կամ Քաջ բերդ ունի գաւառին վերայ այսչափ խօսիլ բաւ կը համարիմ ու կը մեկնիմ ճանապարհնիս ուղղելով դէպ 'ի յԱրեւմուտս, 7-8 ժամէն կը մտնեմք 'ի գաւառն Խոռխոռունեաց, ոյր վերայ խօսիլ որչափ որ ժամանակն կը ներէ Ուղեւորիս։

## ԳԼ. Զ.

### ԽՈՌԽՈՌՈՒՆԻՔ

Սոյն գաւառն կը գտնուի նախորդի Արեւմտակողմն և այժմ բաժնուած՝ Արծկէ և Ախլաթ երկու գաւառակներու։

Այս կրկին գաւառակներէն՝ Ախլաթու վերայ մեր Տեղագրութեանց Ա. ՄԱՍԻ երես 88-96 ի մէջ խօսած լինելով՝ այժմ նկարագրեմք և համառօտակի տեղագրեմք զԱրծկէն և ապա մեկնիմք տեղէս ընդարձակել մեր ՈՃՆ, ուղեւորելով դէպ 'ի սիրուն և հրաշակերտ Մանազկերտ։

### ԱՐԾԿԷ (ԱՐՋԱԻԱՋ)

Երկիրն լեռնային և բլրային է առ հասարակ, միայն ծովու եզերքներն դաշտային են և գեղեցիկ տեսարան մը կընծայեն աչաց հայելոյ. կլիմայն բարեխառն է և հողն խիստ արգա-

սաւոր, շատ նաւաղ ջրարբի լինելով հանդերձ։ Ունի պտղատու բազմաթիւ ծառեր, յորս առատ են ընկուզենիք և ծիրանիք։

Սոյն գաւառն Վան-Տոսպայ կատարեալ ԱՄԲԱՐՆ կը համարուի, որմէ առաջուց առագաստաւոր նաւերն (որոց թիւն 100 ի կը հասնի) ամեն տարի աճագին քանակութեամբ ցորեան կը թափին Վանայ հրապարակին վերայ, ուր արդարև սով կը տիրէ, երբ Արճէշու և մանաւանդ Արջաւաղ գաւառիս ձիւնի նման ճերմակ ցորենի շեղջերն շարան շարան (կարգ կարգ) չը տեսնուին յաչս ժողովրդեան։

Արեւելքն յԱրեւմուտ 10 ժամ երկայնութիւն ունի սոյն գաւառն և Հարաւէն 'ի Հիւսիս 6–7 ժամ լայնութիւն։

Խոռխոռունեաց սահմանն կարելի է այսպէս որոշել, Արեւելքէն Արճէշ, Արեւմուտէն Բզնունիս, Հարաւէն Վանայ ծովն և Հիւսիսէն Ալաշկերտու գաւառ։

Գաւառիս պարծանաց սարն է Սիփան լեռն, որ ունի ընդարձակ նստուածք կամ բազմաճղի յատակագիծ, բարձր և մշտնջենաւոր ձիւնապատ գագաթ, ուր ելնելոյ համար գոնէ մէկ օր պէտք է։ Սոյն հսկայ և հրաբղխային լերան գըլուխը 7–8 արտի մեծութեամբ լեռնադաշտ մի է, ուր կը լինի սաստիկ ցուրտ՝ նոյն իսկ ամարդափառի ամենատաք եղանակին։ Սիփանայ ձեան ջուրն վերի և վարի Սիփան կոչուած Հայ գիւղե-

րու ջրաղացքներն կը բանեցնէ, և ջուր կը տայ բնակչաց, որոնք առանց Սիփանայ կեանք չ'ունին: Այս գիւղերն կը գտնուին լերան ծունկերուն և ոտքերուն վերայ:

Արծկէի հետ Ախլաթ գաւառակն առնելով 140 գիւղ հաշիւ կը լինի, 30,000 բնակչօք, յորոց 25,000 Հայ և մնացեալքն Տաճիկ, Քուրդ, և Չէրքէզ են:

Արծկէի Հայոց գիւղերու թիւն 30ի հազիւ կը հասնի, սակայն բազմաբնակութիւն և միանգամայն մազմամարդ են, բաղդատմամբ այլասեռ գիւղացւոց հետ: Հայ գիւղերու բնակութեանց միջին թիւն է 50, ամենքն ալ երկրագործ և շատ քիչ խառնաբնակ: Տարազգի գիւղերու բընակութեանց թիւն 3–10 միջին հաշուով, որք լեռնային կողմերն և ցամաքային եզերքները կը գրաւեն. Հայերն կը բնակին մէջ տեղերը և ծովային եզերքները:

Գաւառիս Հայ գիւղերու վերայ տակաւին չ'խօսած՝ նոյա անուանքն, իւրեանց հնաաքըրքրութեան համար, աստ կը նշանակեմ և ապա կ'անցնիմ նկարագրել և տեղագրել գլխաւորներն: Ահաւասիկ գիւղօրէից անուանքն՝ Արջաւազ, Նորշնճիւղ, Կոճրէն, Վերին Սիփան, Վարի Սիփան (*), Կուղել, Խռանց, Բարկատ, Աւէն,

(*) Սոյն երկու գիւղերն իւրեանց անուանքն առած են դիրքերէն, Սիփանայ ծունկի վրայի գիւղն «Վերին Սիփան» կ'անուանի, իսկ ոտքի վրայինն «Վարի Սիփան»:

Առէնջկուզ (առաջ կոյս), Վիճկացուկ, Քարաքէշէշ, Արճրա, Բեշնագոմիր, Հէքաձոր, Նորշէն, Կեաղուխ, Մանիկ, Մուրխուս, Հաւկեօտքէշէն, Անուշ-Աղբիւր, Խորանս և այլն։

*

* *

Երկրի Հայ ժողովուրդն արմտեաց մէջ ամենէն աւելի ցորեան կը ցանէ և տարեկանն (չավտար) խուրձերու կապոց շինելոյ համար միայն, ըստ որում ցորեան ցանել տարեկան ուտելն, կամ նոյն է ըսել, ճերմակ ցանել սև ուտելն ամենամեծ նախատինք համարուած է իրենց ընտանեկան շրջանակին մէջ «մարդ մը պէտք է որ վայելէ իւր աշխատութեան պտուղըն». ահա տիեզերական մի սկզբունք, որում Մշոյ աշխարհի գիւղացիք անծանօթ պէտք է եղած լինին. զի նոքա ճերմակ կը ցանեն և միշտ սև կ'ուտեն. սորա պատճառին բացատրութիւնն գործոյս նպատակէն դուրս լինելով՝ 'ի բաց կը թողում։

Հայերն քիչ քանակութեամբ կը պահեն նաև ոչխար, իսկ Մահմետականք քիչ հողագործ և շատ ոչխարաբոյծ են, նման նախորդ գաւառի բնակչացն։

Գաւառիս Հայք ամեն տարի 2000 քիլէն (*)

---

(*) Մէկ քիլէն 360-380 օխա է, օխան 400 դրամ սեպելով։ Այս կողմն, որպէս եւ շատ տեղեր, տեսակ մ'օխա ալ կայ, որ 520 դրամ է եւ կ'անուանի թաւրիզ։

աւելի ցորեան տասանորդ կը տան Կառավարութեան և կատարեալ հիւրասիրութեան տիպար կը կրեն տնով և տեղով ։ Արդարութիւն է խոստովանիլ որ Քուրդերէն ոմանք ևս սոյն օրինակ ազնուութենէ չեն զուրկ ։ Իւրեանց հողագործական արհեստն յար և նման է Արճշոյն ։ Լուսաւորութեան կայծ մ'անգամ այս կողմերու Հայոց միտքերուն այցելութիւն դժբաղդաբար չէ տուած . ամենքն են առանց դպրոցի , որով և առանց ԳՐԻ ։ Ամբողջ գաւառիս մէջ 3-4 հատ ծաղկոցներ հազիւ կան , որք չ'կայեն աւելի կարեկցութեան արժանի պատկեր կը կրեն ։

ԱՐՋԱՎԱԶԱՑ ԳԼԽԱՒՈՐ ԳԻՒՂԵՐՆ

ԱՐՃԱՒԱԶ . Գիւղաքաղաք , ուրմէ ծնած է գաւառին անունն , 'ի հնումն հին քաղաք և Խոռխոռունեաց ցեղի նշանաւոր տեղին էր , որ այժմ անշքացեալ է , ունի աւերեալ բերդ մը և նմանօրինակ մասնաւոր վայրեր , 70-80 աննշան կրպակներ , որք ամենամեծ մասամբ Թրքաց ձեռքը կը գտնուին ։

Արջաւազ այս կողմերու առեւտրական կեդրոնատեղին է , տեսարանն շատ գեղեցիկ և ամեն տանց առջեւէն առատօրէն ջրեր կընթանան ։ Բնակութեանց թիւն 500 ի կը հասնի , յորս 30-40 տուն միայն Հայոց են , ողորմելի կացութեան մ'ենթարկեալ եկեղեցիովն և քահանայովն, դպրոց արդէն անունն չունի , զայս գիտնալով սրտիս ցաւէն թէեւ չէի ուզեր խօսք ը-

նել տեղւոյս նկատմամբ. սակայն երբ բնութիւնըն կամ լաւ եւս է ըսել արիւնն զիս ստիպեց և ես յանդէտս հնազանդիլ պարտաւորած՝ գրեցի։

ԱՌԷՆ (առ էն). — Ամենայն մասամբ նշանաւոր ի գաւառիս, ունի 150 տուն Հայ բնակիչ, գեղեցիկ, այլ անզարդ եկեղեցի մը և ծաղկոց մը, ուր յոյս չ'կայ ծաղկի մը բացուելուն։ Սոյն գիւղն միայնակ տարին 250 քիլէ ցորեանի տասանորդ կըտայ Տէրութեան։ Յուլիս և օգոստոս ամիսներու մէջ Վանցի և Բաղիշեցի վաճառականաց թիւն գրեթէ գիւղի բնակութեանց թուոյն հը հաւասարի, որք ապրանք և մրգեղէնք բեռներով կը բերեն և նաւերով ցորեան կը տանին ց'վերջ սեպտ. ամսոյն։

Գիւղիս համայն բնակութիւնք, մէկ լայն խորի նման, փոս աղբիւրէ ջուր կը խմեն։ Աստ տըգիտութիւնն չօշափելի է ամեն կողմանէ, եթէ մխիթարական մի կողմ ունին այն ևս երիտասարդաց աշխոյժ և կորովն է։

ԿԵԱՋՈՒԽ. — Ունի 100 տուն, նման առաջնոյն կըտան «զԿայսերն Կայսեր և զԱստուծոյն Աստուծոյ» ու այսպէս կառավարութեան ամբարները կը լեցնեն մեր Կեազուխի մշակներն. տեղւոյս ընտիր է նաեւ գարին, որոյ հացն ցորենի հացէն շատ դժուարաւ կրնայ որոշուիլ։

ԿՈՃՐԷՆ. — Վարի Սիփանի քիչ մը վարօք՝ Վանայ ծովու անմիջական եզերքը։ Ունի 50 տուն Հայ և նման է նախորդ գիւղին։

Սքանչելագործայ վանքն , շինուած Սիփանայ մի կողին վերայ՝ սքանչելի տեսարանաւ , ըստ աւանդութեան այս վանուց մէջ կը պահուի Քրիստոսի մանկութեան ժամանակի լուացման դաշտի մի փոքրիկ մասն , որում աղօթիւք կը դիմեն երբ երկիրն բնութենէն պատժըւի ժանտախտով , ծաղկի կամ այլ հիւանդութեամբք ։

Արջաւաղ գաւառի եզերաց տարասեռ գիւղերէն զատ , մի քանիք ևս մէջ տեղերը կը գըտնուին ։ Գաւառն կը պատկանի Վանայ կուսակալութեան ։

* * *

Այսչափ հերիք սեպելով՝ շարունակեմք մեր ՈՒՂԵՒՈՐՈՒԹԻՒՆՆ ։ Մեզ կը պատահի Սարի սու կոչուած գիւղն , որոյ անուամբ յորջորջեալ ընդարձակ , այլ ամայի դաշտօրայք կտրելով կը ժամանեմք 'ի Տաշկըն՝ քուրդ գիւղակը , որ սահմաններն ածխային առատ հանքեր պակաս չեն . բայց անգործ ու անօգուտ կը մնան ծածկեալ հողին տակ՝ բնական այդ հարստութիւնքըն ։ Սոյն գիշերը իջեւանեցանք Սիփան լերան մէկ ստորոտը գրեթէ բացօթեայ և ամայի տեղւոյ մը մէջ , ուր որպէս յիշեցի , մինչև առաւօտ փոխան անուշ քուն քաշելոյ , հոգինիս քաղելոյ վերայ էինք ։

Դաշկըն գիւղի մէջ կը բնակին մի քանի տուն Քուրդ , որք « չկակ » կ'անուանին ։

# ԳԼՈՒԽ Է.

## ՄԵԿՆՈՒՄՆ Ի ՀԱՐՔ ԳԱՒԱՌ

Առաւօտնիս աստ՝ ի Դաշկըն գիւղն ըրած եմք և այժմ մեր Արեւն ծագած ելնեմք յուղի։

Դաշկընէն 1 $^1/_2$ ժամ ճանապարհորդելէն զկնի մեզ կը հանդիպի մի ընդարձակ և երկայն ձորակ, որ սահմանն կը կազմէ ընդ մէջ Հարք գաւառի (Մանազկերտու) և Խոռխոռունեաց։

## ՄՈՒՏՆ ԻՄ Ի ՀԱՐՔ ԳԱՒԱՌ ՏՈՒՐՈՒԲԵՐԱՆ ՆԱՀԱՆԳԻ

Այսուհետեւ մեր առնելիք ճանապարհն կը կոչուի «Մանազկերտու (Մանծկերտու այժմեան յորջորջմամբ) քուէն» (քարոտ տեղ), որ կը տեւէ 2 $^1/_2$ ժամ. մեր ճանապարհի Հիւսիսակողմ մի քանի այրեր կան, զորս սովորաբար ծաղարաններ կ'անուանեն, որ այժմ անմարդաբնակ լինելով՝ ծայրէ գազանաց կատարեալ որջեր եղած են։

Սոյն քարադաշտերուն մէջ հազուագիւտ է ջուր, ասոր համար բազմաբնակութիւնք չ'կան, միայն 'ի Հիւսիսակողմն, բաւական հեռու նոյն այրերէն, կը գտնուին 3–4 քուրդ գիւղեր՝ 3–5 տնական բնակուած, որոնք գետնի տակի խոռոնկ տեղեաց ջրերովն աւելի կապրին քան թէ մանաւոր աղբիւրներով։

Սոյն խեղճ բնակութեանց վերաբերմամբ հետաքրքիր ուղեւորի միտն կը զարթնու բնակա-

նաբար և կ'ուշաւորի, եթէ պահ մը հոգնութեան-նէն ննջած իսկ լինի, թէ տրդեօք անահ և ա-ներկիւղ այդ կասկածոտ վայրաց մէջ ինչպէս կարլին դոքա խաղաղ և անխռով։

*
* *

Այս կողմերու սրտօրայքն արդարեւ շատ քիչ են, սակայն բուսականութիւնն ընդարձակ և առատ է, լի ծաղիկներով և բուսեղինաց տեսակներովն։ Այսպէս ահա կը հասնիմք ի Մանազկերտ, իւր սահմանին մէջ 5–6 ժամ ու-ղի կտրելէն զկնի. սոյն պահուն Տեղագիր-Ու-ղեւորիս բերանն ծարաւէն ցամքած, սիրտն չոր-ցած, հոգին յուզեալ և միտքն յափշտակուած էր . . .

## ՄԱՆԱԶԿԵՐՏ՝ ՀԻՆ ԲԵՐԴԱՔԱՂԱՔ

Հարք գաւառի սոյն իշխանանիստ քաղա-քըն, զոր շինած է Հայկ Նահապետի Մանաւազ որդին, կը գտնուի գրեթէ Ապահունեաց սահ-մանակից, Արածանի գետոյն աւընթեր, մեր Մահմետական հայրենակիցք զայն կանուանեն «Մելազկերտ», որ 'ի հնումն նշանաւոր տեղե-րէն մին էր 'ի Հայս. զարմանալի ընդարձակու-թեամբ, պարիսպներով ու այլ և այլ աշտարակ-ներով ամրացեալ։ Մենք թողումք տեղւոյս պատմականն և տեղագրեմք զոր ինչ տեսած և անձամբ շօշափած եմք ներկայիս մէջ։

*
* *

Մանազկերտ կը գտնուի սեւորակ-քարոտ

մի ընդարձակ և բարեբեր դաշտի վերայ, իւր անուամբ այժմ կը կոչուի նաեւ դաւառն։

Քաղաքիս օդն և ջուրը խիստ առողջարար, հողն բարեկից ու տեսարանն վսեմ է և վեհ. մերձակայ դաշտորայքն քիչ խոտաւէտ, ապառաժուտ է և քարերով լի։ Գլխաւոր բերքերն են առատօրէն ցորեան, կտաւատ և կանեփ. Քաղաքն բոլորովին անծառաստան է, աստ փոքրիկ ուռենւոյ մը շուքն տասն անգամէն աւելի արժէք ունի քան թէ Պօլսոյ հասարակաց պարտէզներն և այս մասին արդար է ըսել որ բնակիչքն դատապարտելի անտարբերութիւն մի ունին, որ կը թուի յառաջ եկած լինիլ ամառ եղանակին բնութեան ցոյց տուած մասնաւոր զովութենէն, զոր բնակիչքն պարտական են մօտակայ լեռնակարկառներուն, որոց մէջ տեղէն համարեա թէ շարունակ կը փչէ օդն զովարար։

*

* *

Մանազկերտու այժմեան բնակութեանց թիւն է 200, յորմէ 85–90 տուն Հայկական են և մնացածն Մահմետական. ամենքն անխտրապէս երկրագործութեամբ կը պարապին. աստ մի քանի փոքրիկ կրպակներ կան՝ պատկանող Բաղիշեցի Հայոց, որք բազմաթիւ գիւղերու հետ մասնաւոր առ և տրով կ՚զբաղին։ Անցնիմք ուրեմն նկարագրել և տեղագրել քաղաքիս ներկայ Պատկերն։

Քաղաքիս մեր դրացի Մահմետականներն

ունին իւրեանց նուիրական վայրերն և բաւական հաստատուն են ։

Հայք ունին երկու հին և հոյակապ եկե- ղեցի, մին յանուն Ս. ԱՍՏՈՒԱԾԱԾՆԱՅ և միւս յանուն Ս. ՍԱՐԳՍԻ կառուցեալ. վերջնոյն կից կայ դրօքն փակելօք մի այլ եկեղեցի՝ դարձեալ սիրուն և գեղեցիկ, որ ամառ ատեն կը ծա- ռայէ ցորեանի ամբարատեղւոյ ։

Նախորդ երկու եկեղեցիք ընտիր ճարտա- րապետութեան գործ են՝ քառակուսի սիւնե- րով ։ Կրօնական այս տեղիքն չեն և ոչ ծառ պա- հելոյ նպատակաւ ժողովրդեան երկու քահա- նաներէն մին առաջնոյն և միւսն երկրորդին մէջ երեկոյ և առաւօտ կը կատարեն անխափան իւրեանց ժամասացութիւնք, 'ի մխիթար ժողո- վրրդեան, և իրենց տրտում սրբավայրիցն ու չը մոռնամ ասելոյ որ առանց տիրացուի և բա- ղում անգամ ևս առանց գոնէ մէկ հատ փոխ- ասաց մանկան կը կատարեն այդ արարողու- թիւնքն, զորս իրենք միայն կը լսեն, զի ունկըն- դիրք երկու կամ երեք խուլ պառաւներ են ։

Սոյն պատկառելի քաղաքն շատ իրաւունք ունի արտաքին օժանդակութեամբ ծաղկոց մը ունենալ, որով տեղւոյս բոկոտն մանկանց՝ թե- րեւս Մանաւազայ Թոռներուն կանոնաւոր կըր- թութիւն մի տրուի և այսպէս այդ օժանդա- կողքն միջնորդ հանդիսանան նոցա (ուսանողաց) կլորիկ բերնին մէջ Ա և Բ դնելով պատիւ բե-

րել Ազգին և միանգամայն Տէրութեան, որ հովանեաց ներքև որչափ աւելի ողջամիտ լինիմք, այնչափ կը յաւելումք փառքն Օսմանեան գահուն և կը պսակի գովելի նպատակն նորա լուսամիտ Դահակալին: Մանազկերտու Հայք ունին 40–50 հատ մանկիկներ ծաղկոցի վերաբերեալ և բաւական թուով մանկիկուհիներ. ամենքն առ 'ի չգոյէ դպրոցական տեղւոյ կը խամբրին եկեղեցւոյ մի խոնաւ անկիւնը, ուր 'ի ձեռին բռնած են բազմատեսակ գրեանք, զոր օրինակ չարականի մի կտոր, Նարեկէն «Ձայն հառաչանաց» թուղթ մը, ժամագրքէն «արի Տէր օգնեա ինձ» թերթ մը, գործոյէն Պօղոսի այլափոխութեան մի քանի պարբերութիւնք. և ոմանց ձեռք Աւետարան աշխարհաբար (բողոքականի). զայս ամեն կ'անուանեն դաաաթէր, ուղղութեան վերայ չեմ խօսիր, ըստ որում ինքնին մակաբերելի է շատ դիւրաւ. ինձ դալով, ես աւելի ուրախ կը լինէի, եթէ հարցմանըս պատասխանն «դպրոց չ'կայ» լինէր, վասն զի երբ չ'կայն կայէն աւելի օգտակար լինի, Ուղեւորն իրաւունք չունի՞ ցաւ զգալ այս օրինակ ծաղկոցի վերայ: Մանուկներն են աշխոյժ և կայտառ. այլ որպէս ասացի, են անտէր ու անտիրական, որով կարեկցութեան արժանի վիճակի մը մէջ կը գտնուին. իսկ իւրեանց հարց տալով՝ շատ կարճամիտ են բառին կատարեալ նշանակութեամբ:

Շարունակեմք տեղւոյս սրբագրութիւնն (նուիրական վայրեր գրելը)։ Վերոյիշեալներէն զատ կան նաև հետևեալք. Ա. մի մատուռիկ՝ յանուն Ս. Ներսիսի շինուած, որ այժմ այնչափ փոքրացած է՝ որ հազիւ 3–4 խորանարդ մեթր տարածութիւն ունի, որմէ՝ ներս մտնել ուզողն պարտի խոնարհիլ. Բ. կամարակապ եկեղեցի մը (անունն անծանօթ) կը տեսնուի գետնի տակ, որոյ տանիքն երթևեկութեան ճանապարհ է, իսկ մէջն յարդով լի. Գ. տաղաւարիկներ թըւով վեց, յորոց երկուքն անորոշաբար սուրբ կը կոչուին և մնացեալ չորսն Թուխ Մանուկ (սոքա նման նախորդաց թիւ և յիշատակարան չունին, ուստի որ դարէն կը գան և ինչ անցքեր տեսած են կը մնան անծանօթ տակաւին. դոքա տեղացի Հայոց մասնաւոր ուխտատեղիներն են, մանաւանդ իգական սեռի համար, որ ամեն շաբաթ երեկոյներն անմոռաց, խունկ, մոմ, և ոմանք ևս ձէթ (կտաւատի իւղ) հետերնին առնելով՝ կը տանին հոն տեղերը ու կը վառեն և կը ծխեն կուրծքի տակից մրմնջելով «Աստուած ողորմի մեր նախնեաց հոգւոյն»։

## ԳԼ. Ը.

### ՄԱՅՐ ԵԿԵՂԵՑԻՆ

Քաղաքիս մէջ Արեւելակողմն կերպարանափոխեալ մի կրօնական շէնք կը տեսնուի, զոր Հայք «Մայր եկեղեցի» կ'անուանեն, թէպէտև

մայրութենէ իրապէս դադրած լինի ։ Ուշադրութեամբ դիտեցի՝ որ այդ հինաւուրց չէնքի պատերն սուրբ էին , անկիւններն սուրբ էին , գետիններն եւ շատ տեղեր սրբութենէ զուրկ չէին . վերջապէս այդ օտարացեալ չէնքի ամեն կողմերը լի էին Քրիստոնէական և Ազգային ըղձացման արժանի նշխարներով , զորս պատեհ առթիւ մը համբուրեցի կարօտակէզ շրթամբ ։

Աստ մի ծերունի գաւազան 'ի ձեռին նըստած էր մի պառկած խաչաքարի վերայ , ուր թուականն նայելոյ համար մեր ալեւորին կամ տարեւորին « վեր ե՛լ » ասելոյ պէտք չ՚մնաց , խեղճ պապիկն դեռ իւրեան չ՚մօտեցած՝ ինքն արդէն երկու մեթրէն աւելի հեռացաւ ինքնաբերաբար , պատկառելի , այլ պատկառոտ դիմօք , ես չ՚գիտի թիւ մ՚այդ քարի վերայ , որոյ դէմքն հրաբխային էր , ծաւալով փոքր եւ քանակութեամբ շատ ԾԱՆՐ ։ Սոյն քարի նկատմամբ ահա ալեւորին խօսքերն , զորս իրեն անծանօթ Ուղեւորիս ուղղեց , երբ հարցումըրի իրեն թէ ի՛նչ քար է այս « մեր հին ժամանակի մեծերն այս քարին վերայ ելնելով ոտք կը դընէին ընկէ–ն » ։

* * *

Մանազկերտի յԱրեւելակողմն 3–4 քարըն-կեց հեռու կայ մի այլ տաղաւարեկ Ս. ԴԱՆԻԷԼ անուամբ , որ ուխտատեղի է ոչ թէ միայն Հա-

յոց այլեւ Քրդաց ։ Նոյն սրբիկի քովերը կան բաւական թուով վիմխարի եւ հնութենէն ծաղկեալ խաչաքարինք , հսկայաբար յոտին կանգնած , ոմանք են ընտիր քանդակներով եւ ծաղիկներով , յորոց միոյն վերայ գրուած է « Թվին Ո Ի Զ » (626) , զոր Ռ Յ Լ Դ (1334) թիւէն հանելով կը մնայ 708 , որ քարի տարեւորութիւնն է , որմէ շատ աւելի հիններ կային . սակայն աւանց գրի եւ թուականի ու ոմանք եւս արդէն անընթեռնելի ։

Մանազկերտ քաղաքի կեդրոնական տեղերը կը տեսնուին մի քանի բաղանիքներու աւերեալ տեղիք , յորոց միոյն յատակը ասկէ 8–9 տարի յառաջ օտարազգի բնակիչներէն մին գետին փորած ատեն կը գտնէ մեծ քանակութեամբ կղմինտրներ , որովք իւր համար բնակարան մը շինել տուած է , որ այժմ շէնքերու մէջ ամենէն գեղեցիկն է համեմատաբար ։

Գետնի տակն երբեմն հետաքրքրութեամբ կը փորեն եւ դուրս կը հանեն ընտիր մարմարիոնէ փորուած կոներ (բաղնիքի ծորակներու տակի փոս քարն) , կը գտնուին ծորակներ , պալատներու հիմունք , պատեր , կոփածոյ լաւ քարեր , երկաթեղէն , պղնձեղէն , խեցեղէն եւ ապակեղէն հին անօթներ , որոնք կրնան երբեմն գործածուիլ իւրեանց անորոշ տարեւորութեամբ հանդերձ ։

Տեղւոյս կառավարութեան քով պաշտօն

վարող անձերէն միոյն քով տեսի կէս մեծր երկայնութեամբ մի բանալի, երկու տարի առաջ գետնի տակէն գտնուած, որ ունէր զարմանալի արհեստ յիւր վերայ, կը ծալուէր պտուտակով և կը բացուէր պտուտակով, գոցելէն վերջ զմելիի դիրք կ'առնոյր, այլ ափսոս որ ժանգոտած և փտած լինելով իւր արժէքն կորսնցուցած վիճակի մը մէջ կը գտնուէր։ Գետնի տակէն դուրս եկած են նաև ընտիր խաչաքարինք նշանաւոր մեծութեամբ և քանդակներով, յորոց զոմանս տեսի. աստ հնասէր ուղեւոր մը զայրոյթ կ'զգայ մեր այն հին արհեստաւորաց դէմն, որ ժամանակին այնչափ հոգնած և չարչարուած են սոյն քարանց վերայ այլ և այլ ծաղիկներ ու խաչեր փորագրել. սակայն անհոգ գտնուած են յիշատակարան և մանաւանդ թըւական գրելոյ մասին(*). սոյն ցաւալի կէտն Հայաբնակի ամէն կողմ ընդհանուր է։

*

* *

Երբ հետզհետէ հետաքրքիր կը լինէի Մանուազայ գետնի գանձարանին վերաբերութեամբ, ինձ առընթեր նստող Հայերէն մին պատմեց թէ «ասկէ 4 տարի յառաջ այս ինչ տեղ գետին կը փորէի, մեր մառանի (+ելլէ) հիմը ձգելոյ համար, գտայ մարդկեղէն երկու ա-

(*) Մեր նախնիք՝ կը թուի թէ այս տեսակ պարագայից մէջ թուականի ապագայի արժէքն լաւ չէին ըմբռնած։

հագին մեծութեամբ գլուխներ , որոնք իրարու հետ քամուած էին երկաթէ ցուղով մը և քարի մը վերայ զարնելով կոտրեցի » (ինչ մեծ քաջու-թիւն) . սոյն իրողութեան ականատեսք ձայնակ-ցեցան մեր քաջ և խելօք ճանկաքանին . այս պատ-մութիւն Տեղագիր–Ուղեւորիս մեծ վիշտ պատ-ճառեց , վասն զի հսկայի գլուխներ եղած պէտք է ըլլէին , որոց մասին անզգայ գիւղա-ցին պարզմտօրէն կը կրկնէր իր ըսելիքն , յորմէ ցաւէ զատ ձանձրոյթ մի չէր զգայր ։

Շարունակեմք մեր ՏԵՂԱԳՐՈՒԹԻՒՆ , որ ամենամեծ իրաւամբ պէտք է մանրամասն ըլլի որչափ կարելի է ։

*
*   *

Դարձնեմք հայեացքնիս մեր չուրջը , ուր պիտի տեսնեմք 8–10 ձիթահաններու և ջրչեղջ-ներու պարիսպներ , որք կիսով չափ տակաւին կանգուն կը կենան հիանալի ամրութեամբ և զարմանալի հիմունքներով , զորս նախնիք շի-նած են , գիտես թէ , զքաղաքն ապրեցնելոյ ց'գալուստն Քրիստոսի ։

*
*   *

Տարագիր բնակչաց հարիւրաւոր տանց փլ-ատակներն ամեն կողմ լեցուն են խիտ առ խիտ , ամեն ոք դիւրաւ կրնայ և ազատ է այդ աւերակներէն իրեն համար բնակութեան տեղի մը գրաւել և հաստատել առանց մեծ դժուա-րութեան մը , 'ի բաց առեալ փայտն , չինու-

թեան ամեն տարերք պատրաստ են ։

Մանազկերտ քաղաքն 'ի հնումն ունեցած է 5 հատ հռկայական դրունք , մին յԱրեւելս , մին յԱրեւմուտս , մին 'ի Հարաւ և միւս երկուքն 'ի Հիւսիս . այժմ սոնց տեղերն որոշակի յայտնի են և ոմանց տակաւին տեղերու վիթխարի քարինքն կը տեսնուին ։ Ականատեսք կը պատմեն թէ « այդ դռներէն միոյն վերայ ասկէ 35–40 տարի յառաջ հին և հրաշակերտ դուռ մի կայր կախեալ , հին օրերէն մնացած » ։

Քաղաքի անմիջական շրջապատը կան խըրամներ հին աւուրց պարիսպներու մէջ տեղերըն ։ Բուրգերէն ոմանք փոխմօրէն տակաւին կանգուն են և ոմանք ևս աներևոյթ եղած ։

*

* *

Ցիրուցի տեղւոյս արքայական կամ իշխանական շինուածքներն այն աստիճան քար ու կիր և աւազեռայ կազմակերպեալ են , որ եթէ մարդիկ արհեստօրէն քանդած չլինէին , ցարդ ամեն ինչ իւր նորութեամբ կեցած պիտի լինէր։ Բուրգերէն հնգի ճակատներուն վերայ կան զետեղուած քառակուսի ճերմակ քարինք կէս մետր երեսով , ուր կը տեսնուին Պարսկական և Արաբական հատառօտ յիշատակարաններ , դրեթէն ոմանք աւերեալ են ։

Մանազկերտու Արեւելեան Հիւսիսային բուրգի վերին կողմը հայերէն տառերով գըրուած է « 'ի Թուականութեան Հայոց ՇՁԳ (583)

կանգնեցաւ բուրգս ձեռամբ Կիրակոսին, Աստուած ողորմի »:

Մանազկերտի բուն քաղաքի շրջապատը իւր աւերակներով մէկ ժամու տեւողութեամբ շրջանակ մը կրնայ կազմել. իսկ արտաքին ոլորտըն 3 ժամէն աւելի կը տեւէ: Սոյն վերջի ընդարձակ շրջանակին մէջ եւս ամեն կողմերը մանաւանդ Արեւմտեանն և Հարաւայինն լի են մասնաւոր տանց, գիւղօրէից, գետնատարած եկեղեցեաց և մատուռներու աւերակներովն: Կան ընտիր ջուրեր, որք այս օրինակ պարագայից մէջ արեւակէզ ուղեւորի . . . սիրտն կը զովացնեն:

## ԳԼ. Թ.

### ԿԱՐՄԻՐ ՎԱՆՔ ԵՒ ԿՌԱՊԱՇՏԱԿԱՆ ՔԱՐ

Մանազկերտի յԱրեւմտահարաւ գրեթէ մէկ ժամ հեռաւոր « կարմիր վանք » կոչուած տեղի մի կայ, ուր 2–3 աւերեալ եկեղեցեաց բեկորք կը տեսնուին, որք այս կողմերու Հայ գիւղայւոց ուխտատեղւոյ կը ծառայեն: Յիշեալ Կարմիր Վանք անուանեալ տեղէն քիչ մը տարակայ ահագին քար մի կայ, որ ունի 2 մեթր երկայնութիւն և $1\frac{1}{2}$ մեթր լայնութիւն, բնականին վերայ տաշուած և ձեւակերպուած, որոյ գըլուխն տափարակ է և հաւկթաձեւ, տաշտի նման փորուած, զոր Հայք « սեղանի քար » կ'անուանեն, իսկ Քուրդերն « կեավր քաֆըրան » (կռա-

պաշտի քար) , որ ըստ ամենայն հաւանականութեան կը կարծուի լինել կուռքի մը պատուանդան մեր նախնեաց կռապաշտութեան ժամանակէն մնացած , ոյր վերայ չ'աստուած զետեղելով պաշտած լինին ։ Այս կողմեր կը տեսնուին նոյնպէս ջրազացքներու երկայն շարք , մ'որոց թիւն « 300 էն աւելի եղած է երբեմն »՝ որպէս կ'աւանդեն , յորոց ոմանք այժմ տեսանելի են տակաւին և ոմանք ևս հազիւ նշմարելի մնացած ։ Ասոնց մէջ 12–13 հատ կան , որ կը գործեն և ամեն օր Հայոց և Քրդաց ցորեաններն կաղան ։

*

* *

Քաղաքիս Հարաւակողմն $1\frac{1}{2}$ ժամ հեռաւոր կայ « Սնճան » ըսուած աւերեալ գիւղ մի , որոյ նախնի բնակչաց աներեւոյթ թոռանց մեծ պապերու խաչաքարինքն դեռ կանգուն կը կենան , և ըստ Քրիստոնէական օրինաց երեսնին դարձուցած են յԱրեւելս , ոմանք մարմնոյ զանգուածի ծանրութենէն ծռուած են յԱրեւմուտս և ոմանք ևս երեսի վերայ ընկած , յորոց և ոչ մէկի դէմքն կարող եղայ տեսանել , վասն զի շատ մեծ և ծանր էին ու իմ և կարապետիս ոյժերն չէին զօրեր զայնս իւրեանց կռնակին վերայ դարձնել տեսնելոյ նպատակաւ թէ՝ ունէին թուական մը կամ յիշատակագիր և կամ գոնէ մի ՏԱՌ մեսրոպական ։

Սոյն գիւղին առընթեր մի մեծ քարաժայ-

ռի տակէն կը բղխի ահագին գետ մը , որ նոյն աւերեալ գիւղի անուամբ « Ոնճանի գետ » կը կոչուի և կրնայ 10–15 ջրաղացներու ուրոյն ուրոյն ջուր տալ ։ Այս գետն , որ մանր ձուկներ ալ կը սնուցանէ , ունի պատուական ջուր՝ արտասուքի նման վճիտ ու պայծառ , որ Ուղեւորիս յիշեցնել տուաւ Հայոց Ձորոյ Շամիրամն. սակայն այս կողմերու գիւղօրէից ընծայած օգուտն խիստ աննշան է ։ Ուշի ուշով գետոյս ընթացքն և երկրի դիրքը դիտող մը շատ դիւրաւ կրնայ համոզուիլ որ եթէ 1000–1500 ոսկւոյ գումար մը ծախսելով՝ չափաւոր աշխատութիւն մի 'ի գործ դնեն սոյն ժլատ գետոյս պէտք եղած տեղ նոր ուղղութիւն տալոյ համար , յայնժամ բազմաթիւ արտօրէից վերայ կարող է ելնել և անոնց մատակարարել առատօրէն ջուր , որ այժմ յումպէտս կ'ընթանայ ։ Այս անգութ գետն զինքը շրջապատող արեւակէզ արտօրէից վիզ ծուռ կամ գլխիկոր հասկերուն կաթիլ մի ջուր կը զլանայ , թերեւս չուզելոյ համար բնութեան օրէնքն ոտնակոխ ընել , որ զինքն չէ սահմանած առ այդ և կամի մարդոց աշխատութիւնն տեսնել ։

Մանազկերտի Արեւմտեան հիւսիսային մերձաւոր կողմէն՝ Արեւելահիւսիսէն դէպ 'ի յԱրեմտահարաւ կ'ընթանայ Եփրատէսի Արեւելեան զօրաւոր ճիւղն , որ կ'անուանի « Արածանի » և կը բղխի Ծաղկանց լեռներէն և Տիատին գա-

ւառի գլխաւոր ձորակէն, յորմէ 5-6 մեծամեծ աղբիւրներ դուրս կը գան քարաժայռերու տակից, որք իրարու հետ սիգաբար կը միանան և կը կազմեն դայդ ճիւղն, որ կ՚անուանի նաև «Մուրատ» գետ, որոյ մէջ կը թափի մեր յիշած անդուլթ Անճանն և որ վերայ քաղաքէն 3/4 ժամ հեռու՝ 13 աչքէ մի գեղեցկաշէն կամուրջ կայ կապուած, շատ հաստատուն և հին։ Սոյն նշանաւոր կամուրջի մէջ տեղի երեք աչքերն քանդուած են, որով անց ու դարձ անկարելի եղած են ճանապարհորդաց համար։

Գարնան ժամանակին գետոյս յորդման ատեն, օդով լի 12 կամ 16 այծու տիկերէ կազմեալ՝ անպատսպար տկանաւակաւ մ՚անցուդարձ ընելոյ պարտաւորեալ են բոլոր ուղեւորք։ Այդ տիկերն իրարու հետ կապուած են և իւրեանց վերայ ողորմելի ճիւղերէ գործուած վանդակ մի կը ձգեն հօրիզոնական դիրք՝ եզերքն բոլորովին անպատսպար, որ վերայ ուղեւորներն պիտի նստին և 4-5 հոգի միայն կրնայ ընդունիլ. կենաց ամենամեծ վտանգն (մահ) աչքն առած պէտք է լինի մէկն, որ կարենայ զինքն այդ խղճալի և երերուն տկանաւակին վստահիլ և յիրաւի, շատ անգամ, հակառակ ամեն տեսակ նախազգուշութեանց, կեանքեր զոհ կ՚երթան և այսպէս Մուրատէն իւրեանց [illegible] առնելով կը գտնան յաշխարհն մեռելոց. բայց երբ գետոյ յորդութիւնն իջնայ, ձիով 'ի գետն մանելով

կ'անցնին կարաւանները, որք դարձեալ երբեմն զոհեր կը տան դժբաղդաբար . . . ։

Քանի՜ երախտապարտ պիտի լինի Երկիրն, երբ մեր Բարեխնամ Կառավարութիւնն յատուկ յանձնախմբի մը ձեռամբ մի տեղեկագիր չինել տայ Հայաբնակ գաւառաց գետերու և վտանգաւոր տեղերու անց ու դարձի վերայ և նորանոր կամուրջներ հաստատել և հինցածներն վերանորոգել տալ, ուր որ անհրաժեշտ է ։ Զ'մոռնամ ըսելոյ որ ինչպէս հասարակ ժողովուրդ՝ նոյնպէս և կառավարութեան ամեն կարգի պաշտօնեայք սոյն օրինակ տեղերէ շատ անգամ անցանելոյ պարտաւորեալ են ։

*

* *

Վերոյիշեալ կամուրջի քանդման վերաբերութեամբ հայախօս մի Քուրդ ինձ պատմեց հետեւեալն. « ասկէ 40–45 տարի յառաջ Հայտարանցի Թոռունները (աղնուական ցեղէ) Հասլանցի քրդաց դէմն կռիւ ունեցան, և Հայտարանցիք (բնակութիւննին Վանայ գաւառին մէջ) երբ կ'իյնան Հասլանցւոց (Մանազկերտի գաւառին մէջ բնակուած) ձեռւէն, սոյն վերջինքն նեղի իյնալով՝ Եփրատէսի երեք աչքերն կը քանդեն, որմէ թշնամին այլ ևս չ'կրնալով անցանել, իրենք կ'ազատուին ». կ'երևի թէ սոյն կռիւն գարնան եղանակին տեղի ունեցած է, որ թշնամիք 'ի գետն մտանել չեն համարձակեր ։ Նոյն թուականէն ց'արդ անչէն կը կե-

նայ այդ հսկայ և գեղեցկաշէն կամուրջն, որոյ Արեւմտահարաւ 4–5 քարընկեց հեռաւորութեամբ Ս. ՆՇԱՆ անուամբ մի կիսակործան տաճար կայ, որոյ չորս պարսպայ կէսերն և վիմաքարն տակաւին կան կանգուն, 'ի յիշատակ իւր անցեալ փառաց և ճոխութեան: Յիշեալ նուիրական շէնքին Թուական չ'կայ և ոչ մի քարի վերայ, միայն խաչակիր մի քանի քարինք կը տեսնուին աստ և անդ պառկած: Աստ կայ մի անուշահամ աղբիւր, որոյ ջուրն «անմահական» է և դարափի մը տակէն դուրս կը տայ զզզղալով (պաղուկ պաղուկ դուրս տալով) ու կը լճանայ կանոնաւոր փորուած քարի մը մէջ, որմէ դուրս հոսելով կ'ընթանայ և դալարեաց մէջէն կը Թափի 'ի Մուրատ, յորմէ երկու քարընկէց հազիւ հեռու է:

Այս պահուն միջօրէի տաքութենէն կը նեղուէի, սիրտս չուզեց սոյն ծաղկալից վայրէն հեռանալ. սակայն տեղէս ընդ փոյթ մեկնիլ անհրաժեշտ հարկ մի էր ինձ համար օրուան տարաժամութենէն. միտքս զՅեսուն յիշեց որ Արեւն կեցնէր, որով կարենայի տակաւին Թափառիլ Մանազկերտի սեւորակ դաշտը:

Ի Մանազկերտ Գայմագամ կը նստի ընդ գերիշխանութեամբ Մշոյ միւթէսարըֆութեան և ունի ամենամեծ յարմարութիւն վերստին մեծ քաղաք լինելոյ:

# ԳԼ. Ժ.

## ՄԱՆԱԶԿԵՐՏ ԳԱՒԱՌԱԿԻ ԳԼԽԱՒՈՐ ԳԻՒՂԵՐ

*Մանազկերտ իւր անունն տարածելով այժըմ կը կազմէ գաւառակ մը, որոյ սահմանէն տակաւին դուրս չելած՝ խօսիմք հետեւեալ Հայ գիւղերու վրայ, ի բաց թող տալով մի քանի մանր մունր Քուրդ գիւղօրայք և խառնաբնակ գիւղակներ ։*

ՏԷՐԻԿ. — *Կը գտնուի Մանազկերտի յԱրեւմտակողմն գրեթէ սահմանակից Ապահունեաց գաւառին ։ Գիւղս շինուած է ցած և ընդարձակ բլրոյ մը կողերուն վերայ. ունի 55 տուն բնակիչ մի եկեղեցի Աստուածածին անուամբ, անբաւական, անճաշակ և մութ, 2 քահանայ, որք կը սիրեն զխաւարն առաւել քան զլոյս, սոցա մտքերն կը թուին ներգործուած լինել եկեղեցւոյ* ԴՈՒՌԲԷՆԷՆ. *ոչ դպրոց ունին և ոչ ևս ունենալոյ միտք ։*

*Տեղւոյս եկեղեցւոյ վերաբերմամբ տարեւորներն կաւանդեն թէ «մեր Աստուածածին շատ զօրաւոր է, այնպէս որ հին ժամանակ վայրի ոչխարներն կուգային իւրեանց յօժար կամօք եկեղեցւոյս դրան առջեւ կը պառկէին վիզերնին երկնցուցած, յետոյ քահանայն գալով 1 ժամ կ'սպասէր և երբ ոչխարն առաջուան պէս պառկած կենայր, յայնժամ կը կոչէր զժամակո-*

չըն և ոչխարին օրհնեալ աղ կերցնելէն և երեք անգամ զայն օրհնելէն յետոյ կը հրամայէր անոր որ զոչխարն մորթէ, որոյ միսն կը բաժնէին աղքատաց և կարօտելոց »:

ՌԸՍՏԱՄԿԷՏՈՒԿ. — Ունի 80–90 տուն. Թուխ մանուկ անուամբ եկեղեցի մը, 2 քահանայ որոնց ջանքն գովելի է Եկեղեցւոյ շինութեան համար. սակայն դատապարտելի անտարբերութիւն մ'ունին առ ուսումն և դաստիարակութիւն, թէև իւրեանց անտարբերութիւնն արդարացնելոյ բանաւոր կողմերն ունենան(*), դըպրոց արդէն գոյութիւն իսկ չունի. բայց ունենալոյ մեծ դժուարութիւն մը չկայ, եթէ բացողըն Երկլի կեանքն դասի պէս սերտած է. ահա գործ դարձեալ գործող կը պակսի: Գիւղիս տեսարանն լաւ է, օդով և ջրով՝ կենսատու տարերքներով:

ՄԷՃԻՏԼՈՒ Հայ բնակութեանց թիւն է 80 յորում կը տեսնուի 5 տուն Քուրդ: Հայք ունին մի աննշան եկեղեցի, 2 խեղճ քահանայ, որք ժողովրդեան կառաջնորդեն 'ի բարին, որոյ վերայ չկարծեմ որ գաղափար իսկ ունենան երբ 'ի նըկատ առնուի դպրոցի անունէն զզուանք զգալնին:

(*) Սոյն ԿԷՏՆ աստ յիշել չեմ ուզեր, զի ներկայ գործիս նպատակէն շեղած կը լինիմ, այլ կը թողում առայժմ մթութեան եւ իւր ծանրակշիռ վիճակին մէջ, զոր հրապարակաւ յուզելոյ մտադիր եմ վաղ կամ անագան:

Գիւղիս Արեւմտակողմն իրեն մերձ կայ Ս. Յովհաննէս » անուն փոքրիկ ուխտավայր մը, որ ապաւէնն է տեղւոյս նեղելոց ։

ԽՕԹԱՆԼՈՒ. — Ունի 45 տուն բնակիչ յորմէ 25 տուն Հայ և միացեալն կարդացւոր (չեխ) են, որք շատ ընթերցասէր են ։

Հայք ունին հնաշէն ամենապարզ եկեղեցի մը, որոյ սեղանի քարերէն ոմանց վերայ կը տեսնուի բեւեռագրեանք. ունին մի ազնիւ, ճըշմարիտ և ուսեալ քահանայ, որ իբրեւ գոհար, ընկած է այս երկաթէ ժողովրդեան մէջ, տեղւոյս տրտում եկեղեցւոյն և ժողովրդեան միակ մխիթարութիւնն սոյն կրօնական պաշտօնեայն է որ փափաք յայտնեց Տեղագիր-Ուղեւորիս «Կըրօնասէր ընկերութեան մը շնորհիւ ունենալ նախակրթարան մը, ուր 25–30 ուսանողներ կրնան յաճախել» ։

ԹՈՆՏՐԱԿ ԿԱՄ ԹՈՆՏՐԱԿՍ. — Բնակութեանց թիւն է 70, յորմէ 50 Հակական և 20 Քրդական են. սոյն պատմական գիւղն ունի եկեղեցի և քահանայ, իսկ դպրոց «Աստուած տայ» ։

ԹԱԼԱՐԻՍ (այժմ Լաթար). — Նախնական որով և նախորդի նման պատմական գիւղ մի է և պարագայիւքն դրեթէ առաջնոյն պէս ։

ՄՐԻՊԱՐ. — Սոյն գիւղն շինած է Միհրդատ իշխան ։ 25 տուն խառն բնակիչք ունի այժմ և պահած են ց'արդ իւրեանց գոյութիւնըն . . . ։

ՔԱՔԱՐԼՈՒ. — Ունի 80-90 տուն Արամական բնակիչք, եկեղեցի և դպրոցի չէնք. Ժողովրդեան նիւթական վիճակն շատ լաւ է: Գիւղիս մէջ 3-4 տուն հացալից տուներ կան, որոնց մէջ տարին 12 ամիս բնաւ արտաքին հիւրեր պակաս չեն:

ՊՈՒՏՆՈՒԿ. — 40 տուն, որոյ մէջ 10 տուն Քուրդ կը գտնուի, որ ունին խոհեմութիւն և բաւական մեղմութիւն: Հայք եկեղեցի ունին, այլ ոչ դպրոց՞, որոյ պատճառաւ մանուկնին ողբալի կացութիւն մի ունին:

ԽԱՐԱՂԸԼ. — Ունի 90 տուն բնակիչ, մեծագոյն մասամբ Քուրդ. գիւղիս եկեղեցի և դպրոց «Աստուած տայ»:

*

* *

Մանազկերտ գաւառի մի քանի աննշան գիւղերու վերայ խօսիլն զանց ընելով ոճերնիս դէպ 'ի յԱրեւմուտ յառաջ վարիմք և 2 ժամու չափ քարոտ, այլ բարեբեր դաշտեր կըտրելէն զկնի կը հասնիմք յԱպահունեաց Արեւելեան սահմանը, ուր են վերոյիշեալ տէրիկ և Ռըստամ կէտուկ գիւղերն: Այժմ կը գտնուիմք Մուրատ գետոյ եզերքը մի խոտաւէտ տեղւոյ մէջ և տակաւին չ'մտած յԱպահունիս պէտք է նկարագրեմ տեղւոյս Արեւմտեան Հիւսիսային գիծն:

Աստ Մուրատայ հիւրընկալ ափանց վերայ մի գիշեր իջեւանեցանք, ընկերներէս ոմանք կուլային և ոմանք կը խնդային, առաջինքն 'ի

պանդխտութեան դիմելը պատճառաւ. իսկ վերջինքն պանդխտութենէն վերադարձ ընելը բաղդին հանդիպած լինելուն համար, իսկ իմ սիրտ թէեւ այս պահուս այդ երկու հակապատկեր զգացմանց միջնատեղին կը դրուէր, սակայն դարձեալ դուրդ ունէի և դարտս մեծ էր ու պէս պէս, զորս չէին տեսնէր ընկերներուս աչքեր կարճատես: Աստ մի գիշեր ողջոյն անքուն ակամբ հսկեցինք առաւօտ ընելը համար, որպէս զի լոյս տեսնեմք, որով կարաւանի բարձրահասակ ձիերու կռնակը փակչելով կարող լինիմք անցանել գետէն, որ բաւական յորդ է և զայրացկոտ գարնան եղանակին մէջ:

Մուրատոյ այս եզերքը ամառ ատեն գիշերուան ժամ 12էն ետքը մարդոյ արիւնն կը ծծեն տեսակ մ՚օտային կենդանիք, որոց տուած վրէժխնդրութեան նշաններն ուղեւորաց խոնջեալ մարմնոյն ամեն կողմեր ուռոյցներով կը պատեն և առ այս մի քանի օր անհրաժեշտ հարկ է հանդիստ առնուլ, որպէս զի անհետ լինին առնուած ծածուկ վէրքերն բնութեան սոյն փոքրիկ կենդանիներն մեր այս կողմերու Հայ գիւղացիք մուրդամծղուկ կանուանին, իսկ կենդանաբաններն չ՚գիտեմ թէ ինչ անուն կրնան տալ այս անասնոց, որ յարմարի իւրեանց վիճակին, որք նման անսիրտ անասուններու, կը յարձակին պարարտ կամ արիւնոտ ճանապարհորդաց վերայ, յորոց ոմանք իւրեանց բոլոր-

տիքը, շրջանակի նման, սև ծուխ ընելով մէջ տեղ կը նստին ապահով, զի այդ կենդանիք ծուխէն կամ մանաւանդ կրակի բոցէն կը փախչին, որ իրենց բացարձակ խեղդիչն է։

*
* *

Առաւօտ է, մեր յուսոյ արշալոյսն բացուած՝ անցնիմք խիստ երկիւղալից Մուրատայ ջրէն, ոյր երեսը շատ նայիլ չ'գար, քանզի կրնայ նայողին գլուխն դառնալով ընկնիլ 'ի գետն։ Այսպէս ահա բաւական տեղ ճանապարհորդելով կը հասնիմք «հազար հազար բլուրներ» (պին պէն Բէփէլէր) անուանեալ ընդարձակ և խոտաւէտ դաշտերն ու բլուրները. այս կողմերը ջուրն շատ նուազ է և երկու ու կէս ժամէն կը հասնիմք հետեւեալ գիւղը։

ՆՈՐԱՏԻՆ. — Սոյն գիւղն ունի 60 տուն բնակիչ զուտ Հայ, մի եկեղեցի և երկու քահանայ և մի խամրոց, ուր ցաւօք սրտի տեսի 30 էն աւելի ժիր մանուկներ, որք առաւօտները՝ իւրեանց դաշտերու զուարթ ծաղկանց նման՝ ցողերով բացուած կը գան և երեկոյ տերևաթափ ու թօշնեալ կը վերադառնան 'ի տուն . . . ։ Գիւղիս նիւթական վիճակն բարւոք է. սակայն դարձեալ մարդոյ պակսութենէն՝ տեղւոյս նոր սերունդն դժբաղդութեան ենթարկուած է։

Նորատին կարևոր գիւղ մի է ամենայն կողմանէ, և կը գտնուի Խնուսայ դայմագամու-

թեան ներքև. ունի խոտաւէտ, ծաղկաւէտ, որով և հոտաւէտ ընդարձակ դաշտեր, որք են մեծագոյն մասամբ հորիզոնական դիրիւք, այլ անջրդի (քիչ բացառութեամբ)։

ՄԵԿՆՈՒՄՆ

Տեղէս ելնելով իջնամք յուղի, 3 ժամէն կը հասնիմք Եօթնագոյն (հաֆթ րէնկ) ըսուած Քուրդ-գիւղը, որ 15 տուն հազիւ բնակիչ ունի. բայց գրաւած կամ նոյն է ըսել իւր ձեռաց տակն ունի 100 տուն գոհացնելոյ չափ ընտիր հողեր։ Խնուսայ գետն «Կօպալ» (փոքր ինչ ծուռ գաւազան) անուանեալ, որ Բիւրակեանէն կը բղխի, գալով կ՚անցնի գիւղիս առջեւէն և Ապահունեաց վերին մասի սահմանագլխէն, ու անդ կը միանայ Մուրատայ հետ։ Գիւղիս դաշտաց մէջ սովորական տեղերէն շատ աւելի ծաղկանց տեսակներ գտնուելով յիշեալ անունն առած լինիլ կը թուի, որ աւելի ստոյգ կը լինի անուանել զայն «բազմածաղկանց գիւղ»։

Գիւղէս մինչև Խնուսայ Արեւելեան բուն սահմանն երկու ժամու ճանապարհ է . . .։ Ես կը վերադառնամ Մուրատայ՝ իմ հիւրընկալ գետոյ ափերու քով և յաջորդ գլխով կը շարունակեմ զիմ ՈՒՂԻՆ տարբեր գիծ մը բռնելով։

* * *

Մեր ուղեւորութիւնն ուղղակի յԱրեւմուտ 2 ժամ շարունակելով՝ կը մտնեմք հետեւեալ գաւառն։

# ԳԼ. ԺԱ.

## ԱՊԱՀՈՒՆԵԱՑ ԿԱՄ ՀԱՑԵԱՑ ԳԱՒԱՌ (Պուլանըխ)

Տուրուբերան նահանգի սոյն կարևորագոյն գաւառն երկու գաւառակներու բաժանուած է․ Ա. Վերին Պուլանըխ, Բ. Ներքին Պուլանըխ։ Երկու մասն 'ի միասին առնելով դաշտային է․ նոյնպէս ունի պատուական կլիմայ, լաւ ջուր և արգաւանդ հող, որ առ հասարակ թխագոյն է և ջրարբի։ Գիւղերն ընդհանրապէս սիրուն տեսարաններէ չեն զուրկ, թէև չ'ըլլին ծառաստան․ դուն ուրեք կը տեսանին ուռենիներ, որոց շուքն ամառ ատեն երթևեկ հիւրերուն անգամ անբաւական է։ Պատուական մարգերէ և արտերէ շրջապատեալ են գիւղերն, որոնք ունին նշանաւոր հացատէրեր, աղնիւ և հիւրասէր, սիրտերնին բաց, սեղաննին առատ, աչքերնին կուշտ և վեհանձն են բնաւորութեամբ։ (Ի կարգին կը յիշեմ մի քանի գլխաւոր անձնաւորութիւնքն այս կողմերուն։)

Հացեաց գաւառակներու բարեբերութիւնըն ինձ իրաւունք կը տայ, որ զայնս ՆՈՐ ՇԻՐԱԿՆԵՐ անուանեմ, զորս հեռաւոր լեռներէ և մասամբ լեռնագօտիներէ սահմանեալ կրնամք նկատել։

Լերանց մէջ նշանաւոր են Կողլըխղաղան և Պըխան լերինքն, երկուքն ալ անտառոտ, առաջինն աւելի հաստ փայտեր կը մատակարարէ

քան թէ երկրորդն , այս կողմերու գիւղական չէնքերու ծածքերն կը պատրաստուին յիշեալ լերանց անտառներէն ։

Ժողովուրդն առ հասարակ երկրագործ է , կը պահեն նաև ոչխար և ոմանք ընտիր ձիեր , որոնց կռնկին վրայ հեծնողներն նշանաւոր են ձիարշաւի արհեստին մէջ ։ Եփրատէս սիգաճեմ կ՚անցնի գաւառիս մէջ տեղէն ։

* * *

Սոյն գաւառակներն կը պարծին իւրեանց աւետիկ (ցորենի ընտիր տեսակն) ցորենի կլոր հատիկներովն , որովք կը մնուցանեն անթիւ ճանապարհորդ.ք, առանց կրօնի և ազգութեան մէջ խտիր դնելոյ ։ Երթեւեկողաց կողմանէ հատուցումն լոկ շնորհակալութենէ մը միայն կը բաղկանայ , այն ևս եթէ տալ յօժարին , զի խիստ շատերն կը մոռնան այդ արդարացի և մարդավարի պարտականութիւնն ։

Ահա մի տարօրինակ ու հակապատկեր երկու նման օրինակ էակաց մէջ՝ կերողին և կերցնողին մէջ . մին իւր ճակտի քրտանց կաթիլներու և անոր արդեանց համար տումար բանել իւր պապերէն չէ տեսած և ոչ ալ իւր լուսահոգի քահանայ–վարժապետէն բան մը լսած և կամ դաս մ՚առած այդ մասին . միւսն կը զլանայ մեծ հոգիներու առջեւ գոհութեան բառ մ՚արտասանել . սնանողի լեզուն կը հոգնի խօսք մ՚ըսել , որ արդէն փոքր տմպլկցուցած (ագահաբար փո-

րը կշտացուցած) է, իսկ մնուցանողին ոչ բազուկներ, հոգնիլ դիտեն և ոչ իւր ժրաջան եզներն, որոց վերայ երկրագործելոյ պահուն արգոսեան աչօք կը նայի գիւղացին, կը գուրգուրայ և կը փայփայէ իւր ոգեւորիչ ձեռամբ և առ այս իրաւունք ունի մեր գիւղացին. վասն զի այդ կենդանիքն կը կազմեն գիւղացւոյն ԿԵԱՆՔ։

Վերոյիշեալ ընդհանուր տեղեկութիւնքն տալէս յետոյ կ'անցնիմ մանրամասնօրէն նկարագրել նոյն գաւառակներն իւրեանց առանձնութեան կարգաւ։

## ԳԼ. ԺԲ.

### Ա. ՎԵՐԻՆ ՊՈՒԼԱՆԸԽ

Սոյն գաւառակն կը պարունակէ 15 Հայ գիւղեր, որոնց բնակութեանց միջին թիւն կրնամք 100 ական տուն համարիլ և մենք զայնս նշանակեմք կարգաւ։

ԿՈՓ. — Սոյն գիւղն, որ կը գտնուի Վերին Պուլանըխի կեդրոնավայրը, կրնայ գաւառակիս գիւղաքաղաք կամ Մայր-գիւղ սեպուիլ, ուր կը նստի դայմագամն ընդ գերիշխանութեամբ Մշոյ Միւթէսարըֆութեան. ունի բանուկ երթեւեկութիւն մը Մանազկերտէն 'ի Մուշ և Մուշէն 'ի Մանազկերտ ևն։ Տեղւոյս ժողովրդային կացութիւնն փոքր ինչ գոհացուցիչ կողմեր ունի։

Կոփայ բնակութեանց թիւն է 300 տուն Հայ, 5 տուն ևս եկովլի քուրդեր, ծառայութեան մը-

տած Հայոց քով։ Հայք ունին երեք եկեղեցի, որք են Ա. Ս. Աստուածածին, 30 տարուան չէնք. Բ. Ս. Թուխ մանուկ, 65 տարուան. Գ. Ս. Գէորգ, որ չունի իւր շինութեան թուական և ոչ իսկ գործածելի է ։ Ամեն եօթնեկի իրիկունները վերջի մատրան ներս և դուրս կը ժողովին և կարգաւ կը վառեն մոմ, և 'ի ճրագի կը լեցնեն նուիրական տըուղէն (շատ փոքր բարչ կամ 1/2–1 օխա պարունակութիւն ունեցող սափոր) նուիրեալ ձէթ, յետոյ կը ծխեն խունկ, որոյ բուրումն պառաւ կանայք երեսնին առնելով կը խաչակնքեն և փառք կըտան Աստուծոյ, որ այդ մատուռիկ պահպանած է մինչեւ ց'արդ։ Ունին հինգ վեց հատ քահանայ, ողորմելի մը-տօք, այլ բարեպաշտ զգացումներով։ Նախա-կըրթարան մը, օր Վերին Պուլանըխի մէջ ա-ռաջին լինելոյ յաւակնութիւնն ունի, և ուր կու-սանին 50–60 աշակերտներ, կայտառ և ժիր։ Նա-խակրթարանիս դասատուն է Վահան Մարտի-րոսեան անուամբ Լիզցի երիտասարդն, որ մի և նոյն ատեն կառավարչի պաշտօնն ալ կը վարէ։ Դասատուն թէև կարող, այլ դրութիւնն ապար-դիւն կընէ իւր ջանքերն, զորս անձամբ տեսի և գովեցի զինքն, որ օժտեալ էր ազնիւ յատ-կութիւններով։

Աստ անհրաժեշտ է կանոնաւոր նախակըր-թարանի մը բացումն։ Գիւղս ազգային տեսա-կիտով մեծ արժէք և կարևորութիւն ունի. սա-

կայն զայնս իւրեան տալու է կրթական ուղղութեամբ ։ Ներկայ դասատուն , որպէս վերև յիշեցի , թէև լինի բաւական զարգացեալ և ազնիւ բնաւորութեամբ , այլ անբաւական է , ըստ որում դպրոցական ՀՐԱՀԱՆԳՆԵՐՈՒ պէտք ունի . իմ սիրտն շատ կը յուզուէր ամեն անգամ , երբ կը տեսնէի տեղւոյս առոյգ մանուկներն և անձնանուէր դասատուն ։

Կոփայ Հարաւային Արեւելակողմն 1/4 ժամ հեռու է Ս. ԴԱՆԻԷԼ կոչուած սիրուն մենաստանն , ուր Միացեալ Ընկերութիւն բարձրագոյն նախակրթարան մ'ունէր, երկու տարի յառաջ և այժմ գոցուած . թէ ինչո՞ւ , պատասխանն Տեղագրութեանս նպատակէն թէև քիչ հեռու ։ բայց շատ ընդարձակ լինելով՝ աստ անյիշատակ թող տալոյ պարտաւորեալ եմ, թէպէտ ներշընչուած լինիմ այս պահուս խղճիս յանձնարարուած խնդիրներէն ։

*
* *

Կոփայ Ս. Դանիէլ վանքն ունի երկու երեք վարդապետ և մի քանի խոտաղ , մշակ , կովեզ , ոչխար , ընդարձակ և ընտիր արտօրայք ։ Սոյն վանքն գաւառիս լուսաւորութեան միջնորդ կրնայ հանդիսանալ , եթէ պէտք եղած խնամք տարուի կրթութեան և դաստիարակութեան գործին ։ Վանուցս ջուրն նուազ է , որպէս և բարոյական լոյսն , ասոնց երկուքն ալ ձեռք բերելոյ համար բնաւ դժուարութիւն չը

կայ՝ երբ ԿԱՄՔ լինի ։ Ս. Դանիէլ զուրկ է նաև դրական կեանքէ ։

ՇԵԽ-ԵԱՂՈՒՊ . — Սոյն գիւղն կը գտնուի նախորդի յԱրեւելահարաւ շինուած զառիվայրներու վրայ . ունի բաւական լաւ տեսարան և փոքր ինչ անպտուղ ծառաստան ։ Բնակութեանց թիւն է 150 . ունին եկեղեցի և մի ծաղկոց անյարմար շէնքով, որ ամառուան համար է միայն , իսկ ձմեռը կը մակաղուին ախոռի մի անկիւնը , կը տաքնան անասնոց շունչերով և կ'ուսանին պարզ դասատուի մը մօքով . մանկանց թիւն 40 էն աւելի է, որոնց Հայրերն դժբաղդաբար նախանձելի բնաւորութիւն ունենալէ հեռու կը գտնուին ։ Աստ կայ մի քանի տուն բողոքական՝ Հոգւոյն Սրբոյ առաքելոց, որք զայլս որսալոյ արհեստին մէջ քաջ հմտութիւն ունին ։ Տեղւոյս ուսուցիչն ազնիւ և առաքինի է, այլ կարօտ դըպրոցական ՀՐԱՀԱՆԳԻ , զոր կրցայ խմովսանն իւրեան տալ . վերջապէս գիւղիս նոր սերնդեան կրթական վիճակն զիս իրաւամբ օրն 'ի բուն բանտարկեց տեղւոյ մի խոնաւ անկիւնը , որմէ երկօրեայ գլխի ցաւ մը ժառանգեցի և որում համբերեցի առանց տրտունջի , վասն զի սիրով բնակեցայ հոն և ոչ բռնութեամբ , մանաւանդ որ հաւատացի թէ կրթական տեսութեամբ օգուտ մ'ընծայեցի 40 էն աւելի Հայ մանկանց ապագայի զարգացման համար ։

ԽԱՉԼՈՒ . — Հայ գիւղ, որոյ 20 տարի ա-

ռաջ եղած 50 տուն բնակիչներէն այժմ հազիւ 7–8 տուն մնացած են․ իւրեանց դրացի են այժըմ 35 տուն Քուրդ եկւորք, որք լաւ կ'ապրին ապրած բնիկներուն հետ։ Գիւղիս գերեզմանատանց քարերն աստ և անդ թաւալած են և ոմանք ևս կը գործածեն չէնքերու համար առ 'ի չ'գոյէ այլ քարանց։ Աստ ուղեւորի աչքին առջև կայ ընդարձակ դաշտ մը, որոյ մի կողման վերայ դարձեալ կը տեսնուի մի Հայ գիւղ աւերեալ, որ «խաչան» կ'անուանի, ուր չ'կան մարդ և անասուն, խաչն և արջառ։ Գիւղիս առընթեր կը գտնուի Խաչլուանայ սիրուն լճակը, որ շրջապատն $1\frac{1}{2}$ ժամ կը տևէ։ Սոյն լըճակն երբեմն վերոյիշեալ աւերակ գիւղի անուամբ կը կոչուի «խաչան», որ անուշ ջուր ունենալով հանդերձ, իւր մէջէն անուշ ջրոյ յորդումներ ալ կան, երկրի արդանդէն դուրս տըւող։ Խաչանն կ'ոռոգանէ Շէխ-եաղուպայ լայնատարած դաշտերու մեծագոյն մասն։

Մի երկայն օրուան կէս-օրին էր, որ հասայ Խաչանի ափանց քով, ինձ հետ ունէի, բաց 'ի կարապետէս, մի կարճահասակ քահանայ, դա չատ քիչ գրել ու կարդալ գիտէր․ բայց տեղւոյ բնութիւնն չէր զլացած իւրեան ներշնչելոյ բանաստեղծական հանճար մը, զոր յանդէտս ցոյց կը տայր ինձ իւր խօսից մէջ․ այս պահուն Խաչանի եզերաց ալիքներն, Հարաւային կողմերէն շարժեալ, կ'աղմկէին մեր ճանապարհի տեսակ-

ցութիւնն այդ պլուզ քահանային հետ . խոր-հուրդներով միտքս յանկարծ պաշարուեցաւ թէ արդեօք ինչ կամէին ասել ալիքներն , որոց լեզուն բնութիւնն չէր կապած , միայն թէ ես չէի կրնար հասկնալ, իսկ քահանայն անուս և անգէտ հմուտ էր նորա լեզուին և մտքին , այլ չեղաւ թարգման ինձ համար , զի յոյս չունէր թէ լսելի պիտի լինէին այդ լճակի . . . ձայներն Ուղեւորիս կողմանէ ։

ԽԱՐԱՊԱ ՇԷՀԻՐ . — Ունի շէն անցեալ մը . այժմ 20 տուն Հայ և կը գտնուի Պլեճան լերան ստորոտը . սոքա շատ պարագայից մէջ կը մխիթարուին ոչ թէ յիշեալ Խաչանովն , այլ 'ի խաչ հանեալովն , յանուն որոյ օծեալ ունին շատ քարեր այդ հին քաղաքին մէջ ։

ԲԼՈՒՐ . — Ցար և նման նախորդ գիւղին ։

ԲԻՐԱՆ . Սորա բնակութեանց թիւն է 50 . ունին հին եկեղեցի մը և նոր քահանայ մը , որոյ հետ բաւական երկար տեսնուելոյ առիթ ունեցայ . դա հոգեւոր պաշտօնեայ լինելով՝ բընաւ խօսիլ չէր ուզեր հոգւոյ աշխարհի բաներուն վերայ , այլ միշտ զիւրեանց մարմնաւոր կեանքէն առատաբար կը պատմէր և իւր պատմութիւնքն լի էին քաղցր և աւելի թթու դէպքերով և կսկիծներով , որոյ դարման մը տանիլն ուղեւորիս համար չէր ։

Այս պահուս միտքս չունէր հաճութիւն քահանայի բոլոր ըսածներուն ուշի ուշով ուն-

կըն դնել, զի մեկնելոյ ժամն կը մօտենայր և ապա հարցուցի թէ ի՛նչ է ձեր եկեղեցւոյ անունըն, տուած պատասխանն ատտ նոյնութեամբ կը նշանակեմ, զոր միտքս լաւ կը յիշէ « օրհնած աղա, ես ի՛նչ գիտեմ, որ կը հարցանես մեր ժամու անուն, իմ գիւղի ժողովուրդ էլ չ՛գիտեր էտա բան, վարժապետ ալ չ՛կայ որ սորվեցնէ ամենեցուն » այս խօսքն ըսաւ թէ չէ յարեց « մենք մեր պապերէն մէկ օր Քրիստոսի անունըն էլ պիտի մոռնանք, դու եկած ես ինոր ժամըն կը հարցանես » ։ Ինչ որ է, Բիրան գիւղի եկեղեցւոյ անունն ինձ անծանօթ և այլակրօն կարապետիս անհաւատալի, ես մեկնեցայ հետեւեալ գիւղը, որ Կոփայ յԱրեւելակողմն կը գտնուի և գրեթէ Ապահունեաց և Մանազկերտի միջասահմանն կողմը դծին կը պատկանի ։

## ԳՆ. ԺԳ.

### ՄԵՃԻՏԼՈՒԻ ԳԵՂՋԿՈՒՀԻՆ

Ի Մէճիտլու գիւղն տակաւին չ՛ժամանած՝ ճանապարհին դէպ 'ի մեզ կուգայր գիւղի պառաւ տանտիկիններէն մին, որ կ՛ընկերանայր կորովի գեղջկուհի մը, սափորն 'ի յուս. առաջինն կը թուէր լինիլ մեծ մայր վերջնոյն և երկուքն ալ գիւղէն չէին շատ հեռու ու երբ մեզ մօտեցան՝ ես չ՛կրցայ շուտով ճանաչել այդ աբարածներու կամ հողածիններու ազգութիւնն. վասն զի զգեստուց տարազն տարբերութիւն մը

չէր դրած , որ չ՚կարծէի զիրենք քրդուհի ։ Գեղջկուհին արդէն ճանապարհէն չեղած էր պատկառոտ և ամօթխած , աւելի իւր ողորմելի մերկութենէն քան թէ պատկառելոյ պարկեշտութենէն ։ Մեր աղքատ գեղջկուհին թէ լինէր Մարուհի ես տակաւին զայդ գիտեմ ոչ , միայն թէ բաց էին իւր ուսերն և սափորի չուանէն կապտագունած ու կաշի կտրած էր , որ անստվոր չէ մի բան Պօլսոյ ջրհանկրաց կարգին մէջ ․ իսկ պառաւ մամիկին գալով՝ սա ճանապարհէն դուրս չէր չեղած՝ միայն թէ ճերմակ , այլ շատ աղտոտ լաչակաւ մը իւր բերանն կը ծածկէր մինչեւ գթի վերնամաշկն կամ աչքերու լճի ափունքը , ո՛ւր գարուն չէր տիրեր ։ Պառաւն չունէր ոչ մի բեռ յիւր կռնակն , այլ նա արձակ էր ու համարձակ և տեսաւ խումբ մը վառեակներ ․ հոս է ահա հետաքրքիր մի տեսարան թէ այդդերեզմանի մերձաւորն ո՛րպիսի արագութեամբ և վարպետութեամբ բռնեց զվառեակն ուխտաւոր ։ Նախ գոգնոց շարժելով ընտանի ձայնիւ մը ձիւ ձիւ կանչեց , վառեակներն ամենքն մէկէն , իւրեանց սովորութեան համաձայն , շատ մօտիկ եկան , հաւքուեցան շրջապատը մեր մամկին , որ անմիջապէս հանեց գրպանէն ափ մը դարի և անոնց նետեց ․ վառեակներն մինչ գլխիկոր դարին կը քաղէին (գետնէն կ՚առնէին) անոնց միոյն պոչէն յանկարծակի բռնեց և անմիջապէս 'ի գիւղ վերադարձաւ , զոր հեռուանց կը դիտէի

տեսնելոյ համար խեղճ վառեակի վերջի վախ-ճանն ։ Հայուհի օրիորդն արդէն անուշ ջուր բե-րելոյ գնացած և վերադառնալոյ թերեւս մօտ լինէր ։

Գիւղիս առընթեր տեսի մի այլ աղբիւր , յորմէ բազում կանայք և աղջկունք ջուր կը տա-նէին (*) ։ Բզիրն (գիւղի հիւրընկալն) զմեզ հիւ-րընկալեց մի հինաւուրց տունը , ու քիչ մ'ետք երեւցաւ մեր պառաւն , որ վառեակն ճարտա-րօրէն բռնած էր , մինչ այս մինչ այն տեսնուե-ցաւ նաեւ օրիորդն , յայնժամ գիտացի թէ եր-կուքն ևս մեր հիւրընկալ յարկին կը վերաբե-րէին, որոյ տանտիկինն էր պառաւն, իսկ թոռնիկն էր պարկեշտափայլ օրիորդն ․ արդէն ջուրն և գիւղի աղբիւրն միաքէս չէին եղած , քովս նըս-տողին ազդ ըրի՝ որ հարցուց տան մեծ մօր թէ « ահա գիւղի մէջ մաքուր աղբիւր , աղջիկդ (թոռնիկն) է՞ր հեռու խրկած ես ջուր բերել » նա բարձրաձայն առ այս տուաւ պատասխանն « հիւր ունիմ լեզու չ'հասկցող , որդիս , աւելի անուշ ջուր կուզէ , որ հուր չ'կտրի գլխիս և այս վառեկն (վառեակ) , որ իւր ցորեկի ճաշն է , ծախած եմ իւրան (իւրեան) 20 ֆարայի , էն էլ թէ կուտայ թէ չիտար Աստուած գիտէ » ։

---

(*) Ըստ գիւղական սովորութեան , տան համար պէտք ըմպելիք ջուրն կանայք եւ աղջկունք կը բերեն , իսկ կենդանեաց համար եղածն առ հասարակ արական սեռին կը պատկանի ։

Այս պահուս գեղջկուհի օրիորդն սափորն լեցուցած՝ վերադարձաւ յիւր տունն, պաղ ջուր տալ իրիկուան հիւրեկին, որ տան մի անկիւնը թոթռուշացած՝ (հպարտօրէն բազմած) կը ժպտէր ջրաբերին և գոհ կը լինէր։

Սոյն յարկն, որպէս վերև ասացի, հիւրասիրեց և զիս կարապետիս հետ մէկ ժամէն աւելի և ոչ պակաս. ուստի շնորհակալութիւն տանուտեառն և պառաւ տանտիկնոջ, գոհութիւն իւրեանց հացալից սեղանին և կրկին շնորհակալութիւն մեր մամիկին, որ մորթուած վառեակէն չմոռցաւ մեզ ևս արդար բաժին մը հանել։ Ճշմարիտն խօսելով այս պահուս իմ ախորժակն գոցուած էր և կարապետիս բացուած, որ կշտանալ չգիտէր և իրաւունք ունէր, զի հետիոտ էր. իսկ իմ կրած փոփոխութիւնն դարձեալ գաղտնիք մի էր բնականէն ներշնչեալ, որով հացի սեղանէն ետ քաշուեցայ և նստայ լուռ ու մտահոգ. սակայն նորէն քաջ ճանաչեցի, որ ջրաբեր գեղջկուհին այս դարաւոր և հիւրընկալ տան ՆԱԶԼՈՒՆ էր, որ մամի նման կը վառուէր (ամեն հրամանի պատրաստ գըտնուիլ) տան հին հիւրին հանդէպ, որ նորէն լինելով գիշեր մի ևս կենալոյ վրայէր։ Օրն մեզ համար տարաժամ է, մենք խօսիմք նոյնպէս գիւղիս վերայ և մեկնեմք անյապաղ։

Մէճիտլուն, որ Կոփէն 1 1/2 ժամ հեռու է, ունի 85 տուն Հայ բնակիչ, յորս մի քանի տուն

քուրդ են ։ Հայք ունին մի աննշան եկեղեցի և տգիտութեամբ նշանաւոր երկու իրարու հետ անհաշտ քահանայ, որք ժողովրդեան կը կարապետեն , այլ ես չ'գիտեմ 'ի չա՞րն թէ 'ի բարին , որ վերայ չ'համոզուեցայ թէ գաղափար ունեցած լինին . իսկ դպրոց կամ աղէկ է ըսել իւրեանց կոյր մնաց լուսատու ճրագն մարած էր ։ Գիւղիս յԱրեւմտակողմն Ս. Յովհաննէս անուամբ սրբիկ մի կայ , որ վերայ մեծ յոյս դնելն , աւանց գրել և կարդալոյ , չ'գիտեմ յիմարութի՞ւն է թէ իմաստութիւն է ։

ՄԵԿՆՈՒՄՆ

Մէճիտլուէն ելնելով ուղինիս դարձնեմք յԱրեւմուտս , կ'անցնիմք Կոփայ քովէն և Արեւմտեան հարաւային ուղղութեամբ 1 1/4 ժամէն կը հասնիմք հետեւեալ գիւղը ։

ԽՕՆՃԱԼՈՒ . — Գիւղս ունի 150 տուն Հայ, յորս 6–7 տուն բողոքական հայ կը գտնուի , առիթներէ օգուտ քաղելոյ հետամուտ ։ Ունին եկեղեցի և քահանայ , իսկ դպրոցին գալով՝ յիրաւի բաւական յարմար շէնք մը պատրաստ տեսայ , բայց չ'մոռնամ ըսել որ փակեալ էր , և շատ քիչ անգամ կը բացուէր , որպէս Ուղեւորիս պատմեցին , և ո՞ւմ հոգ թէ 60 էն աւելի մանկանց ապագայն ևս նման օրինակ փոփոխութիւնք կրելոյ ենթակայ կամ խաղալիք կը լինի , այսինքն քիչ անգամ կը բացուի և շա՛տ անգամ կը գոցուին ։

Եօճնալուն օրինաւոր նախակրթարանի մը պէտք ունի, որպէս սովերալն հացի. մխիթարութիւն է ըսել որ նիւթական վիճակնին լաւ է, բայց չեմք կրնար չյաւիլ երբ զգացմամբ առհասարակ աղքատ կացութիւն մի ունին:

Սոյն գիւղն թէպէտև ծառաստան չէ. սակայն ունի գեղեցիկ տեսարան. իրեն առջևէն կ'ընթանայ Եփրատեսի օժանդակն կամ մեր յիշած Մուրատ գետն, զոր իրենք «Սեւ» գետ կ'անուանեն, որոյ պայծառ ջուրն շատ տեղեր հանդարտօրէն կ'ընթանայ, և երբ գիւղիս քով կը հասնի, պղտոր գոյն մը կ'առնու, ճիչդ նման տեղւոյ բնակչաց մտքերուն և սրտերուն:

ՇԵՐ-ՎԱՆ-ՇԵԽ. — Ունի 100 տուն, մի եկեղեցի և վարժարանի կոկիկ շէնք մը, դասատուն մը պարզ, այլ օգտակար լինելոյ ճգաթափ: 40-50 ուսանող և երկու քահանայ բարի յատկութեամբք օժտեալ: Գիւղս ունի լաւ տեսարան, այլ անծառաստան, և բլրային լինելով տեղւոյս օդն չարունակ կռուոյ մէջ է և այս պատճառաւ ուղեւորներն շատ անգամ պարտաւորեալ են աչք գոց քալել կամ յայս գիւղ չմտնել. աւելորդ իսկ է ասել թէ բնակիչքն վարժ լինելով համբերող են բնութեան այդ անհանդարտ վիճակին, որուն դէմ բողոք բառնալն հարկ և՞ ուղեւորիս իրաւունքն էր. բայց բնութենէն մեծ դատաւոր մ՞ուր կարող էի տեսնել և մարմնաւոր աչօք ինչպէս հնար՝ երբ

Աստուածախօս Մովսէսի Սինայ լերան վերայ ունեցած զարհուրանքն մեր աչքին կամ մտքին առջեւն է։

Աստ մի հարիւրապետ 100 այրուձիով կը բնակի, 'ի բարեկարգութիւն այս կողմերու, և ըստ ուղիղ խօսելով՝ շատ աչալուրջ են յամենայնի։

Գիւղիս նահապետական տուներէն առաջինն է Ղազար աղայի տուն, ուր 13 այլակրօն հիւրերու և կարապետիս հետ ցորեկուան ճաշերնիս ըրած՝ մեկնեցանք հետեւեալ գիւղը, որ նախորդի յԱրեւմտեան Հարաւն է և անկէ կէս ժամու չափ հազիւ հեռաւոր։

ՀԱՄԶԱ-ՇԵԽ. — Գիւղս նախորդի նման ընդարձակ ղառիվայրի վերայ կը գտնուի, լայնատարած նստուածքով. ունի 150 տուն Հայ բընակիչ, եկեղեցի, քահանայ և դպրոց, ուրախ եմ ըսել որ տեղւոյն բնակիչներն ալ Շերվանշեխեցւոց պէս կարդալ ու գրել կը սիրեն. դասատու մի ունին, որ լաւ կը գոհացնէ ուսանողաց միտքերն, միայն թէ անբաւական է 50–60 մանուկներ նայելոյ. ուսանողաց թուոյն 2/3 մասն կը պակսի ամառ եղանակին։

Աստ կը գտնուին նշանաւոր ձիավարժութիւն ունեցող մի քանի Հայեր, յորս տեսի 90 տարեկան ճերմկած ծերունի մը, հաստակաւ պարթեւական և սրտիւք ազնուական, որուն հետ տեսնուելուս ատեն իւր այդ տարեւորու-

թեան մէջ ունեցած առողջ և զօրաւոր կազմութեան վերայ շատ ուրախ կը լինէր ։

*
* *

Նախորդ գիւղէն ելնելով շարունակեմք ուղինիս դէպ 'ի Հարաւ և երկու ժամէն կարող եմք հասնիլ հետևեալ տեղին ։

ԵՕԹՆՋՈՒՐ. — Սոյն գիւղն կը բաղկանայ 105 բնակութիւններէ. ժողովուրդը մեծագոյն մասամբ բարւոք նիւթականի տէր է. ունին Ս. ԹՈՒԽ ՄԱՆՈՒԿ անուամբ մի եկեղեցի, շինուած կոփածոյ սեւ և գեղեցիկ քարերէ, միայն թէ առաստաղն ցածր է իւր ընդարձակութեան նայելով և այս անշուշտ 60–70 տարի յառաջ, շինող ճարտարապետի ճաշակն է ։ Ունին երկու քահանայ՝ բաւական սիրողք իմաստութեան. Նոյնպէս նախակրթարան մը 40 հատ աշխայժ պատանիներով, դպրոցական կանոնաւոր շէնք կը պակսի, դասատուն աշխատասէր և տոկուն մի անձ է ։ Նախակրթարանիս յատուկ խնամք կը տանին Արժ. Տ. Տաճատ քահանայն և գիւղապետ Հայրապետ աղայն՝ որ ազնիւ և հեզ բնաւորութեան տէր է, իմ շնորհակալութիւնն իւրեան կը յայտնեմ այն հիւրասիրութեան համար, զոր Տեղագիր–Ուղեւորիս ցոյց տուած է իւր նահապետական յարկին տակ, ուր ամեն ատեն արտաքին հիւրեր անպակաս են. ինքն է եկեղեցասէր և միանգամայն ուսումնասէր ։

Գիւղիս հեռաւոր սահմանները կան բաւա-

կան թուով բլուրներ, յորս նշանակելի է Զօր–տաղէ կոչուածն, որ վերայ աւերեալ պանդոկ մի կայ, և որոյ պարսպաց կանոնաւոր քարինքըն, շատ անգամ այլ և այլ տեղերէ կը գան ու կը տանին շինութեանց համար։ Յիշեալ բլրոյ գլուխը կը տեսնուի կիսակործան եկեղեցի մը, գրեթէ 20 քառակուսի մեթր ընդարձակութեամբ, որոյ խորանն համեմատապէս մեծ է. սոյն աւերակի նկատմամբ ականատեսք կը պատմեն թէ « 1880 թուականին նոյն խորանի տակէն փոքրիկ ոսկի խաչ մը գտնուեցաւ քրդու մը ձեռամբ, որմէ Հայերն ծախու առին »։

Եօթնջրոյ Հիւսիսական սահմանին վերայ կայ մի այլ աւերակ աննշան, ուր մի քանի խաչաքարինք տեսանելի են։ Գիւղս իւր անունն առած է Հարաւային Արեւելակողմ գտնուած եօթն աղբիւրներէն, յորոց մին « սուրբ » կ'անուանեն, որոյ մէջ ջերմ և ուրիշ հիւանդութիւնք ունեցողներն կը լուացուին « յառողջութիւն և 'ի բժշկութիւն »։

Տեղէս յԱրեւմտահարաւ մեկնելով $^{3}/_{4}$ ժամէն կը հանիմք հետեւեալ գիւղն։

ԹԵՂՈՒՏ (*). — Ունի 80–90 տուն բնակիչ, որք ունին եկեղեցի, քահանայ և բաւական խնամեալ նախակրթարան մը, որոյ չէնքն խիստ

(*) Թեղուտ անուամբ կայ մի այլ գիւղ Ախլաթ գաւառակի մէջ, որոյ վերայ Տեղագրութեանցս Ա. Մասին մէջ երես 91 խօսուած է։

անյարմար է թէեւ դասատուն լինի յարմարագոյն . տեղւոյս ժողովրդն եկեղեցասիրութեան հետ ունի նաեւ ուսումնասիրութիւն և հիւրասիրութիւն :

Թեղուտայ մէջ նշանաւոր է Մանուկ աղան՝ իշխան և մեծ իւր գիւղին . ինքն է բարձրահասակ և պարթեւադէմ, ունի նահապետական տունք և տեղիք , բարեկից և հացալից սեղան . դուռն բաց է ամեն ճանապարհորդաց համար անխտիր ու թոնիրն վառ և տանտիկին միշտ պատրաստ 'ի թխել « զհացն փրկարար » որպէս կ'անուանեն :

Մանուկ աղան պարզ գրել կարդալ մը հազիւ գիտէ, այլ ունի բնականէն դիւանագիտական հանճար և ընտանեկան մեծ դիրք մը։ Այս անձն գիտես թէ , ծնած է աշխարհիս մակերեւոյթի կամ մարդկային խնդիրներն յուզելոյ , նման Սելովմայ աւազանին , որոյ մէջ ժամանակին անդամալոյծք կը բժշկուէին . առ այս իւրեան քանիցս կրկնեցի թէ Երկրագունդն Նախախնամութեան սահմանադրութեամբ , ինչպէս միշտ կը դառնայ , այսպէս ալ աշխարհի գործերն մարդկային օրինօք յաւէտ փոփոխութեանց ենթակայ են և թէ դաստիարակութեան ՁՕՐՆ մի օր պիտի հաւասարցնէ ընկերական անհաւասարութիւնքն և երջանկացնէ զմարդիկ :

Այս վայրկենիս մի ալեխառն ծերունի՝ որ կը թուէր լինել քահանայացու , հետեւեալ խօս-

քերն ըրաւ « ա՜յ Սաամպօյցի, կուշտն ի՛նչ գի-
տէ անօթիին հուլը, դուք նստած էք մեր Օս-
մանցի թագաւորի քաղաքը ոչ տէրտ ունիք, ոչ
դէրտ, մեր սրտի ցաւերն էթէ դէզ աննէնք դէրտէ
Երկնից ամպերուն կը հանի » ։ Ես թէեւ զինքն
անմխիթար չ՚ձգեցի, սակայն ստոյգ էր որ իւր
կեանքումն մեծամեծ փիշտեր կրած ունէր, որոյ
բորբոքումն զինքն կը մղէր այդ օրինակ խօսքեր
արտաբերելոյ ։ Իմ վերջի մնաս բարեւի պահուն
իւր չորացեալ ձեռքը բռնած՝ զինքն մխիթա-
րեցի ասելով թէ՝ կենաց դժբաղդութեանց վե-
րայ կատարեալ յաղթանակ տանելոյ համար ՀԱ-
ՒԱՏՔ, ԱՇԽԱՏՈՒԹԻՒՆ և ՀԱՄԲԵՐՈՒԹԻՒՆ ու-
նենալը անհրաժեշտ պայմանն է, և թէ աշխար-
հիս մէջ ե՞րբ տեսար դու զվարդ առանց փուշի
և դարձեալ ՎԱՐԴՆ ունենալոյ համար փուշէն
վախնալ պէտք չէ ։ Այս խօսքիս վերայ ծերու-
կըն ժպտելով եւ գոհ եղայ և նպատակիս հա-
սած՝ մեկնեցայ ։

Թեղուտէն՝ այն է Վերին Պուլանըխայ Արե-
մըտեան սահմանի գիւղէն ելնելով շարունակեմք
մեր ընթացքը դէպ 'ի Հարաւ և 3/4 ժամէն կը
հասնիմք Տրղէ–Լէր (գիրօյի գերեզման) ըսուած
տեղը . . . ուրկէ կը մտնեմք 'ի Ներքին Պուլա-
նըխ ։

## ԳԼ. ԺԳ.

### ՆԵՐՔԻՆ ՊՈՒԼԱՆԸԽ

Այսուհետեւ մեր Ուղեւորութիւնն 'ի Ներ-

քին Պուլանըխն է, որ կը գտնուի վերջնոյն Արեւմտեան հարաւակողմն և անոր չափ հորիզոնական դիրք չունի:

Ապահունեաց գաւառի սոյն մասն 10–11 Հայ գիւղեր կը պարունակէ, որոց բնակութեանց միջին թիւն Վերին Պուլանըխի գիւղերու միջին թուոյն կը հաւասարի գրեթէ. մենք խօսիմք կարգաւ իւր կեդրոնական համարուած գիւղէն սկսեալ:

Լիզ. — Սոյն գիւղն շինուած է Վարդ գետոյ առընթեր, 4–5 քարընկէց հեռու դէպ 'ի յԱրեւմուտ, ցածր այլ ընդարձակ բլրոյ մը վերայ. ունի 180–200 տուն բնակիչ մեծագոյն մասամբ լաւ նիւթական վիճակի տէր, որք ունին յանուն Ս. Աստուածածնայ կառուցեալ հնաշէն եկեղեցի մը, դրիւք ողորմելի որպէս և շինութեամբն. կայ երկու քահանայ: Ուրախ եմ ըսել որ տեղական ջանից շնորհիւ կոփածոյ քարերէ վարժարան մի շինուած է, միայարկ, որուն նման գաւառիս մէջ չկայ:

Գիւղիս մէջ Միաց. Ընկ. Նախակրթարան մի ունի, որ կը հոգացուի ծախիւք «Բարեգործական ընկերութեան», որմէ տարեկան 50 ոսկի կը վճարուի Միացեալին:

Լիզ գիւղի մերձ Վարդ գետակի եզերքը կը տեսնուի ամենապատուական տեսարան մը, մանաւանդ շատ հետաքրքրական է տեսնել գիւղի տղայոց ձկնորսութիւնն նոյն գետոյ մէջ, որոյ

ձկունք թէև լինին քիչ և փոքրիկ, այլ շատ համեղ են ։ Գեղացիներէն շատերն ևս պարապոյ ժամերու մէջ ձկնորսութեամբ ժամանակ կ'անցունեն, իրիկուան կամ ցորեկուան համար մասնաւոր ճաշիկ մը պատրաստելոյ. ուղևորի մը համար մեծ հաճոյք է սատ մի քանի ուռեննեաց շուքերու տակ ամառ ատեն հանգչիլն ։

Լիզ իւր մերձակայ սահմանին մէջ ունի, շինութեան համար, ընտիր քարեր, որոնք քանակութեամբ թերթեւ և ծաւալով մեծ են ու միանգամայն դիւրատաշ ։

Աստ գայմագամ կը նստի՝ Մշոյ միւթէսարըֆութեան ներքեւ ։

ԱՊՐԻ. — Լզայ յԱրեւելահիւսիս $1\frac{1}{4}$ ժամ անկէ տարակայ. ունի 75–80 տունք, յորոց կէսըն Հայ է և մնացեալն Քուրդ ։ Հայք ունին անշուք եկեղեցի մը և լաւ քահանայ մը, որոց շընորհիւ գիւղացւոց մանուկներն կը նախակըրթուին գոնէ պարզ ընթերցանութեամբ մը ։

Տեղւոյս այլակրօնքն չեւ անուամբ կը կոչուին թէեւ ամենքն ալ գլուխնին ճերմակ կապած չ'լինին և կարդալ ու գրել չ'գիտնան ։

Սոքա 10–12 տարի յառաջ Կառավարութեան տուրք չ'տալէ զատ, ոմանք իսկ տէրութենէն յատուկ եկամուտներ ունէին, ինչպէս և ժողովուրդէն, այժմ այդ սովորութիւնն վերցըուած՝ կը գտնուին Բարեխնամ Տէրութեան ազդեցութեան ներքեւ ուղղակի ։

Տեղւոյս կարդացուր չեխերէն միոյն տան մէջ օճախ անուանեալ քար մի կայ որպէս թէ «լե-նի գերեզման Մամբրէ հովւոյն», որ Մանեայ այրին մէջ Ս. Գրիգոր Լուսաւորչի մարմին գը-տաւ և բերելով Թորդան աւանը թաղեց ։ Յիշ-եալ գերեզմանի անուամբ թէ Հայք և թէ Քուրդք երդում կ'ընեն և ուխտի կերթան, իբրև սրբոյ մը յարգելի գերեզմանի. ուխտաւորացն ուէրք՝ ինչ որ ալ ըլլին՝ կը պատկանին բարեխրատ կամ կար-դող չեխին ։ Գիւղիս Հիւսիսակողմն քարահանք մի կայ, յորմէ Ջրաղանցքի քարեր կը հանեն շրջակայ գիւղօրայքն ։

*

* *

Նատ ղարմանալի մի բան է տեսնել որ տեղւոյս մերայինք, ոչխարի հանգոյն, բաժնուած են 4 չեխերու վերայ, որոց շնորհիւ երբեմն ար-տաքին նեղչաց դէմն կը պաշտպանուին, և այս աւթիւն, որպէս վերիւ ակնարկեցի, պաշտպան-եալքն ևս տարին 2–3 անգամ տօներուն ՃԷԱՐԷ անուամբ պարգևներ կը տանին իւրեանց տէ-րերուն ։ Քրդականքն քիչ գործ ունին հողին հետ, իսկ Արմենականքն երկրագործութեամբ կ'ապրին, առանց որոյ ապրիլն արդէն չ'գիտեն ։

Ապրիի Արեւելեան Հիւսիսակողմն կայ «Կար-միր վանք» ըսուած աւերակ մը, ուր Հայեր ուխտի կ'երթան, որ կը ճուի լինիլ «Թիլ աւա-նքն» ։ Գիւղիս Հարաւային կողմի աւերակներէն կը հանուին երբեմն խաչաքարինք ։

Այս ժամանած պաշտօն տեղւոյ մեծ Տէխերէն մին զիս հիւրասիրեց և իրարու հետ խօսեցանք իմ զգացմամբ, այլ իրեն լեզուաւ, որ պարսկերենով մասամբ մը խառն լինելով՝ աւելի կը հասկանայի և քիչ կընայի խօսիլ, դա խելօք ծերունի մը յաջորդն էր և իւր նախորդի կտակն պահած, որ ըսած է թէ «երբ ոչխարի մը կաթըն կուտէք՝ ձեզ պարտք լինի զայն պաշտպանել պատառիչ գազանաց դէմն և այս ոչ թէ առաքինութեան համար, այլ աւելի ձեր շահին համար, որ տարիներէ 'ի վեր կը շարունակի և «Նուիրական» մի բան դարձած է, և արդէն ո՞ր ազգի մէջ այդպէս նուիրական դարձած բան մը չյարգուիր». ահա իւր տրամաբան հետեւութիւնն, եթէ կարելի է այսպէս ասել։

ԲԻՕՆՔ. — Այն գիւղն ունի 60 տուն Հայ, 30 տան մօտ ևս Քուրդ, որոց գլխաւորն է Միրզօ անուն ականաւոր Քուրդն, ում մի քանի ժամ հիւր լինելոյ առիթ ունեցայ և քանիցս ինձ կրկնեց առ տեղական Հայ գիւղացիս իւր ունեցած համակրանքն։ Այս Հայք ունին անզարդ, այլ սիրուն եկեղեցի մը կառուցեալ յանուն Ս. Գէորգ զօրավարին . . . ։

Տեղւոյս տգէտ քահանայքն են գլխաւոր պատճառ դպրոցի չգոյութեան, ըստ որում ժողովուրդն նիւթական բարւոք կացութեան հետ ունի նաեւ եռանդ և սէր առ ուսումն և դաստիարակութիւն։

Վերոյիշեալ Քրդապետն , որ գիւղիս գրե-թէ բացարձակ պետ է , ունի հիւրասէր բնաւորութիւն մը և միշտ հրամայելու փափաքն , զոր կը լեցնէ տեղացի հրամայեալներուն վերայ . ունի նաեւ դիւանագիտական տաղանդ մը ։

ԱՏԿՈՆ . — Այս գիւղի Հարաւակողմն , բընակութեանց թիւն է 93 , յորմէ 90 տուն Հայ և 3 տուն Քուրդ են , Հայք ունին ԱՍՏՈՒԱԾԱԾԻՆ անուամբ եկեղեցի մը և երկու քահանայ . նոյնպէս նախակրթարան մը և երիտասարդդաստառ մը՝ զարգացման գոհացուցիչ վիճակի մէջ , որմէ պիտի օգտին անշուշտ տեղւոյս նոր սերունդն. գիւղացիքն մեծագոյն մասամբ ՀԱՑԻ տէր են , միայն թէ 3–4 տարիէ ՚ի վեր 24 տուն Չերքէզ եկած է հոս ։ Չերքէզներն տեղւոյս ամենէն աւելի խոտաւէտ տեղերն գրաւած են , որով այս կողմերու մեղուաջան գիւղացւոց խաղաղութիւնն փոքր ինչ վրդոված ։

ԿՈՂԱԿ . — Գիւղս ունի 90 տուն բնակիչ , յորմէ 40 տուն Հայ և 50 Քուրդ են ։ Հայք կոփածոյ քարէ հին եկեղեցի մ՚ունին յանուն Ս . Աստուածածնայ , կառուցեալ երեք խորանաւ ։ եկեղեցին կը թուի լինիլ լուսաւորչաշէն և դպրոց « Աստուած տայ » ։ Կողակէն 20 վայրկեան հեռու բաւական բարձրութեամբ լեռ մի կայ , զոր տեղացիք կ՚անուանեն կ-էֆնէր (յոյներ) , որ գագաթան վերայ կը գտնուի մի մատուռ , որում կը դիմեն յուխտ Հայոց հետ նաեւ Մահ-

մեռականքն ։ Գիւղս ունի պատուական տեսարան, ընտիր արտօրայք, խոտաւէտ մարգեր և 'ի պակ ասոնց առատաջուր է ։

Խօշկերէ . — Կզայ յԱրեւմտեան կողմն 1 ժամ հեռաւոր . ունի 94 տուն Հայ և մի քանի եւս Քուրդ ։ Հայոց եկեղեցին է ԱՍՏՈՒԱԾԱԾԻՆ անուամբ, շինուած սեւ քարերէ, կառուցման չիք թուական . բայց շատ հին չէ ։ Ունին Նախակրթարան մը, 40 աշակերտով և մի աղնիւ դասատու բաւական զարգացեալ վիճակաւ ։ Տեղւոյս մերայնոց նիւթականն բարւոք է ։ Նահապետական մեծ տունն է գիւղապետ Յովհաննէս աղայի տուն, որուն պարծանքն է տան աւագ զաւակ՝ Մարտիրոս աղայն ։ Շատ մխիթարական և օրինակելի բան է տեսնելով տեղւոյս գիւղական ընկերութիւնն կազմեալ « բարեշաւիղ » անուամբ, որ Նախակրթարանիս 40 ուսանողաց աղքատ մասի դպրոցական պիտոյքն կը մատակարարէ ։

Գիւղիս Նախակրթարանին այցելութիւն տըւածս պահուն անհուն բերկրութեամբ սիրտս լեցուեցաւ, երբ տեսի իւր նոր սերնդեան յուսալից ապագայն և կլորիկ ու մըրիկ մանուկներ, որք հաւաքուած էին պարկեշտ դասատուի մը հսկողութեան ներքեւ, լաիկ ու ճիչիկ ԿԸ ԳԸՐԵԻՆ և ԿԸ ԿԱՐԴԱՅԻՆ, որով մի օր անշուշտ պիտի լինին երջանիկ . . . ։

Գիւղիս առջեւէն կ'անցնի բաւական քա-

նակութեամբ ջուր մը, որ կը գեղեցկացնէ տեղւոյս բնութիւնն. այդ գետակն «բարձր սար» ըսուած լեռնէն կը գայ և երթալով կը խառնուի Եփրատայ Արեւելեան ճիւղին հետ։ Մեր գիւղապետ Ռէս Յովհաննէս աղային իմ շնորհակալութիւնն յայտնելով՝ նոյնպէս գոհութիւն իւր հացալից սեղանին, որ կը գոհացնէ ամեն օր բազմաթիւ երթևեկողք, մանաւանդ տարասեռ ցեղերէ եղողքն, որոց վերջնական փոխարինութիւնն առ տանուտէրն այս է. «Խոտէ մալատա ավակէ» (Աստուած տունդ չէն պահէ). կամ «Խոտէ ըշտա ռազի պըտ» (Աստուած քենէ գոհ լինի). առ այս տանուտէրն կը պատասխանէ. «սէր սէրան, սէր ճավան հատի» (իմ աչաց և իմ գլխին վերայ եկար)։ Այս կողմերը ինչպէս նաև Հայաբնակի այլ գիւղօրայքը, այս օրինակ պարագայից մէջ խօսք կ'ուտան փոխանակ դրամի։ Տեղէս մեկնելով գնամք հետեւեալ գիւղը.

ԱԿՐԱԿ. — Ունի 50-55 տուն խառն բնակիչք, Հայկականքն ունին եկեղեցի և քահանայ, առանց նախակրթարանի կամ ուսման ՍԱՏԱՐԻ։ Գիւղիս Հարաւային կողմէն կ'անցնի Եփրատէս, իսկ Արեւմտեան հիւսիսակողմն Խուլէ-դաղ կոչուած անտառոտ լեռն, որ բաւական քանակութեամբ փայտեր կը մատակարարէ անփայտ Պուլանըխցւոց։ Սոյն լերան վերայ «սուրբ» ըսուած տեղի մի կայ, ուրկէ աղբերակ մը կը բըղ-

խի, որոյ շրջապատի ծառերն չեն կտրեր. վասն զի «....ջէն կը բարկանայ և կտրողն չ'կրնար անփաս մնալ, որպէս օրինակներ տեսնուած է» կ'աւանդեն:

ՇԷԽ-ՎԱԼԻ. — Շատ հեռու չէ Խօշկեւտիէն. ունի 50 տուն բնակիչ, կխօսիլ չափ Քուրդ. Հայք ունին եկեղեցի և քահանայ, իսկ ԴՊՐՈՑ «Աստուած տայ» ու այսպէս Նախանձելի դիրք մը չունին և ոչ իսկ մխիթարական մի կողմ:

ԲՐԴԱՑ-ՇԷՆ: — Բնակութեանց թիւն է 40, մեծագոյն մասամբ Հայ, որ ունին իւրեանց աղօթատեղին և աղօթող քահանայն՝ կրօնական պիտոյից մատակարար, դպրոց ոչ կայ և ոչ իսկ մէկն մը մոքէն կ'անցնի դորա ԿԱՐԵՒՈՐՈՒԹԻՒՆՆ: Տեղւոյս պարագայքն, կարճիւ խօսելով, շատ տխուր են....:

*
* *

Ներքին Պուլանըխէն 'ի Մուշ գնալոյ համար գլխաւորաբար երկու ճանապարհ կայ, շարունակող դէպ 'ի Հարաւ, մին է Պոստաքենտու ուղին, որ Լիզէն 4 ժամ կը տևէ և միւսն Հասան-Կորանի ճանապարհ, որ առաջնոյն յԱրեւելակողմն կը գտնուի:

ՊՈՍՏԱՔԵՆՏ. — 50 տուն, շինուած ընդարձակ բլրոց կողերուն վերայ և կը կազմէ մէջ տեղի սահմանն Մշոյ և Ներքին Պուլանըխի: Ժողովուրդն կը գտնուի անյոյս և անտարբեր վիճակի մէջ. իւրեանց հետ կ'ապրին մի քանի

տուն Բուրդեր ։ Հայք ունին քահանայ մը խիստ վարժ ձի հեծնելոյ և անվարժ ընթերցման մէջ . եկեղեցին քանդած են և հնոյն հիմանց վերայ շինելոյ կ'աշխատին . սակայն երկու տարիէ 'ի վեր պարիսպներն կիսաշէն կը կենայ և խեղճ քահանային մի տնակ ԵԿԵՂԵՑԻ՝ և մի հացի տաշտ ԱԽԱՁԱՆ ըրած՝ կ'աղօթէ և կը մկրտէ զերախայս . դպրոց արդէն անհրաժեշտ է և չունին , թէպէտև իրենք զայն ունենալ կը փափաքին . առ այժմ թող այս լինի մեր մխիթարութիւնն ։ Տեղէս կըկլին դէպ 'ի Հարաւ երկու ժամուան տեւողութեամբ անտառոտ բլուրներ , ընդարձակ ձորեր կտրելով կը հասնիմք Ապըլպուհարայ երկայն և նեղ ձոր , ահարկու և երկիւղալից 'ի բնութենէ . . . ։ Այս կողմերը մի քանի փոքրիկ գիւղեր կան քրդական . սոյն երկայն լեռնահովտոն 3 ժամէն աւելի կը տևէ , որոյ Հարաւային գլուխը համանուն Հայ գիւղն է , յորմէ զիւր անունն առած է ։

ԱՊԸԼՊՈՒՀԱՐ. — Այս գիւղն , որ Մշոյ աշխարհին կը պատկանի , կընայէ նորա լայնածաւալ դաշտի վերայ . ունի 25-30 տուն Հայ , պարզ եկեղեցի մը և պարզագոյն քահանայ մը, դպրոց ունին ոչ , իրենք չատ հիւրասէր են ։

*
* *

Ապըլպուհարայ մերձ է Ցրօնք անուանեալ պատմական գիւղն , ուր կայ 200 տուն զուտ Հայ . ունին եկեղեցի և քահանայ , իսկ դպրո-

ցին գալով, 'ի հարկէ մի օր Աստուած պիտի տայ ռահմ (գութ) ձգելով անկ եղած սիրտերու մէջ, որք անուանապէս մօտ կը գտնուին և իրապէս շատ և շատ հեռու ։

*

* *

Ներքին Պուլանըխէն դէպ 'ի Մուշ տանող սոյն գծի նկարագիրն աւարտած լինելով՝ մեզ համար արդէն կեդրոն ընտրած Լիզ գիւղէն սկսեալ խօսիմք վերոյիշեալ երկու գծերէն Արեւելեանին վերայ համառօտակի ։

Լիզէն մեր ՈՒՂԻՆ շարունակելով դէպ 'ի Մուշ, այս անգամին վերի ճանապարհաւն (զոր ես Արեւելեան գիծ անուանեցի) և ընդարձակ ու սիրուն տեսարաններէ, քիչ լեռներէ և շատ բլուրներէ ու մանաւանդ խոտաւէտ դաշտերէ անցանելով՝ 4 ժամէն կը հասնիմք հետևեալ գիւղը ։

## ԳԼ. ԺԸ.

### ՀԱՍԱՆ-ԿՈՐԱՆ ԵՒ ԻՒՐ ԲՆԱԿԻՉՔՆ

Գիւղս ունի 15–20 տուն Քուրդ, որ ունին ընդարձակ խոտաբեր դաշտօրայք և մարգօրայք, նոյնպէս պատուական տեսարան մը, որոյ արժէքն իրենք ճանաչելոյ չափ չունին դժբաղդաբար մտաւոր զարգացում կամ կարողութիւն ։

Աստ ժամանած պահուս օրն տարաժամեալ էր, փափաք մ'զգացի դարձեալ Յեսուի նման, որ Արեւն շուտով 'ի մար չ'մտնէ՝ մինչև որ ես

վերադառնայի 'ի Լիզ կարապետիս հետ, որոյ փափաքն կարծեմ թէ իմինէս աւելի բուռն էր. Ինչ որ է, որովհետեւ մենք Օեսունի հօգին չունէինք, որպէս զի Արեգակն պահ մը մեզ հնազանդէր, և մենք այս անհնազանդութեան վերայ տրտունջ բառնալոյ բնաւ իրաւունք չունիմք, երբ ինքն (Արեգակն) բնութեան սահմանադրութենէն շեղիլ չէր կրնար, որով և մենք ստիպուեցանք մի գիշեր գիւղիս մէջ կենալ։

Հիւրասիրուեցայ գիւղիս գլխաւորին տունը, ամեն կողմանէ Քուրդեր զիս պաշարեցին, այսու ամենայնիւ սկսայ հետզհետէ հաճոյք զգալ նոցա խօսքերէն՝ զորս կարապետս քաջ և ես նուազ կը հասկնայի. սակայն դարձեալ անուրախ չէի և աւելի անոր համար որ իւրեանց կենաց ՆԿԱՐԱԳԻՐՆ այդ նուազումս կարող էի սերտել և բան մ'օգտիլ. սոքա կը խօսէին Մարական բարբառաւ, որոց պատմութեան մէջ ընդաղօտս կը նշմարուէին հետեւեալ Հայկական բառերու (աղճատեալ) գործածութիւնք, զորս արտաքոյ կարգի ախորժանօք կը դիտէի, ինչպէս սարան (սատանայ), ֆնչէնօ (տնաշէն), կորդ (չ'վարած հող), մորդ (մարդ)։ Արական սեռի անուանց մէջ ունէին հետեւեալ անուանքն, զոր օրինակ Մրօ կամ Մրադ (Մուրատ), Գասօ (Գասպար). իգական սեռի մէջ Զմօ (Զմրուխտ), Մարօ (Մարիամ). Վարդօ (Վարդան), Սրբօ (Սրբուհի)։

Ահա մի կարեւոր պարագայ, որ ցոյց կը

տայ թէ Հայկական և Քրդական կեանքն որչափ պէտք է իմաստաւորել: Աստ սոյն երեկոյ զարմացայ և քաղցր տպաւորութեան մը ներքև անուշ քուն մը քաշեցի ց'առաւօտ: Ասկէ զատ կան նոյնպէս քանի մը Հայ և Քուրդ մասնաւոր գիւղօրայք: Տեղէս մինչև 'ի Մուշ 10 ժամուան ճանապարհ է:

*
* *

Այսչափ բաւ համարելով կրկին վերադառնամք 'ի Լիզ, որմէ շարունակեմք մեր ՈՒՂԵՒՈՐՈՒԹԻՒՆՆ կամ ՈՃԸ և այս անգամին դէպ 'ի Հիւսիսային Արեւմտակողմն՝ 'ի Խնուս գաւառն: Ապահունեաց վիճակը կը պատկանի Մշոյ Միւթէսարըֆի գերիշխանութեան:

## ՄԵԿՆՈՒՄՆ

Լիզ աւանէն մեկնիմք դէպ 'ի Հիւսիս և 4–5 ժամու չափ մեր նախորդ ճանապարհին վերայ (որով եկանք յայս գաւառակն Վերին Պուլանըխէն), յառաջ գնալ հարկ է ու կը հասնիմք Վերին Պուլանըխի Արեւմտեան սահմանը, յորմէ շարունակելով կը գնամք դարձեալ յեզր Եփրատայ, որմէ՝ նման այլ տեղեաց՝ գարնան ժամանակին «տկանաւակաւ», իսկ ամառ եղանակին, որ յորդումն իջած կը լինի արդէն, մէջ մտնելով կ'անցնին ուղեւորքն. ասկէ կէս ժամ հեռու տեղ մը սոյն գետն կը միանայ Արածանիի մի այլ ճիւղին հետ (Խնուսայ գետ):

Այժմ մենք անվնաս անցեր եմք գետի հանդիպոյ կողմն, այլ և ս ջրոց բնական երկիւղէն ազատ՝ կարող եմք ապահովապէս շարունակել մեր ընթացքը մինչև Համզաշեխ և Տերվանշեխ անուանեալ գիւղերու (որոց վերայ խօսուած է արդէն) միջավայրը, ուր Հասնանցի և Ճէպրանցի կոչուած Քուրդ զօրաւոր ցեղերն պարբերաբար իբարու հետ կռուի կը բռնուին և շատ անգամ ամենաչնչին առիթներէ դրդեալ. այս առթիւ տեղական Հայերն բնականաբար կը լինին անհանգիստ։

Ասկէ մէկ ժամու տեւողութեամբ ընդարձակ և տափարակ արտօրայք կտրելով կը ժամանեմք «զեռնակ» բռուած հին բերդի գրեթէ ստորոտը, և յետ այսու կ՛անցանիմք գոտեւոր երկայն լեռներէ, ընդարձակ բլուրներէ և ձորերէ, որք մեծագոյն մասամբ կը կազմեն Ապահունեաց և Խնուսայ մէջ տեղի սահմանն։ Այսպէս մեր ՈՒՂԻՆ դէպ 'ի դար 'ի վեր շարունակելով կը մտնեմք երկայն ձորակ մը, զոր կ՛անուանեն Բուզլու, որոյ մէջ կան ընտիր աղի աղբերակներ։ Սոյն ամենակարեւոր հանքն այս կողմերը շատ առատ է, ուր ջրերն 4–5 քառակուսի մեթր տարածութիւն ունեցող ածուներու մէջ ընդունելով կը լճացնեն, Արեգական տաքութեան ազդեցութեամբ ջրերն չորփանալով մաքուր և ձիւնի նման սպիտակ աղեր կը նստին յատակը, որմէ հանելով կը չեղջեն ու կը դնեն

'ի վաճառ . Հայերն զայն « Խնուսայ աղ » կանուանեն, գաւառին անուամբ ։ Թուղլու Հայաբնակի բազմաթիւ գաւառաց աղ կը մատակարարէ և բազում գիւղացիք աղի ջրերէն ևս կը առնեն 'ի գործածութիւն , իր բնական վիճակաւն ։ Կառավարութեան կողմանէ աստ կը նստին յատուկ պաշտօնեայք հսկել նոյն հանքի վերայ , որ ուղղակի խրեանց տրամադրութեան ներքեւ կը գտնուի և շատ արդիւնաբեր է ։

## ԳԼ. ԺԶ.

### ՀԵՏԱՔՐՔԻՐ ՅԱՅՏՆՈՒԹԻՒՆ ԵՒ ՀԻՆ ԽԱՉԱՔԱՐ ՄԸ

Աղի վաճառատեղւոյն Արեւմտեան Հարաւակողմն , որ բլրային և ձորային է , 5 վայրկենի հեռաւորութեամբ երկու ընդարձակ բլրոց միջավայրը՝ ցամքած աղբիւրի մը քով հին բնակութեանց նշմարանքներ կային , ինձ թուեցաւ լինել վանքի մը տեղի , որոյ վերաբերութեամբ փորձառու Հայ կարապետս հետեւեալ պատմութիւնն ինձ ըրաւ , « 8 տարի յառաջ երբ մէկ օր այս ճանապարհէն 'ի Պուլանըխ կ'երթայի, ճանապարհի այս խնչ աղբիւրի քով (յիշեալ ցամքած աղբիւրն է , զոր ինձ յետոյ ցոյց տուաւ) հանգիստ մ'առնուլ նստայ . հողնութենէս ընկայ 'ի քուն և տեսայ երազիս մէջ մի սուրբ մարդ , որ իւր անունն ինձ չասաց . մարդն ձիւնի պէս ճերմակ մազ մորուքով էր , աչքիս շատ ալեւոր երեւցաւ , որ քչեց եկաւ վրաս և զիս

կը ծեծէր ասելով թէ « ամեն ատեն իմ այս վանքի ճանապարհէն կ'երթաս ու կուգաս , Էր դու չես գար զիս գերեզման մի անգամ տեսնել , որ այս ինչ բլրոյ գլուխն է » . « Ես արթննալուս պէս ձեռքս դողալ սկսաւ վախնալով գնացի անոր բսած տեղը և գտայ նէ-ըշ-ւըը՞ խաչաքար մը , զոր համբուրեցի և տակի հողերէն քիչ մը իմ երկու աչքին վրայ քսելով ճանբայ ընկայ » : Այս ջերմեռանդ Հայու խօսքերն զիս հետաքրքրութեամբ լեցուցին և ուզեցի գիտնալ թէ արդեօք ո՞ւր է այդ քարն , որ վերայ իմ կարապետն զմայլմամբ կը խօսէր և որոյ ոտքի տակի հողն իւր երկու աչաց վերայ քսած էր :

Մարդուն հետ մեր ճանապարհէն շեղեցանք երթալ տեսնելոյ համար այդ նէ-ըշ-ւըը՞ քարը և ցոյց տուած տեղը շատ փնտռեցի . սակայն չկրնալով զքարն գտնել , յոյսերնիս կտրեցինք և մարդուն խօսքը պահ մ'ինձ թուեցաւ չինծու : Քիչ մ'ետքը իմ ջերմեռանդ կարապետն ամօթահար՝ գնաց մերձակայ ձորակը, ուրկէ ձիս պիտի բերէր 'ի մեկնիլ . յանկարծ , նման Քոլոմպոսի Ամերիկան գտնելուն , սաստիկ ուրախութենէ մը բռնուած՝ զիս կոչեց բարձրաձայն թէ « արի՛ գտայ , արի՛ գտայ , ԻՄ սրբոյ քարն կլորեր են այս ձորակի մէջ . շուտ արի՛ , տես ճիշդ համբուրածս քարն է , զոր աղէկ կը ճանաչեմ , որ առաջ իւր բուն տեղն եղած ատեն ոտքի վերայ ԿԱՆԳՈՒՆ կեցած էր և հիմա որ հին տե-

ղին փոխած է, թաւալագլոր եկած ու ընկած է այս տեղ երեսի վերայ »:

Ճշմարտախօս կարապետին այս կոչին վերայ դիմեցի յայն ձորակն՝ գիւղացւոյն անանուն սըրբոյ տապանաքարն տեսնել և արդարև գտանք, և կարապետին հետ բաղում ճգամբ փորի վըրայէն զայն դարձուցինք յիւր կռնկին. ես տեսայ դորա կերպարանքն, զոր զմայլմամբ ինձ կը նկարագրէր երբեմն երազատես գիւղացին:

Յիշեալ քարն ունի $1\frac{1}{2}$ մեթր երկայնութիւն և $\frac{1}{2}$ մեթր լայնութիւն, $\frac{1}{4}$ մեթր խորութեամբ. խաչաքարն կը խօսի ամենահին լեզուաւ մը, հակառակ Տեղագիր-Ուղեւորին թախանձանաց, չուզեց ընաւ զիւր տարիքն յայտնել, թէպէտև եղերաց վերայ ունէր թուական և գիր, զորս ժամանակն անընթեռնելի ըրած էր. երկու ժամէն աւելի վատնեցի զմելիով քերելով և քերթելով զայս տապանաքարի շրջապատի տառերն. սակայն ինձ համար լոյս մը առնուլն անկարելի եղաւ. նկարագրեմ այժմ գէթ իւր դէմքն:

Սոյն ոչ մարմարինէ, այլ ամուր քարին վերայ գեղեցկօրէն քանդակեալ է մի պատկառելի եպիսկոպոսի կերպարանք, խաչն 'ի ձեռին պատարագի զգեստներով՝ չալթալ թագն գլուխը դրած, գլխուն վերայ երկու կողմանէ ջահեր կախուած են. եպիսկոպոսի աջակողմն վայրի սիրուն ոչխար մը կայ, որոյ գառնուկն կաթ

կը ծծէ և մայրն յօժարակամ յոտին կեցած՝ կը լիզէ զանի (զգառնուկն) ։

Տապանաքարի բոլորտիքը գրերու շրջանակէն ներս մի քանի աղաւնիներ փորուած են. քարն անշուշտ մի ամենաճարտար Հայ արհեստաւորի ձեռագործն է, և ով գիտէ որ դարուն պատկանող. բուռն փափաք մի ունէի զայս քարըն փոխադրել, եթէ մօտակայ մի Հայ գիւղ գտնուէր. բայց դժբաղդաբար Հայ բնակութիւններէ շատ հեռու լինելով՝ քարն ևս ծանր ու ճանապարհներն լեռնոտ. այս պատճառաւ քարն կեցաւ հոն, ուր որ էր ։

Աստ կը տեսնուի մի այլ քար մէկ խորանարդ մեթր մեծութեամբ, յատուկ տաշուած, ոյր համար կ'աւանդեն թէ « իտոր տակէն 60–70 տարի յառաջ գանձ հանուած է » ։ Սոյն վերջի քարին վերայ փորուած է երկրագործի խոփն և կը գտնուի մերձ այն վայրին, զոր ես վանուց տեղի կարծելով չէի սխալած ։

Տեղւոյս նկատմամբ՝ Խնուսցի մի Հայ ինձ պատմեց թէ՝ ինքն 14 տարի յառաջ ոսկի մը գտած էր աստ՝ անհաւասար եզերք ունեցող, ոյր երկու երեսներուն վերայ պատկերներ կոխուած և մեծութեամբ ճերմակ մէճիտէն քիչ փոքր, առանց դորա արժէքն գիտնալոյ կը տանի զայն 'ի Խնուս և 4 Օսմ. ոսկւոյ կը վաճառէ ։

*
* *

Թուրշայի ձորէն մեկնելով շարունակեմք մեր ՄԵԹՈՏԸ կամ ՈՃԸ դէպ 'ի Հիւսիս և $1^{1}/_{2}$ ժամուան ճանապարհ ընդարձակ զառիվերներ կտրելով կիջնեմք զառիվայրէ մը և կը ժամանեմք Խնուս գաւառի Արեւելեան ծայրը ։

# ԳԼ. ԺԷ.

## ԽՆՈՒՍ

Սոյն գաւառն երկայն և լայնատարած լեռնահովիտ մի կարելի է համարել և իւր բնական դիրքն յԱրեւելէն յԱրեւմուտ երկայնութեամբ, տարածուած նման գրեթէ Վասպուրականի Հայոց Ձոր գաւառին ։ Իւր երկայնութիւնն է 8–9 ժամ և լայնութիւնն $1-1^{1}/_{2}$ ։

Խնուսայ սահմանն է Արեւելէն Խըզըլթօփէ կոչուած մասնաւոր լեռան, որոյ ծայրի միջավայրը կայ կէօ-կէօլ-դաղ (Խօշապայ Կասր գիւղին մէջ ևս կայ սոյն անուամբ յարգելի տեղ մը, որ վերայ Տեղագրութեանս Բ. մասին մէջ խօսուած է) անուն «ճգնաւորի մը գերեզման», որոյ առընթեր կան մի քանի ուռենիք և մի աղբերակ պատուական ջրով ։ Կիւզէլ պապան ուխտատեղի է թէ Հայոց և թէ Քրդաց. առաջինքն աստ կը դիմեն Վարագայ Խաչի տօնին ։ Այս անծանօթ գերեզմանին համար Հայք կը պնդեն թէ «մերն է», և Քրդերն կը վճռեն թէ «մերն է». և վերջինքն իրաւունք յառաջ կը բերեն ասելով թէ « մենք շատ անգամ յանուն նորա կ'երդնումք,

որպէս երբեմն կ'երդնուին մեր պապերն Նորա գլխոյն վերայ »: Մտուգիւ խօսելով, այս տեղին ում կը պատկանի՝ վաւերական ապացոյց մի չկայ. սակայն ինձ գալով՝ թէ առաջնոյն լինի և թէ վերջնոյն, անօգուտ է այդ մեռեալ ապ-րանաց վերայ խօսիլ և վիճել այդ չափ:

Արեւմուտէն Բիւրակեան լերինք (ղէն կէօլ), որոյ գրեթէ Արեւելեան ստորոտը կը գտնուի Խնուսայ բերդաքաղաք, զոր վերայ 'ի կարգին կը խօսուի: Բիւրակեան լեռներէն կը բղխի Խը-նուսայ գետն, որ գաւառի Արեւմուտէն սկըս-եալ կը գնայ դէպ 'ի յԱրեւելս և 11 ժամու չափ ճանապարհորդելէն յետոյ կը հասնի 'ի Վերին Գուլանըլս, ուր Թեղուտ կոչուած գիւղի Արեւ-մըտեան սահմանին վերայ կը միանայ Արածա-նիի Արեւելեան զօրաւոր ճիւղին հետ: Սոյն գե-տը Խնուս գաւառի մէջ իւր ունեցած ոլորապա-տոյտ ուղղութեան պատճառաւն է թերևս, որ տեղացիք զայն կօտուռ (ծուռ, անուղիղ) կ'ան-ուանեն: Հարաւէն Խամուր (Դամեքայ բերդ) ըն-ուած ձիւնապատ լեառն իւր գօտիովն, որ կը ձգուի Արեւելէն յԱրեւմտահարաւ. Հիւսիսէն Սպիտակ լեառն, որ Բիւրակեան լերանց մէկ բազուկն կը համարուի՝ Արեւմտեան Հիւսիսա-կողմէն:

* * *

Խնուսն օդով, ջրով և հողով արգասաբեր և պտղաւական մի գաւառ է, որ յառաջ կը բե-

րէ առատօրէն ցորեան, արմտեաց մէջ, և կորընկան այլ խոտերու մէջ, ըստ որում խոտ քաղելոյ համար ոստին տեղեր կը պակսին։ Արտօրայքն կ'ոռոգուին աւելի գաւառիս մասնաւոր ջրերէն քան թէ յիշեալ գետէն, զոր եթէ յաջողին արհեստական հնարիւք արտօրէից վերայ հանել, գաւառս կը լինի մի ԴՐԱԽՏԱՎԱՅՐ, որ արդէն ամբողջապէս Հայ տարրերէ կը բաղկանայ. Քուրդերն ունին գաւառին շրջապատը։

*
* *

Խնուս գաւառն 24–25 Հայ գիւղերէ կը բաղկանայ մեր գծած սահմանովս. կան բաւական թւով Քրդաց գիւղակներ ալ, որք ընդհանրապէս 2–3–4–5 բնակութիւններէ կազմուած են, իւրեանց ամենէն բազմամարդ գիւղն հազիւ 20–25 տուն կը պարունակէ։ Խնդիր է այժմ թէ ինչ է պատճառն, որ Քուրդերն 1–2 տնով գիւղ մը կարող են հաստատել, իսկ Հայք 20 տնով չեն համարձակիր տեղ մը գնալ և նոր գիւղ մը կազմել։

*
* *

Գաւառիս Հայոց 24–25 գիւղերն 1350 տուն կը պարունակեն, 15500 բնակչօք։ Գիւղերու գլխաւորներն իւրեանց աշխարհագրական դիրքովս նկարագրելէս և տեղագրելէս յետոյ մնացեալներու դիրքերն և աշխարհագրական ուղղութիւնքն աւելորդ կը համարիմ մի առ մի նըշանակել, մանաւանդ երբ զգալի տարբերու-

թիւն չտեսնուի իրենց մէջ և գիւղն չլինի անկանաւոր :

## ԳԼ. ԺԲ.

Քարաչօղան. — Ունի 150 տուն՝ բաժնուած 3 թաղերու, պատուական տեսարանաւ, կենսատու օդով և առատ ջրով: Նիւթական վիճակնին շատ լաւ է. ունին յանուն Ս. Յակոբայ կառուցեալ եկեղեցի մը՝ շինուած քարուկիր, 6 սիւներու վերայ և 3 խորանաւ : Սոյն եկեղեցին գաւառիս մէջ նմանը չունի, որոյ տանիքին վերայ երկու գերաններու մէջ տեղը կախած են Տփղիսէն բերուած երկու հատ բաւական մեծ զանգակներ, որք երեկոյ առաւօտ զգիւղացիս կը կոչեն յաղօթս, մանաւանդ տօնախմբութեան օրերը. կայ երկու քահանայ՝ մտային ողորմելի կարողութեանց տէր և մէկ նախակրթարան, շէնքով և պարագայիւք շատ կանոնաւոր : Ուսանողաց միջին թիւն ամառն ու ձմեռը 50, որք են խիստ աշխոյժ և կորովի. միայն թէ ցաւալի կէտն հոս է, որ այդչափ ուսանողք մի դասատուի յանձնուած են, որ միանգամայն կառավարչութիւն ընելոյ ևս դատապարտեալ է :

Քարաչօղանի Հայոց մէջ կը գտնուին այնպիսի անհատներ, որք ձայն ունին Խնուսայ դատարանին մէջ և մեծ ազդեցութիւն գաւառին վերայ : Տեղւոյս գիւղացիքն սովորութիւն չունին իրենց ննջեցելոց տապանաքարինքն օ-

ծել տալոյ, այլ քարին կիսակլոր ձև մը կը տան և կը նմանցնեն ըղտու և աւելի յաճախ ձիու՝ հանդերձ թամբովն, որ նշան է մեռնողի ձիավարժութեան և քաջասրտութեան ։

* * *

Գիւղիս մէջ մի գիշեր 'ի ժամ 4ին տեղի ունեցած փոքրիկ դէպքն արժան կը համարիմ աստ նշանակել և ուշիմ ընթերցողին ցոյց տալ երկրի մի հետաքրքրաշարժ սովորութիւնն ։

Մինչ ամեն ոք 'ի քուն մտնելոյ վերայ էր, և կալպաններէն (խարմանճը) ոմանք դէմքերնին դարձուցած ընդդէմ նորածին լուսնոյ կերդէին մի երգ, յանկարծ գիւղիս Հիւսիսակողմն Սայլւոր անուն Հայ գիւղի ոչխարաց վերայ գողեր յարձակած էին, մինչ այս և մինչ այն տեսնուեցաւ որ մի կարճահասակ ծերունի անուանեալն Պղտօ (Պաղտասար), կուրծք լայն, բայց և մազոտ, գլուխն գունտ, ճակատն դուրս ընկած, իւր մէկ թևին տակը խուրձ մը զէնք և միւս ձեռքը բռնած մի ճերմակ զամբիկ 'ի գիւղս մըտաւ հաւարով (աղմկաւ), զամբիկն աչքի մէջ ընդունած գնտակի հարուածէն, նման զգայուն մարդոյ, արտասուք կը թափէր և գիտես թէ բանականի զգացմունք եկած էին այդ անլեզու կենդանույն վերայ, որ ետևի ոտքէն ևս սուրէ հարուածուելով՝ արիւն կը հոսէր յերկիր աղբիւրի նման ։ Մեր Պղտօյի ետևէն հասաւ մի երիտասարդ՝ իւր հետ ունենալով երկու

բարձրահասակ գողեր , որք 'ի շնորհս կառավարութեան տեղ ։ գտնուող երկու պաշտօնէից տարուեցան գիշերանց 'ի բերդաքաղաքն , ուր չկլթայի զարնուեցան . դատաւորի հարցման վերայ՝ բռնողներն պարզապէս կառավարութեան պատմած էին թէ « սոքա յարձակեցան մեր հօտին վերայ և մենք մեր կենաց վերջի վտանգովն զիրենք բռնեցինք ու 4 էն երկուքն յաջողեցան փախչիլ . տեղւոյ դայմագամն զիւր պարտք կը կատարէ և դէպքն այսպէս կը վերջանայ ։ Մի ամիսէն եաքը գաւառիս մէջ կրկին ինձ պատահեցաւ Սայլուր գիւղի մեր քաջասիրտ Պղտօն , որ իւր յիշեալ զամբիկ հեծած՝ կերթար 'ի Խնուս ։ Բայց այս անգամին ձին միականի դարձած էր ամիս մը յառաջ ընդունած հարուածէն ։ Բնական էր որ Պղտօյին հարցանէի թէ ո՞ւր կերթաս , մանաւանդ որ իւրեան հետ արդէն կանխաւ ծանօթացած էի և թէ մի և նոյն կողմն կը ճանապարհորդէինք 'ի միասին . ահա իւր պատասխանն՝ զոր տուաւ մի շատ վեհանձն զգացմամբ . « Կերթամ —ֆ անելու մեր ոչխարաց վերայ յարձակող և զիմ անմնման ձին վիրաւորող գողերուն և զիրենք բանտէն դուրս հանելու . . . . ։ »

ԲՈ-ՎԱՆ-ՏՈՒՔ . — Սոյն գիւղն Քարաչօպանի յԱրեւմտակողմն է և անկէ կէս ժամու չափ հեռաւոր . իւր բնական վիճակուն զնախորդն կը գերազանցէ . Նիւթականն գրեթէ անոր հա-

ւասար ։ Ունի 90 տուն բնակիչ, Ս. ԳԷՈՐԳ անուամբ հնաշէն եկեղեցի մը, երկու քահանայ և մէկ Նախակրթարան, Միացեալ Ընկերութեան պատկանող ։ Նախակրթարանիս ծախքն տեղացիք կը հոգան, տեղացիք չինած են կանոնաւոր վարժարան մը և պէտք եղած դրասեղաններն. իսկ դպրոցական պիտոյքն կը հոգայ Ընկերութիւնն, որոյ ընդհանուր տեսչի ուղղութեան ենթարկեալ է Նախակրթարանն, ուր 55–60 ուսանողներ կ'աշակերտին, և ամառ ատեն չեն պակսիր, որ ուրախառիթ պարագայ մի է, զոր չ'տեսի դժբաղդաբար այլ գիւղերու մէջ ։ Գիւղիս Նախակրթարանն 4 տարիէ 'ի վեր ունէր տեղացի երկու ուսուցիչք՝ Խորեն Մկրտիչեան և Մկրտիչ Մուրատեան, որք էին ազնիւ և առաքինի, բառին բացարձակ նշանակութեամբ, լի ազգային զգացումներով, հոգիք անձնանուէրք և հաւատարիմք իւրեանց սուրբ կոչման, զոր կը սիրէին ջերմապէս. սոքա յաջողած էին ամառ եղանակին աշակերտաց թիւն աննուազ պահել ձմեռուան թիւէն, ասոնց շնորհիւ սուղ ժամանակի մէջ տեղւոյս Նոր սերունդն մեծամեծ յոյսերով բեռնաւորիլ սկսան. սակայն քանի՜ տխուր է ինձ յիշել աստ թէ անցեալ տարի այդ երկու երիտասարդներն մէկ շաբթուան մէջ փոխուեցան առ Աստուած, զոր շատ կը սիրէին և աշակերտաց ևս սիրել կը տային ։ Սոյն տողերն աստ յիշեցի Ի ՅԱՒԷՐԺ ՅԻՇԱՏԱԿ այդ երկու

դաստիարակաց , որք իրարու հետ այնպէս էին որպէս երկու հարազատ եղբարք , և արդէն Ս. Կարապետի վանուց մէջ , (Խրիմեանի վանահայրութեան օրովը) մի և նոյն դրասեղանին վերայ դաստիարակուած էին . Նախախնամութիւնն ալ գիտես թէ չուզեց՝ որ սոքա իրարմէ բաժանեալ մնան , ուստի 'ի միասին կոչեց առ ինքն զանոնք , որոց յիշատակն ՕՐՀՆՈՒԹԵԱՄԲ եղիցի յաւիտեան :

*
* *

Քո-վան-տուքէն տակաւին չմեկնած՝ կարժէ որ գրեմք իւր մերձակայ տեղիքն , որք թէ օգտակար և թէ քիչ հետաքրքրական չեն :

Գիւղիս Հարաւակողմն՝ իւր սահմանին մէջ կէս ժամու հեռաւորութեամբ փոքր ձորակի մը միջավայրը կայ ջրաղացքի և ձիթահանի համար ընտիր քարի հանք մը, որոյ շրջապատը կան պատուական ջրոց աղբերակներ , զորս կ'անուանեն « սպիտակ և խորունկ » աղբիւրներ , տեղւոյս վերինակողմն գտնուող բլրակին վերայ ծառ մի կայ հինաւուրց , զոր կ'անուանեն « Ս. ծառ » , որոյ բոլորտիքը կը տեսնուին մորենիք և մասուրենիք . վերջնոյ պտուղն կարմիր է և ուտելի կլոր , կը հասուննան աշնան վերջի ամսուան մէջ, որք գիւղացի մանուկներու համար սիրելի պարգեւներ են բնութենէն տրուած :

Յիշեալ քարահանքի ձորոյ ձախակողմն 3-4 քարընկէց հեռաւորութեամբ բլրակ մի կայ ,

զոր տեղացիք «կարմիր կատայ»(*) կ'անուանեն, ոյր վերայ աւերակի մը հետքեր նշմարելի են։ Սորա վերի կողման ճանապարհի աջակողմն կը տեսնուի ձորակ մը անուանեալ «Խօճուղ ձոր», որոյ Արեւմտակողմն կը գտնուի լեռնակ մի «Գիտուրա» անուն և յԱրեւելակողմն լճակ մի «մեծ կէօլ» կոչուած. սորա վերայ կան այլ ընդ այլոյ աւանդութիւնք, յորոց մին է թէ «մեծ կէօլոյ մէջ հրեղէն ձիեր կը գտնուին, որ ամեն մարդոյ չեն երևիր». լճակիս յԱրեւմտակողմն, փոքըր ինչ տարակոյ գտնուող աղային հանքն ասկէ 10 տարի յառաջ Հայոց կը պատկանէր, իսկ այժմ անցած է կառավարութեան, որ անդ շինած է փոքրիկ շէնք մը և պաշտօնէից ձեռամբ աղերն արտադրելով կը վաճառուին Նախնի տէրերուն և այլոց։

Քո-վան-տուք գիւղի Հիւսիսակողման սահմանին վերայ կը նշմարուի աւերակ մը վերաբերեալ Հայոց և միանգամայն Քրդաց, որք զայն կ'անուանեն «Թալալոց», ուր կայ ջուր և մի քանի ծառեր. սոյն վայրն ուխտատեղի է անխտիր երկու ազգաց, որոց մանր տղայքն, երբ ճղային հիւանդութենէն բռնուած լինին, կը բերեն, տեղւոյս ջրովն կը լուանան և խանաջիւղով

(*) Հայ գիւղացիք առ հասարակ «կատայ» կ'անուանեն այն խաչաձեւ շինուած հացապլիթն, որոյ խմորն բաղարջի խմորէն է կամ դարձեալ իւղով շաղխեալ։

ըսուած աղբերակէն եւ ջուր կը խմցունեն հիւանդին(*) ։ Թալալոցիս շրջապատը շատ են պըտղաբեր արտօրայք և խոտաւէտ մարգեր · այս կողմն է Կուրտմահմուտ անուանեալ գիւղն, որ մի մասի աւերակներէն երբեմն աղճապակիներ դուրս եկած են · աստ կը տեսնուին Հայոց և Քրդաց պատկանող մի քանի անյիշատակ գերեզմաններ ։

Տեղւոյս Հարաւակողմն 10 վայրկեան հեռաւոր կայ «Բոկ-մահմուտ անուն մի գիւղակ, ուր դարձեալ կը տեսանուին Հայկական ննջեցելոց տապանաքարինք . . . ։

## ԳԼ. ԺԹ.

### ԽՆՈՒՍ ԲԵՐԴԱՔԱՂԱՔ

Այս հին քաղաքն կը գտնուի յԱրեւմտակողմն գաւառիս, որ նորա անուամբ կոչուած լինիլ կը թուի և շինուած է մի ընդարձակ լեռնաձորակի մէջ ու կրնայ համարուիլ Բիւրակեան լերանց Արեւելեան ստորոտն ։ Ջորի մէջ տեղէն կանցնի Արածանին՝ բաւական մեծ քա-

(*) Հիւանդ մը, երբ ճղային տկարութենէ մը բըռնուելով կիյնայ եւ բերանն եւս սկսի փրփրել, երեմն եւ մանաւանդ շրթներն կապոյտ գոյն մի առնուլ, Հայոց գիւղական բացատրութեամբ «թալցնել» կըսեն, հիւանդն կանուանեն «թալցնող» եւ բժշկութեան նոյն օրինակ տեղին եւս «Թալալոց», որոյ բացատրութիւնն այս է, եւ յետ այսու կրկնելն աւելորդ ։

նակութեամբ, որ Բիւրակեան լեռներէն բըղխելով յԱրեւմուտէն յԱրեւելահարաւ կը ճանապարհորդէ և զբերդաքաղաքն Հարաւային և Հիւսիսային՝ երկու մեծ մասերու կը բաժնէ, որոնք զօրաւոր կամուրջով մ'իրարու հետ կըցուած են : Բնակիչներն իւրեանց պարապոյ ժամերուն սոյն գետէն պատուական ձկունք կորսան, և երբեմն իրարու կը խրկեն ընծայ :

Խնուս բերդաքաղաքն, որպէս խօսուեցաւ, մեծագոյն մասամբ սահմանեալ է բնական լեռներէ, որոց մէջ եղած խոռոչներն այնչափ ընդարձակ են, որ գրեթէ փոքրիկ անձաւներ են, յորս կը բնակին աղքատ գնչուներ՝ իւրեանց ընտանեօք հանդերձ : Տեղւոյս օդն բարեխառն և ջուրն շատ ընտիր է. Ուղեւորիս աչաց հանդէպ ամեն կողմը հետաքրքիր տեսարաններ անպակաս էին, որոց մէջ են զբնակութիւնս շրջապատող երկու լեռնագագաթունք, զորս բնութիւնն պատրաստած է և ոչ թէ մարդըն, որոյ կարողութենէն բացարձակապէս վեր է մի այդպիսի բան յօրինել :

Քաղաքիս բնակութեանց թիւն այժմ հազիւ 300 ի կը հասնի, յորոց 180 Հայ և մնացեալ 120 տուն Մահմետական են : Տուներն ընդհանրապէս քարաշէն կընեն, վասն զի ամէն կողմը շինութեան համար յարմարագոյն քարեր լի են՝ թխագոյն, դիւրատաշ և հա-

մեմատաբար թեթեւ զանգուածով:

Հայք ունին յանուն Ս. Աստուածածնայ հին եկեղեցի մը, կառուցեալ պարզ ճաշակաւ և երկու քահանայ ու մի նախակրթարան, ուր 100 մանուկներ կ'ուսանին անորոշ ուղղութեան մը ներքև, այլ գովելի ձիրքերով:

Մահմետական դրացիներն ևս ունին մի րիւշտիյէ (ուսումնարան) նոր շինուած՝ հնամիտ դաստատուով մը, որոյ վերաբերութեամբ ինձ պատմեցին թէ «իւր ուղղութիւնն ներկայ ժամանակիս չ'պատասխաներ»: Նոյնպէս ունին մի մզկիթ հին ժամանակէն մնացած:

*

* *

Ժողովուրդն առ հասարակ երկրագործ և վաճառական է (մասնաւոր). ունին մի քանի աննշան կրպակներ երկու ազգաց վերաբերեալ. բոլոր առևտուրնին Կարնոյ հետ է, որ տեղէս $2^1/_2$–3 օրուան ճանապարհաւ հեռու կը գտնուի դէպ 'ի յԱրեւմտահիւսիս: Երբեմն քաղաք և այժմ գիւղաքաղաքէս . . . փոքր ինչ հեռու հանքային ջուր մի կայ խիստ դառնահամ:

Խնուս Գայմագամութիւն է ընդ գերիշխանութեամբ Կարնոյ կուսակալութեան. ունի հեռագրաթել: Գաւառիս Փոխ-Առաջնորդն աստ կը նստի Կարնոյ Առաջնորդի իրաւասութեան տակ:

# ԳԼ. Ի.

## ՍՈՒՐԲ ԿԱՐԱՊԵՏԻ ԳՄԲԵԹԱՒՈՐ ՎԱՆՔ

Խնուս բերդաքաղաքի յԱրեւելահարաւ կէս ժամուան հեռաւորութեամբ կայ Պժնկերտ(*) անուամբ գիւղակ մը, ուր 8–10 տուն Հայեր տակաւին մնացած են . . . :

Գիւղակիս մերձ յԱրեւելակողմն 5 վայրկենի տարակայութեամբ ընտիր և պատուական տեսարան ունեցող բլրոյ մը վերայ կայ հնաշէն, այլ հաստահիմն վանք մի գմբեթաւոր՝ կառուցեալ յանուն Ս. Կարապետի, ուր երբեմն այցելութեան կը գան հեռու տեղերէ, և ես չգտի վանուցս մէջ ոչ գրաւոր և ոչ չնչաւոր մի բան, միայն թէ անցելոյն մէջ ունեցած ընդարձակ շինուածոյ հետքերն զինքը կը շրջապատեն ներկայիս մէջ . . . : Ըստ աւանդութեան՝ « վանուցս շրջապատը ժամանակին քաղաք եղած է » . արդարև ոչ ոք կրնայ տարակուսիլ երբ մի անգամ տեղւոյս հանդամանքներն ուշով դիտէ :

Այս տեղի Ս. Կարապետն փայտեայ փոքրիկ դուռնէ մ'ի զատ ուրիշ բան մի չունի, որ յիշեալ գիւղի 8–10 տուն Հայոց հետ Տէր Յովսէփ ծերունի, այլ կրակոտ քահանայի (**) պահ-

(*) Սոյն անուամբ երկու գիւղակներ ալ Հայոց Ձորոյ մէջ կան, որոց վերայ արդէն խօսուած է ՏԵՂԱԳՐՈՒԹԵԱՆՍ Ա. Մասին (երես 179–180) :

(**) Տէր քէշիշ մականուանեալ, որ մի քանի ամիս յառաջ վախճանեցաւ :

պանութեան տակն կը գտնուէր, որում երբ այցելութիւն տալոյ պէտք զգացի, ինձ ջերմ փափաք յայտնեց վանուցս վերապայծառութեան մասին, 'ի շնորհս հանգանակութեան մը, զոր բրած և քանի մը սենեակներու հիմունք դրած էր 2 կանգուն բարձրութեամբ, որ բարձի թողի վիճակի մէջ կը կենայր:

Պժնկերտի ալեւորներէն տարեւորագոյնն ինձ պատմեց ասելով թէ՝ «մեր վանքն ասկէ 50–60 տարի յառաջ հողային բազմաթիւ կալուածներ ունէր, զորս այլ և այլ անձինք իւրացուցին օգուտ քաղելով վանուցս անտիրութենէն»: Սոյն դառն ճշմարտութիւնն Հայաբնակ գաւառաց ուրիշ բազմաթիւ վանքերու ևս կըրնայ պատկանիլ:

Աւելորդ իսկ է ասել թէ դպրոց և անոր գաղափարն անծանօթ են տեղւոյս մերայնոցն, որք այդ մասին մի խօսք չ'ասացին Ուղեւորիս, և ես ուրիշ բան մը չէի կրնար ընել յայս պահուն, բայց եթէ յուսադրել և մխիթարել զիրենք իւրեանց տառապանաց մէջ, զորս կը կըրեն տգիտութեան երեսէն, որոյ մահացու ապտակն է գիւղացի մանկան կլորիկ բերնին մէջ Ա և Բ դնելով իրեն ԼՈՅՍ տալն:

Աստի վերադառնամք դարձեալ 'ի Խնուսայ բերդաքաղաքն, որմէ մեկնած՝ ՈՃԵՐՆԻՍ շարունակեմք և ուղղինիս դարձնեմք դէպ 'ի յԱրեւել, գաւառիս միացեալ գիւղօրէից վերայ դը-

ռելոյ ։ Մեր սոյն ճանապարհէն վերայ, երկու կողմէն բնութիւնն հետաքրքիր և զարմանալի չարքերով բարձր և ահագին պարիսպներ կազմած է լեռնակարկառներէ, որոց մէջ տեղերը խոտաւէտ արտօրայք և դաշտօրայք են. այսպէս 2½ ժամէն կը հասնիմք 'ի Զէվիրմէ, որ գաւառիս կարևորագոյն գիւղերէն մին է ։

ԶԷՎԻՐՄԷ. — Կը գտնուի տափարակ դաշտի վերայ, ամեն կողմանէ շրջապատեալ է մարգագետիններէ և ընտիր արտերէ. ունի շրջանակաձև նստուածք մը, որոյ առջևէն կ'անցնի Նուղը ըսուած գետոյ մի զօրաւոր ճիւղն, որ այլ և այլ մասնաւոր ջուրց ամբողջութիւնն է. օդը բարեխառն և ջուրն ոչ այնչափ գովելի, հողըն արգասաւոր ։ Կան բաւական թուով ուռենիք, որք շուք կը տան ամառ եղանակի կէս օրուան ատեն շուք չունեցող Հայ բնակչաց, որ 110–115 տուներէ կը բաղկանան, յորոց 10 տուն բողոքական են ։ Հայք ունին ԱՍՏՈՒԱԾԱԾԻՆ անուն Տ-ր և Հյն եկեղեցի մը, գիւղէն 3–4 քարընկէց հեռու, կառուցեալ կոփածոյ սեւ քարերէ, անզարդ և բոլորովին թափուր. եկեղեցին չունի թուական՝ իւր տարեւորութիւնն յիշեցնող. քահանայի տեղւոյ կը ծառայէ մի անգիր տիրացու կամ լաւ ևս է ըսել մի ողորմելի արարած, որոյ լեզուն շատ սահուն է մամուտ չարականին վերայ, զոր 'ի ձեռին ունի միշտ ։

Աստ կայ, նման Քուվանտուքին, նախակըր-

թարան մը Միացեալ Ընկերութեան պատկանող, որ կը հոգացուի դարձեալ (որպէս Քուվանտուքինն) տեղական ծախուք, բաց 'ի դըպրոցական պիտոյքէ, զոր կը մատակարարէ Ընկերութիւնն, երբ ջարբեհաճէ իւր ընդհանուր տեսուչ: 40 էն աւելի աշակերտներ կ'ուսանին, այլ ցաւ է ըսել որ անյարմար յարկի մը ներքև:

Տեղւոյս ուսուցիչն է Պ. Գրիգոր Տօնաւեաեան, տեղացի մի այնիւ երիտասարդ, դասընկեր Քուվանտուքի լուսահոգի դաստատուաց, անձնանուէր, զարգացեալ և որ աւելի լաւն է՝ օժտեալ ազգային ընտիր բարեմասնութեամբք. սա կը համարուի տեղւոյս առաջին լուսաւորիչ իւր թղթոյն և գրչոյն, և որոյ շուրջը շատ անգամ ամէն հասակէ ուսանողք կը գտնուին, որ քիչ մխիթարական չէ և կը փափաքիմ տեսնել Հայաբնակի ամէն գիւղերու մէջ ևս: Ժողովըրդեան նիւթական կացութիւնն ընդհանրապէս լաւ է. սակայն սակաւին ժամանակէն ներշընչութիւն մ'ընդունած չ'ըլլալով յանդէտս կը սիրեն զխաւարն առաւել քան զլոյս և այս բանն տեղւոյս նոր սերնդեան . . . համար կընայ ուղղակի դժբաղդութիւն մը համարուիլ:

Գիւղիս Հայ բողոքականք, արդարութիւն է խոստովանիլ, իւրեանց թուոյն նուազութեան հակառակ, ունին կանոնաւոր ժողովարան և դպրոց հանդերձ յարմար շէնքովն. ինձ պատմեցին թէ՝ սոքա շարունակ հետամուտ են տե-

ղական բնակչաց տգիտութենէն, որով և անմխիթարութենէն օգուտ քաղել:

ԽՈՋԼՈՒ. — Սոյն գիւղն նախորդէն 2 ժամ հեռու է և կը գտնուի նորա Արեւմտեան Հիւսիսակողմն ու շինուած . . . : Ունի 85 տուն Լուսաւորչական և 3–4 տուն բողոքական Հայ: վերջնոյ պատուիրակութեան յանձնուած է առաջնոյ նոր սերունդն: Տեղւոյս բնակչաց նիւթական վիճակն բարւոք է, այլ մեղք որ սոյն մխիթարական կողմէն օգուտ քաղող անհատներ կը պակսին. մանաւանդ երբ ժողովուրդն տրամադիր է զոհողութիւնք ընել կրթական գործին համար, Տեղագիր–Ուղեւորն կը պարտաւորի դարձեալ կրկնել այս դառն ճշմարտութիւն թէ՝ «աստ ես գործ կայ գործող չկայ»:

*

* *

Խոզլուայ մէջէն կ'անցնէին 'ի Բաղէշ, 'ի Սղերդ և 'ի Վան երթևեկող կարաւանքն և զօրախմբեր . . . : Գիւղիս առընթեր առուակի մը եզերքը ուռենւոյ շուքին տակ նստած էի երկու նորահաս գիւղացւոց հետ, յորոց մին տեղացի էր և միւսն Զէվիրմէցի. և մեր խնդիրն էր դըպրոցի վերայ, ժամու վերայ, տէրտէրի վերայ, պատարագի վերայ, տիրացուի վերայ, թուղթի վերայ, գրչի վերայ և յետոյ ԳՐԻ վերայ ու վերջապէս ամենուս խօսքերն թէ՛ լինէին Աստուածային և թէ՛ լինէին մարդկային իմաստութեան վերայ, նոքա կը ցանկային և ագահօրէն կը ցան-

կային լսել ինձ, որ ոչ թէ միայն ձանձրոյթ մի չէի զգայր, այլ նաև շատ ուրախ կը լինէի՝ որ հետաքրքիր Հայ գիւղացւոց հետ էր իմ խօսքն։

Քարաքէօփրիւ. — Ունի 65 տուն Հայք, յորս կը տեսնուին նաև մի քանի եկովլի Քրդաց ընակութիւնք։ Հայք ունին ողորմելի եկեղեցւոյ հետ խղճալի քահանայ մը. ուրախ եմ ասել որ սոքա դպրոց չեն մոռացած և ունին ազնիւ և բաւական զարգացեալ ուսուցիչ մը, որ իւր կենաց օրինակաւն 35 էն աւելի ուսանողներ կը դաստիարակէ և յաջողած է նոյնպէս գիւղացիս վառ պահել դպրոցասիրութեան մէջ և համոզել զիրենք դպրոցական շէնքի մը համար, որ դժբաղդաբար կը պակսի և ես ցաւօք տեսի աշակերտաց բնակավայրն, որոյ բնակիչներն էին նոյնպէս ուսանողաց հայրերու երկրագործ եզինքըն և այլ կենդանիք։

Սոյն գիւղն, որ նման նախորդաց, նիւթապէս ունի իւր մխիթարական կողմն, արտաքին դժբաղդութիւններէ կիսով չափ զերծ է, թերեւս 'ի շնորհս իւրեանց ուսումնասիրութեան և ջերմեռանդութեան. վասն զի ուր որ գիտութեան ԼՈՅՍ մուտ գտնէ, տգիտութեան խաւարն անկէ կը հալածուի և այս շատ բնական է։

Քարաքէօփրիւի տեսարանն խիստ զուարճալի է օդովն և մանաւանդ խմելոյ մաքուր ջրերովն, որոց տեսակէն քիչ տեղ կը գտնուի։ Գիւղս տափարակ դաշտի վերայ կը գտնուի։

ՀԱՐԱՄԻԿ . — Շինուած է ընդարձակ բըլրոյ մը կողից վերայ . ունի 80 տուն Հայ բնակութիւնք , որոց մէջ 13 տուն ևս բողոքական Հայեր կան : Մերայինքն ունին եկեղեցի մը և ամենաճարտար քահանայ մը , զոր ջանադիր գտայ բանալ տալոյ նախակրթարան մը , որուն այնպէս պէտք ունին , որպէս կաղն՝ ոտից և կոյրն՝ լուսատու աչաց : Երբ սոտ մի այլակրօն կարապետի հետ լեռնակարկառի չուքին տակը նստեցանք 'ի հանգիստ , բազում գիւղացիք զմեզ շրջապատեցին 'ի լսել բան մի , բայց ես այս պահուս բարոյական ցաւէ մը բռնուած կը տանջուէի . ուստի խօսք տուի ընկերիս և ես լռութեամբ սրտիս ցաւն անցուցի, չեմ յիշեր թէ ինչ տեսակ զգացման տակ ելանք 'ի ճանապարհ շարունակել վերստին մեր ՈՒՂԻՆ :

ԵԼՓԻՍ . — Բնակութեանց թիւն է 50 , ունին եկեղեցի և քահանայ , դպրոց « Աստուած տայ » և այս առթիւ 30 'ի մօտ դպրոցականաց վիճակն շատ արգահատելի է , առանց նոյն իսկ արգահատող մ'ունենալոյ :

Խալէլ-Չավուշ . — Ունի 50 տուն Հայ բնակիչ , որք ունին « Ս. Սարգիս զօրավար » անուն տկար եկեղեցի մը , նմանօրինակ քահանայ և դպրոց , որոյ մէջ աշակերտողքն աւելի արեգակնային լոյս կը տեսնեն քան թէ մտային : Ժողովուրդն շատ չքաւոր է և որ աւելի ցաւալին է՝ սոթուկ զգայութիւններով պաշարեալ :

ԴՈԽՄԱՆ . — Բնակութեանց թիւն 45 տուն և կայութեամբ կրօնական ու ազգային վիճակուն գրեթէ յար և նման առաջնոյն ։

## ԳԼ. ԽԱ.

### ՇԱՐՈՒՆԱԿՈՒԹԻՒՆ ԽՆՈՒՍԻ ԳԻՒՂՕՐԷԻՑ

ԲԱՂՔԻԿ . — Բնակիչք 43 տուն , ունին եկեղեցի , քահանայ և դպրոց , որոյ մէջ անձնանուէր դաստատու մը կը կրթէ 30 էն աւելի ուսանողներ և կը դաստիարակէ ։

Այս գիւղն Խնուս գաւառի Հարաւային մասի կարեւոր գիւղերէն մին է . չինուած բնականէն ահռելի լեռնակուտակաց միջավայրը , որոյ չորս կողմն բնութեան տեսարանն մարդուս աւելի զարհուրանք կը պատճառէ քան թէ հրճուանք . ունի ընտիր օդ և պատուական ջուր . իրեն առջեւէն մի գետ կ՚անցնի , զոր կ՚անուանեն «Ս. Դանիէլ» , որ գարնան եղանակին շատ յորդառատ կը լինի և երբեմն իսկ դժբաղդ զոհեր տեղի կ՚ունենան իւր մէջ ։ Գիւղիս մերձ լեռ մը կայ , զոր տեղական գիւղացիք « Ղամեքայ բերդ » կ՚անուանեն ։

Բաղքիկ , որպէս կ՚աւանդեն , եղած լինել կը թուի « ընդարձակ քաղաք մը պարսպապատ » , որոյ հետքերն տակաւին նշմարելի են թէպէտ և ընդ աղօտ ։ Հիւսիսակողմն մի քանի նի քարընկէց հեռու աւերակ մի կը տեսնուի « Խաչ—քարեր » կոչուած ։ Բաղքիկին մօտ է ա-

Խըր չէմոն անուանեալ ընդարձակ և հռչակաւոր մարգագետին . . . : Գարնան ատեն սոյն մարգագետին Երկնից դրախտ Երկրին վրայ կը պատկերացնէ իւր բազմատեսակ ծաղիկներով : Տեղւոյս Հարաւակողմն բարձրանալով դէպ 'ի Ղամեքայ բերդն՝ ձորակ մի կայ որ կ'անուանի « ի մի լարի » , զոր կ'ստուգաբանեն իբրև թէ «Ղամեք զԿայէն սպաննելու նպատակաւ երբ աղեղն կը լարէ , յանկարծ աներևոյթ ձայն մի կը լսուի թէ «թէ մի լարեր», որ դարերու հոլովմանց մէջ աղաւաղուելով եղած է « ի մի լարի » . կը կարծուի թէ աստ Ղամեք սպաննած լինի զԿայէն , որոյ գերեզմանն իւր անուամբ կը յիշեն անորոշ բլրակ մը ցոյց տալով :

*

* *

Քաղքիկլին դրացի կը տեսնուին երկու այլ աւերակներ՝ մին «դանելոյ» (թերևս Դանիէլի) և միւսն «քաղքիկ» լսուած . երկուքն ևս զուրկ չեն իրենց անցեալ փառաց տխուր պատկեր ցոյց տուող նշաններէ , և խաչակիր քարերէ : Գիւղիս մէջ տեղը առուակ մի կայ՝ որ կը կոչուի «խառն ի փողան » :

Տեղւոյս պարագայքն երբ սիրտով աչօք դիտեմք շատ դիւրաւ կարող եմք գուշակել թէ նախապէս քաղաք եղած է , և ապա պզտիկնալով քաղքիկ անունն առած :

*

* *

Ասկէ տակաւին չ'մեկնած երբ ուզեցի եկե-

ղեցին ալ տեսնել (որմէ հեռու չինուած էր դըպրոցն), գիւղին հիւրընկալ Հայն կոչեց բարձրաձայն զժամակոչն, որ փայտէ փանալին պիտի բերէր և բանայր ԱՍՏՈՒԾՈՑ ՏՈՒՆՆ՝ որ չինուած էր անտաշ քարերէ, որք այս կողմերը առատ են։ Եկաւ մեր կուղլան (քամպուր) ժամակոչն, որ կը քայլէր Երկնքի և Երկրի մէջտեղէն և տուաւ ինձ հետևեալ պատասխանն «ծառէդ եմ, մեր ժամ տեսնելու բան չէ, զի ոչ զարդ կայ և ոչ պատկեր, չարական մ'ունիմք ինորն էլ ճոթերն (անոր ալ եզերքներ) անտէրի մկներն կըծած են, խսիր (փսիաթ) էլ Աստուած տայ». սոյն դանդատանաց խօսքերն ըրած պահուն բանալին ձեռքը դէպ 'ի յեկեղեցին կերթայր զայն բանալոյ Ուղեւորիս համար, որ արդարև սրտայոյզ պատասխանեցի իւրեան տխուր բացատրութեան թէ «ժա՛մկոչ, թէ որ ձեր ժամտուն զարդարուած էլնէր, չարականն մկներէն չ'փճասուելով նոր մնայր և ունենայիք խսիր կամ գորգ փռուած, ես չ'պիտի փափաքէի ներս մտնել, վասն զի 'ի Պօլիս զարդարուն եկեղեցիներ շատ տեսած եմ, յորոց պարզագոյնին մէջ միայն կը բնակի ՅԱՒԻՏԵՆԱԿԱՆՆ և ահա այս մտօք դուք կրնայք մխիթարուիլ ձեր այդ ՀԻՆ եկեղեցիովը։

Եկեղեցին չունէր նշանակելի մի բան և ես իմ վերջին բարևն մեր կուղլան ժամակոչին տուած՝ մեկնեցայ։

ՔՈՓԱԼ,—35-37 տուն, ունին եկեղեցի և

քահանայ, այլ ոչ դպրոց։ Աստ կը բնակին նոյնպէս 15 տուն Քուրդ . . . ։

ԱՂՃԱՄԵԼԻՔ. — Ունի 36 տուն Հայ բնակիչք, ընդ որս նաև մի քանի տուն Քուրդք. Հայք ունին եկեղեցի և քահանայ, իսկ դպրոց «Աստուած տայ»։

Գիւղիս հնութեանց և աւանդութեանց մասին զանց կառնում գրել, մինչ Գեր. Հայր Գ. Սրուանձտեանց յիշատակութիւն մ'ըրած է իւր Գրոց և Բրոցին մէջ։

ՊՈՒՐՆԱԶ. — Ունի 30 տուն, եկեղեցի մը Թուխմանուկ անուամբ, որ «շատ դիւահարներ կը բժշկէ» կըսեն։ Գիւղս շատ ջրարբի է և խոտաւէտ ընդարձակ մարգերովն, ունի Ս. Սարգիս անուն տաղաւարիկ մը, որոյ քովերը կը տեսնուին մի քանի տապանաքարինք, որոնց կը դիմեն ջերմեռանդօրէն քամի (եէլ) ունեցող հիւանդներ։

ՄԱՐՈՒՖ. — Ցար և նման նախորդին՝ եկեղեցիովն, քահանայովն և դպրոցի չ'կայութեամբն։ Աստ տարազգիք չ'կան և կարելի է ասել իրենք աւելի նուազ ջերմեռանդ և ուսումնասէր են քան թէ Պուրկազցիք։

ԵԱՀԵԱ. — բնակիչք 28 տուն, ունին փոքրիկ աղօթարան մը և քահանայ մը. իսկ դըպրոց, աղնիւ վերծանող, մի՛ հարցներ, զի պատասխանն բացառական լինելով՝ անբնական չէ՝, որ զքեզ վշտայնէ։ Գիւղիս Արեւելեան հիւսիսակողմն մեծ բլրոյ վերայ ահագին վէմ մի կայ.

որոյ բարձրութիւնն 5-6 մեթր կը լինի, սորա համար 'ի ծերոց կաւանդեն թէ «երկու եղբայր եղած են, յորոց մին առատ խոտ կունենայ իւր կենդանեաց տալու և միւսը չունենար, որ մի օր իւր եղբօրմէն խոտ կուզէ, իսկ ունեցող եղբայրն տալ չուզեր և կանդթանայ, որով քար կը դառնայ» զոր ց'արդ «քարացեալ եղբայր կանուանեն:

ԽԸՐԹ.—45 տուն բնակիչ ունի՝ կիսով չափ Քուրդ. Հայք եկեղեցի ունին, քահանայ շատ անգամ չունին, իսկ դպրոց բնաւ:

ԵԷՆԻ-ՔԷՕՅ.—23-25 տուն կայ, եկեղեցի և քահանայ, իսկ դպրոց «Աստուած տայ»:

ԽՐԻՄՆԽԱՅԷ:—Բնակիչ 26 տուն, որ դըժբաղտաբար... կրօնական որ և է մխիթարութիւն չունին, միայն թէ երբեմն այցելու քահանայ մի կը պատահի, որ կը մատակարարէ իւրեանց հոգեկան պիտոյքն. սոցա համոզումն այս է թէ «Աստուած եթէ ուզէ, մեզ եկեղեցի ալ, քահանայ ալ և դպրոց ալ կուտայ»: Սոյն գիւղն խորին արգահատանաց արժանի է:

ՇԱՊԱՏԻՆ.—Ունի 23 տուն բնակիչ, եկեղեցի և քահանայ, իսկ դպրոց ոչ. գիտես թէ իրենց համար Արևու կամ աչաց լոյսն բաւական է, այլ ես ի՞նչ պէտք է մտաց ԼՈՒՍԱՒՈՐՈՒԹԻՒՆ:

ԼԱՔՊՈՒՏԱՂ.—Բնակութեանց թիւն 20, եկեղեցի ունին առանց դպրոցի և իրենք նա-

խանձելի վիճակ մը չունին դժբաղդաբար ։

ՍԱՌԼԻ Բնակութիւն 20, ունին միայն եկեղեցի ։

Գըլը-մուսա . գիւղս ունի 20 տուն բնակիչ, յորմէ 15 Հայկական և 5 Քրդական են . Հայք կրօնական և Ազգ. բան մը չունին, հանգամանքներով գրեթէ օտարացած են, թէպէտև կը խօսին Հայ լեզուաւ . կորուսած են Ազգ. յատկանիշնին և ստացած օտար յատկութիւնք, որով անբնական չէ իւրեանց համար թէ հեռանան և պաղին . . . ։

Սէօկիւ-Բըլ . — Ունի 12 տուն բնակիչ՝ մեծագոյն մասամբ Քուրդ . տեղւոյս Հայք նախորդէն մեծ տարբերութիւն մը չունին ։

ՍԱՅԼՈՐԻ . — Սոյն գիւղն շինուած է գաւառիս յԱրեւելահիւսիս՝ փոքրիկ հովտի մը մէջ քիչ հեռու Քարաչօպանէն . ունի 10 տուն ։ Աստ 5 տուն եկաւոր Քուրդ կը բնակի, որոնցմէ Հայք մեծ դժգոհութիւն մը չունին ։ Տեղւոյս մերայնոցն եկեղեցի, քահանայ և դպրոց Աստուած տայ », այսուամենայնիւ գովելի է իրենց միաբանական ոգին, որով կը սիրեն . . . . . և զՍուրբ կրօն (Քարաչօպան գիւղի դէպքին մէջ յաղթանակ տանող մեր անվեհեր պղտօնն այս գիւղէն է) ։

Գիւղս ունի մի սրբիկ՝ որ ուխտատեղի է ջերմ ունեցողաց համար ։

Սայլուրի բնակիչքն ուրիշ գիւղերու հետ

բաղդատելով՝ շատ աւելի կանուխ կը ցանեն ։

Պաշ-քէօյ. — Գիւղս ունի Երրորդութեան թուով բնակութիւնք, որք մնացորդ են նախնի բազմահայութեան և այժմեանքն դոհ կը լինին ապրելով միայն իրենց պապերու ապրած տեղը, հոգ չէ թէ ներկայիս մէջ եկեղեցի և դըպրոց անուն չունի 'ի Պաշքէօյ ։

* *
*

Խնուս գաւառի 27 գիւղերու վիճակագրութիւն ամփոփելով՝ կարող եմք գտնել 1360 տուն զուտ Հայ, 15600 բնակչօք և արդէն վերջի վիճակագրութիւնն ևս այսպէս ցոյց կըտայ ։ Գաւառիս համայն գիւղօրայք ենթարկեալ են Մշոյ Սուլթան Սուրբ Կարապետի վանուց իրաւասութեան, որմէ շատ դժգոհ են այժմ և բընաւ յօժարամիտ չեն երևիր վանական տուրքերնին (պտղի) վճարել. իսկ քաղաքականապէս Կարնոյ առաջնորդութեան կը պատկանին, 4–5 տարիէ ի վեր ։ Ընդհանրապէս խօսելով՝ գիւղերն 1/4–2 ժամ հազիւ հեռաւորութիւն ունին իրարմէ յաջորդաբար ։

# ԳԼ. ԻԲ.

## ՄԵԿՆՈՒՄՆ

Խնուսայ յԱրևմտակողմն վերոյիշեալ Խոզլու գիւղի մերձաւոր տեղէն ճամբայ ելնելով շարունակեմք մեր ուղեւորութիւն և բաւական յառաջ գնալէն յետոյ կը հասնիմք Քօնլէ-տէրէ

ըսուած ընդարձակ ձորաբերանները ։ Ներկայիս մէջ ուրախ եմ ասել որ մեղմացած է այս անողոք տեղին, շնորհիւ Բարեխնամ Կառավարութեան պաշտօնէից հսկողութեան ։ Սոյն արխնռուշտ վայրէն 1/2 ժամու տեւողութեամբ յառաջ գնալով՝ պէտք կը լինի մեզ Քուրդ գիւղակի մը մէջ կենալ և աստ արտաւորեցանք Արևելեան կծող հովէ մը պաշտպանուելոյ համար գիշերել. ահա հոս է հետաքրքիր տեսարանն. խուրաքանչիւր ճանապարհորդ իւր բոլորտիքը սուրուխ (օէհրէ) քարեր շարելով նորա մէջ պառկեցաւ, քարերն 'ի պահանջել հարկին թշնամւոյն դէմն իբրև զէնք պիտի գործածուէին, ձեռաց բազմաթիւ գաւազանք պատրաստուեցան՝ քարանց աջակից ընկեր, իսկ ինձ գալով ճանապարհորդաց նման մտատանջութեան ովկիանին մէջ ընկղմած չէի. վասն զի վեցաչեայ պահապան մը իմ կենաց կը հսկէր և փառք նախախնամութեան, որ բնաւ պէտք չունեցանք այդ տաբերց, որք լեզու չունին, շունչ չունին. սակայն գործ տեսնելոյ կը կոչուին շատ անգամ ։ Այս տեղը մեզ տեսութեան եկան կռնագլուխ և բարձրահասակ 4 անձինք, որոց լեզուն պարսկականի հետ խառն էր, գիտէին խօսիլ նաև գաւառաբարբառ Հայերէն, այլ իրենք Հայ չէին, ազգութիւննին անծանօթ, հագած ձեւերնին անորոշ և հեծած էին սեւ, կարմիր,

Ճերմակ ու կապոյտ նժոյգներ․ սոքա կը խօսէին կոկորդային լեզուաւ մը, որ լեռնաբնակ ժողովրդոց բնական է և յատուկ։ Կը խօսէին բոլորովին աներկիւղ և կը թուէին լինել բացարձակ տէր այդ երկրին, թէև իրապէս չունէին ափ մի հող իւրեանց կոխած տեղերէն։ Սոյն խօսուն արարածներէն բնաւ վնաս մը չ՚կրեցինք և իրենք հեռացան մենէ մտահոգ։ Այս գիշեր՝ որ բնաւ լուսնոյ դէմք չ՚տեսանք, հակառակ իւր մօտաւորութեան, մեզ համար դժբաղտութեանց մեծագոյնն եղաւ, մանաւանդ երբ Արշալուսոյ ծագումն ողջունելոյ բախտին հանդիպելէ տակաւին 5 ժամու չափ հեռու էինք․ այս պահուս մեր Դշխէն Երկինքն անգթացած՝ անձրևի ամենասարսափելին մեզ կը խրկէր՝ այն ինչ երկիրն իւր կաթիլներուն երբէք պէտք մը չունէր եղանակին նայելով․ մենք արդէն բնութեան օրինաց գծած սահմանէն դուրս ելնել չէինք կարող, ուստի ծայրագոյն համբերութեամբ առաւօտ ըրինք՝ ողջունելով ոչ թէ միայն զարշալոյսն այլև հրաշափառ Արեգակ մը, որոյ նման, տարուան շրջանի մէջ, դուն ուրեք կը տեսնուի մահկանացուներու աչաց։

*

* *

Առաւօտ 'ի ժամ 12 տեղէս մեկնեցանք՝ հոգինիս մեր բերանը հասած, բայց ոչ դուրս ելած։ Մի քանի վայրկեան յառաջ գնալով ժամանեցանք 'ի տաշտն ԹԱՐԳՄԱՆու, որոյ ունե-

ցած բազմաթիւ բլուրներ և ձորերն Բարձր Հայոց Արևելեան – Հարաւային սահմանն կը կազմեն ։ Երկիրն է խոտաւէտ , ջրաւէտ՝ դրախտանման ընտիր տեղիք , յորս շատ երջանիկ կընան ապրիլ Հայ գիւղացիք, եթէ միայն Աստուծոյ և բընութեան հետ գործ ունենան և արդէն դարերէ 'ի վեր վարժուած և գոհ են զԱստուծոյն Աստուծոյ՝ և զկայսերն կայսեր տալով ։ Դաշտիս անունն զիս թէև հետաքրքրեց , այլ գոհացուցիչ աւանդութիւն մը կամ տեղեկութիւն չ'կըրցայ լսել մէկէ մը ։

Ասկէ ետքը 4 ժամ կանոնաւոր ճամբայ կտրեցինք անկանոն մարդոց հետ , և այս ահագին տարածութեան մէջ 2 հատ քուրդ գիւղակներ միայն կային , յորոց իւրաքանչիւրն 10–12 տնական հազիւ կը լինէին և բնակիչներն վըրանաբնակ չեն . այլ նստկան լինելով կը վարեն բաւական խաղաղ կեանք՝ այլոց հետ բաղդատելով ։ Սոյն անձուկ գիւղակներն ունին ընդարձակ արօտատեղիք և արտօրայք , որք շատ են հարիւրաւոր բնակութեանց ։ Աստ երկու համազգայինք միացած մի Մահմետական ընկերի հետ՝ մեզ պատահեցան , որոնցմէ մէկն տուած իր վայրկենական բարևին հետ կամէր մեզ վարժապետ լինիլ՝ զգուշութեան դասեր տալոյ հապճեպով մը , առ այս մենք ոտք առինք և թըռանք ուղղինիս շարունակել . երկիւղի տագնապը տակաւին մեր սրտերն ահով և դողով պա-

չարած է և տեղւոյ բնական դիրքերն անգամ տոսկում պատճառող են. մի ժամու տեւողութեամբ տակաւին յառաջ գնալէ յետոյ մեր դէմն կ'ելնեն դարձեալ լայնատարած դաշտօրայք, որոց Արեւելակողմն այնչափ լերանց ծերպեր և խորունկ ձորեր կան, յորս հին ժամանակ հարիւրաւոր աւազակներ և աւարներ տարած մէջերնին բաժնած են: Սոյն կողմերը հսկողութեանց պէտքն քիչ զգալի չէ երթեւեկողաց համար: Այս տեղերը մի մարգագետնի եզերքը գարնան եղանակին բազմաթիւ գեղեցիկ տեսարաններ կը ներկայանան ուղեւորաց աչքին և կը խօսին նոցա սրտերուն հետ, որք տրոփելով 4 ժամէն կը հասնիմք Երասխ գետոյ մի փոքրիկ ճիւղի ափերը, ուր մեր «կամուրջի անհամբեր» Երասխն յԱրեւմուտէն կ'ընթանայ դէպ 'ի յԱրեւել և երթալով կը շատնայ, Արարատ նահանգն ամբողջապէս կը չափէ, Նախիջեւան և Գողթն գաւառները կը կտրէ և վերջապէս օձապտոյտ գնալով Երկրի Արեւելակողմն՝ Փայտակարան աշխարհ և հոն «Պալասան» անուանեալ դաշտին մէջ կը միանայ Կուր գետոյ հետ ու կը թափի 'ի Կասպիական ծովն:

Մենք տակաւին Երասխայ յիշեալ ճիւղի եզերաց վերայ՝ բնութեան տեսարանքն անկշտօրէն կը դիտեմք. բնութեան այս գեղազուարճ տեղը շատ բնակիչներ կը պակսին: Երկիրն միշտ պատրաստ է 'ի պտղաբերել և յամենայն գար-

նան կը բանայ իւր արգանդ մարդոց պարգևներ տալ իւր կենսատու օդին հետ. բայց քանի ցաւ է ասել աստանօր թէ ո՜ւր ժրաբաղուկ ժողովուրդ՝ ընդունողք այդ պարգևաց և շնչողք այդ . . . օդին, զոր որչափ գովեմ՝ քիչ է։ Չեմ ուզեր տեղւոյս հանգամանքներն դիտելոյ համար ասկէ աւելի յապաղիլ աստ, ըստ որում զգացմունքներն կրնան իրարու բաղխիլ և այդ հակոտնեայ բաղխմանէն յառաջ գալիք ելեքտրական կայծն զիս կարող է չանթահարել, որով բազում ուշակորոյս պարզամտաց միտքերն կը մոլորին և չեն կարող տեսանել զչարն և զբարին կամ իրականն և պատրականն, որոց բնութիւնն զիրենք իրարմէ մշտնջենապէս անջատած է և չեն մօտենար խնամի լինիլ իրարու, մեկնիմք ուրեմն այս . . . վայրէն։

Շարունակեմք մեր ուղին դարձեալ և 2 ժամէն կը հասնիմք [illegible] ըսուած քուրդ-գիւղը, որ հակառակ իւր բնակութեանց թուոյ նուազմանն՝ ընդարձակ հողեր ունին 'ի վայելումն։ Սոյն երբեմն Արմենական և այժմ Քըրդական գիւղն շատ հին է։ Ասկէ մեր ընթացքն կրկին յառաջ վարելով՝ հարկ կը լինի նորէն ընդարձակ լեռնահովտայ մէջէն անցնիլ. այս կողմերը գարունն շատ ուշ կը գայ և գալէն վերջն ալ շուտով չ'երթար. նոյն համեմատութեամբ է նաև ձմեռուան գալուստն. այսպէս ուղինիս յառաջ տանելով կ'անցնիմք 3–4 քուրդ գիւ-

ղակներ , որոց բնակութիւնքն շատ տխուր են և ողորմելի . բայց ինչ զարմանք , որ բնակիչքն երջանիկ են և գոհ իւրեանց վիճակէն . պանդխտութիւն ինչ է սոքա չգիտեն . այդ ազդակործան սովորութիւնն , գիտես թէ Արմենական ժողովրդեան յատուկ է ։ Այս եղանակաւ 8 ժամ ճանապարհորդելէն զկնի կը ժամանեմք այս անգամին խիստ ընդարձակ բլրոյ մ'առընթեր, որ կողերուն վերայ շատ անգամ ճանապարհորդք կը գիշերեն ։ Այս տեղեաց բնութիւնն անգութ է և մանաւանդ ժլատ մեր երես գոնէ մի անգամ ժպտելոյ . անասնոց անգամ սնունդ մատակարարելոյ կը դժկամակի և արդէն մարդկային քրտինք իր վերայ չընդունիր և վասն այն պտղաբերել չգիտեր ։

Աստ անքուն առաւօտ ընելով՝ մեր դարձեալ Արեւելեան Արշալուսոյն հետ ելանք կրկին շարունակել զմեր ուղին , մի և նոյն ուղղութեամբ , որ կը տանի զմեզ 'ի Կարին ։

## ԳԼ. ԻԳ.

### ՄՈՒՏՆ Ի ԿԱՐՆՈՅ ԳԱՒԱՌՆ ԿԱՄ Ի ԲԱՐՁՐ ՀԱՅՍ

Ելնեմք փալանդէօքան անուանեալ ոլորապտոյտ լեռները և անոնց հովիտներէն երթալով այսպէս կ'անցնիմք Կարնոյ Հարաւային լերանց շղթայներէն ։ Ամբողջ մէկ օրուան ճանապարհ այս կողմերը բնակութիւնք չկան . այլ ամեն տեղ լի են հովիտներով և լեռներով , որոնք կընան սնու-

ցանել հազարաւոր ոչխարներ և ղուարներ : Տեղւոյս բնութեան հարուստ կողմերէն ոչխարաց վաճառականներն (Բուճէք) միայն կը շահին, թողալով հօտերնին այս տեղերը 3–4 ամսոյ ժամանակամիջոցին մէջ շատ լաւ կը պարարտանան և նորէն կը տանին իրենց երկիր, ուր թերևս չկան սոյն օրինակ անտէր վայրեր, որոնց մէջ ամառատեն երբեմն ապահովութեան համար կառավարութեան պաշտօնեայք կը հսկեն : Վերոյիշեալ տեղէն $1^1/_2$ ժամ տեւողութեամբ ուղի առնելով կը հասնեմք «Գայլայլի» բսուած ահագին ձորամէջերը, ղառիվայրերը, ասկէ յետոյ կ'երթամք յաւեր քաղաք (Խոբրադա չէհէր) բսուած աւերակը, որ կը գտնուի մեր ճանապարհի ձախակողմն և մեր դէմքն կը նայի ուղղակի 'ի Հիւսիս : Սոյն հինաւուրց և անյիշատակ աւերակի մի քանի տանց հիմունքներն տակաւին կը տեսնուին, որոց քով երբեմն հոգնած ճանապարհորդք հանգիստ կ'առնուն՝ երբ Արևու կիզմանէն նեղութիւն մը զգայ. ըստ աւանդութեան՝ «Կարնոյ վաճառաշահ տեղերէն մին եղած է» այդ աւեր քաղաքն. ասկէ մէկ ժամու չափ ևս տակաւին երկայն և ղառիվայր ձորամէջերէ գնալով կ'իջնեմք ընդարձակ երկրի վերայ, ուր գրեթէ մի ժամ ևս ընթացքնիս շարունակելով կը ժամանեմք 'ի Կարին, որոյ դաւառին վերայ(*) տահա կը խօսիմք :

---

(*) Մեր Տեղագրութեանց Ա. Մասի 19 երորդ ե-

## ԿԱՐՆՈՑ ԳԱՒԱՌ

Սոյն գաւառն . . . ունի բարձր դիրք՝ որմէ ծագած է իւր նահանգական հին անունն, լի է գեղեցիկ տեսարաններով, շրջապատեալ հեռաւոր և մասամբ մը մերձաւոր լեռներէ, մանաւանդ Արեւելեան և Արևելահարաւային կողմերէն. լերանց մէջ նշանակելի է տէվէ պօյնու և փալան տէօքէն, որոնք իրենց դրից համաձայն ընդունած են անուննին, նոյնպէս Բօֆ տաղը կոչուած քիչ հեռաւոր լեառն, որ սոյն լերանց շարունակութիւնն է ։ Այս լերանց մէջ կը գտնուին վայրի կենդանիք՝ ինչպէս եղջերու, գայլ արջ, աղուէս, նապաստակ և այլն ։

*
* *

Երկիրն ունի մի լայնածաւալ դաշտավայր, որոյ երկայնութիւնն 7–8 ժամ է յԱրեւելէն յԱրեւմուտ և լայնութիւնն 5 ժամ Հիւսիսէն 'ի Հարաւ. սոյն դաշտի մէջն է ծովակ կամ շամբ

---

րեսի մէջ մտած եմք 'ի Կարին, Տրապիզոնի Արեւելեան Հարաւային ուղղութեամբ եւ ասկէ ի Մուշ մեկնած. իսկ այժմ տարբեր գծով մը կը վերադառնամք 'ի Կարին, որոյ վերայ գործիս Ա. Մասի յիշեալ երեսի մէջ ըրած խոստմանս համաձայն կը գրեմք՝ ինչ որ պէտք է ու Տեղագրութեանս նպատակէն դուրս չէ եւ արդէն խոհեմութիւն կը համարիմք, մանաւանդ արտաքին պատճառներ ունիմք Կարնոյ վիճակին վերայ ամփոփ գրելոյ եւ մեզ համար որոշեալ սահմանէն դուրս չելնելոյ ։

Կարնոյ կոչուած լճակն , զոր կը յիշէ մեր Խորենացի Հայրն ։

Գաւառիս օդն շատ ցուրտ է , այլ քաջառողջ , որոյ բնակիչք առ հասարակ հուժկու կազմուածք և բարձր հասակ ունին հանդերձ առողջութեամբ ։ Եփրատէսի զօրաւոր ճիւղն , զոր Հայք կ'անուանեն «Սև գետ» և մահմետականք ([illegible]) , կը բղխի գաւառիս այլ և այլ լեռներէն , մանաւանդ Ոսկեանց կամ Սուքիասանց և կամ Տումլու ըսուածներէն , որք կը գտնուին Կարնոյ դաշտի Արեւելը ։

Կարնոյ դրացի նշանաւոր լեռներէն յԱրեւելակողմն « Ս. Նշան » լեռնագօտին , որ վերայ մատուռիկ մի կայ , և որոյ անուամբ լեռնագօտին կ'անուանի . նոյնպէս Գոհանամք լեռան որ նախընթացի չարունակութիւնն կրնայ համարուիլ . սոյն վերջի լերան նկատմամբ կ'աւանդեն թէ « Երբ Նոյայ Տապան ջրոյ երեսը կը ծփայր և ջուրերն տակաւ առ տակաւ իջնալոյ վրայ էին տապանն քսուած է այս լերան և Նոյ Նահապետ « Գոհանամք Արարչին » ասելով փառք կը տայ և ց'արդ լերան անունն մնաց « Գոհանամք լեռ » ։ Երկրի հողն ընդհանրապէս արգասաւոր է և խիստ շատ կը ցանեն ցորեան և հաճար ։

Այս գաւառի մէջ ջերմուկներ շատ գտնուելով՝ պարբերաբար երկրաշարժ տեղի կունենայ և տարի չըլլիներ որ մի քանի անգամ ցնցում չը կրէ , որպէս կը պատմեն տեղացիք ։

# ԳԼ. ԻԳ.

## ԿԱՐԻՆ ՔԱՂԱՔ ԿԱՄ ԹԷՈԴՈՒՊՕԼԻՍ

*Կարին, զոր Մահմետականք Էրզրում կ'անուանեն, գաւառիս ընդարձակ կուսակալութեան կեդրոնատեղին է ամենայն մասամբ, որ շատ ստոյգ կը լինի անուանել զայն Մայր-քաղաք։ Շինուած է վերոյիշեալ դաշտավայրի յԱրեւելահարաւ և կը գտնուի Բարձր Հայոց կեդրոնական Արեւելը. ունի լայնատարած նստուածք մը. ըստ պատմութեան՝ «այս քաղաքն Յունաց Թէոդոս կայսրը յանուն իւր շինել տուած է Անատօլ կոչուած զօրավարին ձեռամբ»։*

*Քաղաքն ունի բաւական լաւ տեսարաններ և գաւառին գիւղերն իւր զգալի հորիզոնն կը կազմեն (Հիւսիսէն մանաւանդ), օդն՝ որպէս կանխաւ յիշեցի, հակառակ իւր ցուրտ բնութեան վիճակին, քաջառողջ է. Սեպտեմբեր ամսոյ 15–20 էն սկսեալ ձմեռն ինքզինք ցոյց կը տայ և բնակիչքն պատրաստուած են բնութեան ըրած սոյն կանուխ այցելութիւնն ողջունելոյ համար, վառելեաց և հագանելեաց մասին պատրաստութիւնք տեսնել. գարունն սոյն համեմատութեամբ շուտով չ'սկսիր։ 1882 Մայիսի ծաղկազարդ ամսոյ 9 ին բաւական քանակութեամբ ձիւն տեղաց, մանաւանդ մերձակայ լերանց վերայ, այնպէս որ մենք պատրաստուեցանք՝, ձըմեռուան նման, զմեզ պահպանել ցրտոյ ազդե-*

ցութենէն , որով մարդս կրնայ սովորականէն աւելի վնասուիլ. վասն զի ղեղանակն ամառուան կարծելով ըստ այնմ կը հագուին , յանկարծ վըրայ կը հասնի միջանկեալ ձմեռ մը (1–2 օրեայ) և զընակիչս պաղեցնելով տկարութեան կ'ենթարկէ :

*
* *

Կարին իւր հիմնարկութենէն 'ի վեր ընդմիշտ պաշտպանողական դիրքերէ զուրկ չէ գըտնուած , որպէս է և այժմ շնորհիւ մեր Կայսերական Կառավարութեան իմաստուն հեռատեսութեան , որով խրամներ և այլ և այլ ամրութիւնք շինել տալով՝ զքաղաքն ապահոված է արտաքին թշնամիներէ , ուր որչափ ալ հնարագէտ և ռազմագէտ լինին՝ դարձեալ դիւրաւ վնաս հասցնելն անկարելի է : Քաղաքիս բերդն տակաւին կիսով չափ գործածելի է և 'ի հնուց շատ ամրապինդ կառուցեալ : Բնակութիւնքն քարաշէն են մեծագոյն մասամբ , առ հասարակ երկյարկ և տեղական ճաշակաւ կառուցեալ դուն ուրեք կը տեսնուին նաև եռայարկ տուներ : Քաղաքն ունի կառավարական կանոնաւոր շէնքեր և բոլորովին անծառաստան է :

Կարնոյ համայն բնակութեանց թիւն է 10,000 տուն , զոր կը նշանակեմ ըստ թուոց առաջնորդութեան կարգաւ : Ա. Մահմետական 7,600 տուն : Բ. Արմենական 2,000 : Գ. Հռովմէական (Հայ Կաթոլիկ) 150 : Դ. Յոյն 100 : Մնաց-

եալ 150 կը քաղկանայ Ամերիկացի , (Հայ Բողո-քական) Լատին (Մայրապետ և Գափճեան ֆրեր-ներ) և Պարսիկ տարրերէն ։

Մահմետականք ունին 25–30 հատ մզկիթ, յորոց մեծագոյն մասն ունի իւրեան յատուկ նախակրթարանն (Իպթիտայիէ) և իւրաքանչիւրին մէջ կը գտնուին 20–30ական ուսանողք , որք կը դաստիարակուին տակաւին հին դրութեամբ , 'ի բաց առեալ վերոյիշեալ կրթարանքն , ունին նաև 2 այլ ուսումնարաններ (Ռուշտիյէ) . սոյն երկու վարժարանաց ուսանողներուն թիւն 200 էն աւելի է ։

*
* *

Աստ անպատշաճ չեմ համարիր միջանկեալ պատմութիւն մի ընել և ապա շարունակել. «Կար-նոյ Հայոց բնակութեանց թիւն առկէ 60 տարի յառաջ 4,000 էր և 1829 յուլիս 10ի պատերազ-մըն խաղաղելէն ետքը երբ Ռուսիոյ Պասքևիչ զօրապետն Կարինէն իւր զօրքերն առած կը մեկնի , Կարնոյ նոյն ժամանակի 4,000 տուն Հա-յերն ևս կը փափագին գաղթել գիւղերու հետ, գալիք երկիւղներէն պաշարուած . սակայն նոյն ժամանակի Առաջնորդ Կարապետ եպիսկոպոս Հնուացի (*) ժողովրդեան այս տրամադրու-թիւնք գիտնալով գեղեցիկ հեռատեսութեամբ՝ կը դրէ 'ի Պատրիարքարան կանխապէս դար-ման մը տանիլ կամ՝ ազդու միջոց մը խորհիլ

(*) Գիւղ մի է 'ի Սպեր գաւառի ։

ժողովրդեան գաղթականութեան առաջքն առ-
նելու համար , նոյն ժամանակուան Պատրիար-
քըն և Ամիրայքն խորհուրդ ընելով որոշում
կը տան , փոխանակ այդ ազնիւ Եպիսկոպոսին
աջակցելու կամ խորհուրդ մը տալու , անմիջա-
պէս պաշտօնանկ կընեն զանի , այդ լուրն տը-
ուած լինելուն համար և թէ ի՛նչ պատճառաւ
Եպիսկոպոսն իւր անձնանուիրութեան զոհ կեր-
թայ չ'գիտեմք , միայն թէ զինքն պաշտօնանկ
ընող գիրն Պատրիարքարանն կը յղէ իրեն ,
որոյ յաջորդ ընտրուած Իսրայէլ անուն վար-
դապետ մը ճամբայ կը հանեն 'ի Կարին» , «Կա-
րապետ Եպիսկոպոսն իւր պաշտօնանկութեան
լուրն Առածին պէս սաստիկ կը յուզուի և կը
ցաւի ասելով թէ «իմ տիրող կառավարութեան
և Ազգին ծառայութիւն մը մատուցանելու բաղ-
ձանքով իմաց տուի Պատրիարքարանին գաղ-
թականաց առաջքն առնել տալու համար և
Պատրիարքարանն , զիս քաջալերելու փոխան ,
պաշտօնանկ ընելով իմ տեղ ուրիշ մարդ կը
կարգէ , կեցցէ՛ ուրեմն , որ ես զԿարին աւերակ
դարձունեմ , թո՛ղ Պատրիարքարանէն խրկուած
նոր Առաջնորդն (Իսրայէլ վարդապետ) աւերա-
կաց վերայ առաջնորդ լինի» . «այս խօսքին վե-
րայ ինքն ևս մղում կըտայ գաղթականութեան
իմաց տալով ամեն կողմը թէ «պատրաստուե-
ցէք գաղթելու և ես ընդ ձեզ եմ» . ամենք կը
պատրաստուին և միահամուռ կը գաղթեն 'ի

Ռուսաստան և երբ կը հասնին Հասան-Գալէ ըսուած գիւղաքաղաքն Իսրայէլ վարդապետն ետևնուն կը հասնի զիրենք (զգաղթականս) վերադարձնելու․ սակայն Կարապետ Եպիսկոպոսի թելադրութեամբ լաւ ծեծ մը կուտէ գաղթականներէն և նորէն կը վերադառնայ 'ի Կարին, ուր 20 տուն միայն Հայ կը գտնէ, զոր իրեն համար քիչ ժողովուրդ համարելով չ'կենար 'ի Կարին, այլ վերադարձ կընէ 'ի Պօլիս»: Այսպէս ահա Կարնոյ քաղաքն սոյն օրինակ անցքեր տեսած է:

Գաղթականութեան յիշեալ թուականէն ց'արդ 56 տարի է․ սոյն ժամանակամիջոցին մէջ այդ 20 տունն 2,000 եղած է թէ գաղթականաց ոմանց վերադարձովն և թէ այլ և այլ գաւառներէն գալովը․ ուստի ներկայ թիւն թէև կէսն լինի գաղթելոց թուոյն, այսուամենայնիւ դարձեալ պահ մը կրնայ զմեզ մխիթարական տպաւորութեան մը ներքև պահել և չ'թողուլ որ յայտնեմ մտքիս և սրտիս զգացած արդար ցաւըն ընդդէմ այն Պատրիարքին և Ամիրայից, որք անխոհեմութեամբ տեղի տուած են այդ մեծ գաղթականութեան, որ յիւր ժամանակին Ազգին և միանգամայն Տէրութեան հաւասարապէս ահագին վնասուց պատճառ եղաւ:

## ԿԱՐՆՈՅ ՀԱՅՈՑ ՀՈՅԱԿԱՊ ԵԿԵՂԵՑԻՆ

Յանուն Ս. Աստուածածնայ կառուցեալ

սոյն եկեղեցին 42–43 տարուան է և շինուած
20 սիւներու վերայ, կոփածոյ կարմրագոյն քա-
րերէ, իւր ընդարձակութեան համեմատ բարձ-
րութիւն չունի, այսու ամենայնիւ իւր հսկայու-
թիւնն Օսմանեան Ասիական մասին վերայ հազ-
ուագիւտ է. ունի 3 խորան և երեք դրունք, ա-
ռաջինքն ևս փոքր են եկեղեցւոյ մարմնոյն հա-
մեմատութեամբ. սիւներն միակտուր են, որք
տեսանողաց իրաւի զարմանք կը պատճառեն:
կանանց վերնատունն ճաշակաւոր ճարտարապե-
տի մը գործ է:

Եկեղեցւոյ հարաւակողմն կից մատուռ մի
կայ քարաշէն, զոր «տաճար» կ'անուանեն և է
անթուական: Եզր Կաթուղիկոսին օրով սոյն
մատրան մէջ եղած է այն ժողովն, յորում Հայք
միաբանած են Յունաց հետ: Եկեղեցին ունի
գեղեցկաշէն զանգակատուն մը և իրեն յԱրև-
մտահիւսիս մէկ քարընկէց հեռու ընդարձակ
գերեզմանատուն մը՝ որ ծառազարդեալ և կա-
նոնաւորեալ լինելով՝ մեծ հաճոյք կ'զգայ տեսա-
նողն, թերևս մի և նոյն հաճոյք կ'զգան նաև
այդ յաւիտենական ննջարանի մեռելոց հոգինե-
րը, տեսնելով իւրեանց 'ի հող տապանի թաղ-
ուած մարմիններու սոյն զուարճալի բնակավայ-
րըն, ուր կիւրակէ և տօն օրերը գեղեցիկ ժա-
մանակ կ'անցունեն քաղաքիս գրեթէ ամեն կար-
գի ազգայինք:

Կարնոյ Հայոց հին պատկերու այս գերեզ-

մանատուն տեղւոյն ծանօթներէս միոյն առաջ-
նորդութեամբն տեսնել ուզեցի և 'ի միասին
գալով մտանք յայս նուիրավայրն , ուր երկու
հոգիներ մի անհոգի տապանաքարի քով կե-
ցած յիշատակագիր մը կ'ընթեռնուին և կը վի-
ճէին . իւրեանց վէճի առարկայն էր թէ « երբ
երկու տարասեռ և տարակրօն մեռեալներ մի
և նոյն գերեզմանոյին մէջ իրարու քով թաղ-
ուին , արդեօք իրական ապացոյց մի կա՞յ թէ
սոցա հոգիներն իրարու հետ կը կռուին կամ ի-
րարու դէմ թշնամութիւն կը սնուցանեն 'ի հան-
դերձեալումն և կը դիմեն Արդարոյն » . սոքա
զիս դատաւոր ընտրեցին , որ զիրենք նախա-
պէս ողջունած և լռութեամբ կեցած մտիկ
կընէի իրենց հոգեկան կամ մարմնական այս վէ-
ճին . տակաւին և ոչ միոյն իրաւունք տուած՝
ասացի ես աշխարհական եմ և կրօնական այս
օրինաց հարցերու վճռատու լինել չ'կարեմ, մի-
այն թէ մարմնաւոր աշխարհիս մէջ ապրած ա-
տենը լոկ զհոգեկան մտածելն կը նշանակէ քան-
դել մարմնոյ և հոգւոյ միացմամբ կազմակեր-
պեալ՝ Աստուածային պատկերով մարդկեղէն
խորհրդաւոր շէնքն , որոյ որ և է մի մասն վըշ-
տացած ժամանակ կը վշտանան նաև մնացած
բոլոր մասերն եւս , ուրեմն մարմնոյ բոլոր ան-
դամներն տարբեր պաշտօնով հաւասար իրա-
ւունք կը վայելէն այդ շէնքի գերագոյն ճար-
տարապետին առջև և հաւասարութեան այդ-

սուրբ օրէնքն սիրել և յամենայնի գտնուիլ հաւատարիմ յանձնարարած՝ բաժնուեցայ իրենցմէ ։

Ազնիւ վերծանող, սոյն միջանկեալ պարբերութեան մասին ներողամիտ եղիր, զի դրածս անկարևոր մի բան չէր և մեր Երկրի ամեն կողմի Հայոց կեանքն այս խնդիրէն իւր բաժինն ունի, զոր մարմնաւոր կամ հոգևոր կարծելուդ մէջ ազատ ես, միայն թէ վերջի անունն տալոյ սխալանաց մէջ ընկնելէն զգուշացիր, ահա կ'ասիմ քեզ ։

* *
*

Գերեզմանոցիս մէջ կայ նոյնպէս սիրուն մատուռ մը, զոր Ռուսք 1878 թուականին կառուցանել տուած են 'ի յիշատակ վերջի պատերազմին աստ Օսմանեան զինուց առջև հրացանով ընկած Ռուսական հասարակ զինուորաց, որոց գերեզմաններէն շրջապատեալ է այդ մատուռն, որ կը կենայ այժմ դրօքն փակելօք ։

## ԳԼ. ԻԵ.

### ԲԱՐԵՐԱՐԱՑ ՅԻՇԱՏԱԿՆ ԱՆՄԱՀ Է

Կարնոյ մէջ ժամանակ առ ժամանակ տեսնուած են և կը տեսնուին մեծահոգի ազգայինք, յորոց մի քանիներու անուանքն իւրեանց գործերովն աստ նշանակել արժան կամ լաւ ևս է ըսել պարտք կը համարիմ ։ Մեծանուն և բարեյիշատակ Խաչատուր Էֆէնտի Փաստըր-

մանեան, որ 500-600 ոսկի ծախք ընելով՝ Կարնոյ եկեղեցւոյ վերոյիշեալ զանգակատունն գեղեցկօրէն շինել տուած է, զոր արդէն 1858ի երկրաշարժն կործանած էր: Մեծանուն և բարեյիշատակ Յակոբ էֆէնտի Մակարեան, 1000-1500 ոսկւոյ ծախիւք, տեղւոյս խարխուլ և անբաւական վարժարանն քակել տալով՝ նոր և ընդարձակ վարժարան մը կառուցանել տուաւ և այժմ հանգուցելոյն յիշատակագիրն այդ լուսոյ տաճարի դրան ճակտի վերայ դրոշմեալ կը տեսանի: (*) Տէր Ազարեան Սողոմոն աղայի աղնիւ որդիք և մեծաշուք ժառանգորդք, 500-600 ոսկի ծախիւք, կառուցանել տուած են երկսեռ վարժարան մը քաղաքիս Զայղարայի թաղին մէջ. 'ի վեր նշանակեալ ազգօգուտ շինութեանց մէջ այժմեան Պատրիարք Ամեն. Վեհապետեան Սրբազան Հայրն գործօն դեր մ'ունեցեր է, ինչպէս նաև Ազգային այլ շինութեանց մէջ, զորօրինակ Հոյակապ Առաջնորդարան և Հռիփսիմեանց անուամբ աղջկանց վարժարանն Նորին Բարձրաշնորհ Սրբազնութեան օրովն և ջանքով շինուած են, որմէ յառաջ Կարնոյ մէջ իգական սեռի դաստիարակութիւնն տակաւին սկսած չէր. Նոյնպէս կարեւոր պարագայ մի է յիշեցնել թէ մինչև 'ի սոյն շինութեանց թուականն քաղաքիս մէջ, դուն ուրեք, երկյարկ շէնքեր գտնուած

(*) Կանխաբանի մէջ յիշուած Միսակ էֆէնտին թոռնիկն է այս առաքինի մարդուն:

են, այնպէս որ կը պատմուի թէ «երբ առաջնորդարանն երկայարկ կը կառուցուի հասարակութենէն շատերն կը զարմանան ասելով թէ «այս ի՛նչ տեսակ տուն է, որոյ դուռն բարձրէն բացուած է», ասկէ կարելի է մասամբ մը հետեւցնել թէ Կարնոյ մեր Հայոց մտաւոր զարգացման ջերմաչափն 1862էն (շինութեան թուական) կսկսի բարձրանալ։

Կարնոյ մէջ նշանաւոր են հետեւեալ գերդաստաններն՝ ինչպէս Պալլարեան, Նշիկեան, Եանըքեան, Տէր Ներսէսեան, և Խանճեան եղբարքն։

Վարժարանք

Քաղաքիս լուսաւորչական Հայք ունին 3 հատ Ազգային վարժարաններ. Ա. Մայր վարժարան «Արծնեան» կոչուած՝ ընդարձակ և յարմարադոյն շինութեամբ, որ կը գտնուի Եկեղեցւոյ բակին մէջ (զի դարաւոր փորձերն մեզ ցոյց տուած են և յետ այսու աւելի կըտան թէ դպրոցն երբ Եկեղեցւոյ բակէն հեռանայ՝ կեանք ունենալէ կը դադրի և աւելի անոր համար, որ նորա լոմայովս կապրի։ Արական սեռի այս վարժարանն 600–650 աշակերտք կը դաստիարակէ, տարիքնին 6–15։ Բ. Եկեղեցւոյ մերձ «Հռիփսիմեանց» օրիորդաց վարժարան, որոյ աշակերտուհեաց թիւն 400ի կը հասնի, տարիքնին 6–13։ Գ. Թաղ. երկսեռ վարժարան, որ Եկեղեցիէն հեռու, Զայղարայ ըսուած թաղին

մէջ շինուած է (որոյ հիմնարկողաց յիշատակութիւնն վերև ըրած եմ արդէն), սոյն կրթարանի երկսեռ ուսանողաց թիւն է 140–150։

Մասնաւոր վարժարան․

Ա. Ազգի մեծանուն ԲԱՐԵՐԱՐ աղա Մկըրտիչ Սանասարեանցի բարձրագոյն վարժարանն, հիմնարկուած 1881 թուականին և ուր Գերմանական ուղղութեամբ կը դաստիարակուին 90 ի մօտ ուսանողք, որք մեծագոյն մասամբ գիշերօթիկ են։ Սոյն վարժարան հիմնարկող բարերարն Հայաստանի այլ և այլ գաւառներէն 25–30 ուշիմ պատանիք հաւաքել տալով՝ իւր ծախուք դաստիարակել կը տայ յանուն քաղաքակրթութեան . . . Թոշակաւոր ուսանողքն խիստ համեստ գումար մը միայն կը վճարեն։ Սանասարեանց աղնիւ ազգասէրն անուան նուիրեալ այս վարժարանն, բաց ի այլ և այլ պաշտօնեայներէ, երեք գլխաւոր Վարիչ-պաշտօնեայ ունի, զորս յիշեալ Հայրենասէրն դարձեալ իւր ծախքով 'ի Գերմանիա կրթել տուած է։ Վարժարանն որ ինն ամեայ շրջան ունի, կը համապատասխանէ Գերմանիոյ Միջնակարգ վարժարանաց աստիճանին և կը բաղկանայ Նախակրթարանէ ու Կրթարանէ. առաջինն կը պարունակէ երեք դասարան և երկրորդն կը պարունակէ վեց դասարան։

Վարժարանն ունի նաև գործատուն, (որոյ մէջ յարմարութիւն ունեցող ուսանողքն կզբա-

ղին մասնաւոր արհեստներով), զոր հետզհետէ կատարեալ Արհեստանոցի վերածելոյ մտադիր է հիմնադիրն, որ իւր վարժարանին համար պիտի բանայ նոյնպէս Մասնագիտական շրջան մ'եռամեայ ընթացքով:

Բարձրագոյն կրթարանիս անմահ բարերարի ՅԻՇԱՏԱԿՆ, դարուց 'ի դարս անմոռաց պիտի պահուի ամեն Հայ սիրտերու մէջ, զի ինքն առաջին միջնորդ կը հանդիսանայ . . . քաղաքակրթութեան հիմնաքար դնելոյ, բանալով այսպէս երկու հաստ լուսոյ տաճարներ, մին 'ի Վասպուրական՝ Վանայ մէջ իգական սեռին համար, և միւսն 'ի Բարձր Հայս՝ Կարնոյ մէջ արական սեռի համար:

Գ. « Աղապալեան վարժարան » զոր բացած է Մկրտիչ էֆէնտի Աղապալեան, երեք տարիէ 'ի վեր. ունի 100 ուսանող և Լուսահոգի Իփէքճեանի 1881 ին շինած Կրթական ընդհանուր ծրագրի Թաղային վարժարանաց վերաբերեալ մասին կը համապատասխանէ. անձնուէր Հիմնադիր—Տնօրէնի ջանքերն գովութեան արժանի են: Դ. Հռովմէական Հայոց « Լազարիստ » և « Անարատ Յղութիւն » անուամբ երկու վարժարաններն, մին արական և միւսն իգական սեռին պատկանեալ և յանձնուած՝ մի քանի Լատին կրօնաւորաց, որք ունին իւրեանց յատուկ եկեղեցին Աստուածածին կոչուած: Սոյն վարժարանաց մէջ 200 էն աւելի ուսանողներ կան և

մեծ մասամբ Լուսաւորչական ու Մխիթարեաններն են Յոյն, Պարսիկ և Մահմետական ։ Դ. Բողոքականաց երկսեռ վարժարանն՝ հաստատուած բազմահայ թաղի մը մէջ ։ Ե. Նախակրթարան Յունաց, որք ունին նաև Ս. Գէորգ կոչուած եկեղեցի մը ։

*
* *

Կարնոյ Հայոց ազգային վարժարաններն 1200 ոսկի ծախք ունին տարեկան, որ կը հայթայթուի, ամենամեծ մասամբ, եկեղեցւոյ կալուածական եկամուտներէն. կրթական ուղղութիւնն գլխաւորաբար կը պատկանի Գեր. Առաջնորդին, որոյ բարձր և համակրելի դիրքն մեծամեծ յոյսեր կը ներշնչեն թէ ուսումնասէր Կարնեցիք իւրեանց ժրաջան Առաջնորդին աջակցելով, քիչ ժամանակի մէջ վարժարաններու ուսումնական վիճակն պիտի կարողանան հասցնել այն բարձրութեան, որ համապատասխան լինի քաղաքի անուանն, ըստ որում Կարին ընդարձակ կուսակալութեան մը կեդրոն լինելով՝ Կարնեցիք իրապէս կը գտնուին խիստ լաւ պայմաններու ներքև, որով շատ քիչ պատճառ ունին բարձի թողի ուղղութեան մը հետևիլ ։

*
* *

Կարնեցին անծանօթ մը տեսած ատեն կը հետաքրքրուի և կը ջանայ ոչ թէ միայն զանծանօթն ճանաչել, այլ նաև եթէ կարելի է նորա սրտի և մտաց խորհուրդներն իսկ գիտնալ ։ Կար-

նեցին ունի նոյնպէս գովելի և միանգամայն ընդօրինակելի այլ յատկութիւնք ինչպէս անկեղծութիւն, ումնկատմամբ կը լինի թող լինի, ընտանեսէր է, պանդխտութեան դիմելն ինչ է չ'գիտեր և արդէն իրաւամբ դատապարտելի մի բան դարձած է, ամեն ոք կապրի իւր ընտանեաց քով և երբ նեղ վիճակի մէջ գտնուի դիտէ սակաւապետ կենօք ապրելով՝ ինքզինքն գոհացնել: Առ հասարակ զուարճութիւն կը սիրեն, միայն թէ արհեստաւոր դասերէն ոմանք, որպէս ինձ պատմեցին, երբեմն կը չափազանցեն այդ զուարճասիրութիւնն, որ չ'կրնար պախարակելի չ'նկատուիլ երբ կը չեղի իւր օրինաւոր սահմանէն: Սոքա Հայրենի աւանդութիւնք շատ լաւ կը պահեն թէ 'ի վանս ուխտագնացութեամբ, թէ պահեցողութեամբ և թէ՛ այլովք հանդերձ: Ունին 'ի Պօլիս մասնաւոր պանդուխտներ, որք վաճառական են և ունին պատուաւոր դիրք մը: Կարնեցի ընտանիք քաջ դիտէ տան շինարարութիւն և հեռատեսել ապագայի անակընկալ անբաղդութիւնն ներկայի բարեբաղդ վիճակի մէջ և ըստ այնմ կը տնտեսէ իւր տնական կացութիւնը, յամենայնի պարկեշտ և ժիր է: Տեղւոյս Հայքն ունին խօսից մէջ իրենց յատուկ մասնաւոր նշան մը զոր օրինակ կուգամ կը, կերթամ կը, կաշխատիմ կը, ևլն. սոյն նշանն, որ ուսեալ մասին մէջ չ'տեսնուիր, կը համապատասխանէ մեր Պօլսեցի եղբարց կօրին:

# ԳԼ. ԻԶ.

## ՔԱՂԱՔԱԿԱՆ ՎԻՃԱԿ

Կարնոյ մէջ կը նստին Ռուսական, Անգլիական, Գաղղիական, և Պարսկական Դեսպանք։ Քաղաքն ունի պատրաստ պէտք եղածին չափ զինուորական զօրութիւն և կը պահպանուի ամենայն աչալրջութեամբ։ Շատ գոհ եմ ստանօր յիշատակել թէ մեր Հայոց և դրացի Մահմետականաց մէջ օր ըստ օրէ վերստին կը քաղցրանան այն ներդաշնակ յարաբերութիւնքն, որ տեղւոյ հանրածանօթ, այլ անստոյգ դէպքերէն պահ մը դառնացած էին և հետզհետէ անհետ լինելոյ վերայ կը գտնուին իւրեանց մէջէն այն տխուր տպաւորութիւնքն, որոց երեւէն բանտարկեալներն մեր Օգոստափառ Կայսեր ներման արժանացած՝ անցեալ տարի արձակուեցան 'ի մխիթարութիւն իրենց թշուառ ընտանեաց և 'ի գոհունակութիւն համայն Ազգին։

* * *

Կարնոյ մեր Ազգային Վարչութիւն իւր բոլոր ճիւղերովն կանոնաւոր եղանակաւ (սահմանադրապէս) կազմուորեալ է շնորհիւ Տեր. Առաջնորդի անխոնջ ջանից, որ քաջ գիտէ պարագային համաձայն գործելով՝ մի լաւ յարաբերութիւն մշակել տեղական կառավարութեան և պաշտօնական այլ և այլ մարմնոց հետ, փափաքելի է սոյն օրինակ ձիրքեր տեսնել Հայաբնակի

բոլոր վիճակաց հովիւներուն քով ։

*
* *

Քաղաքիս համար կրպակաց թիւն 3500էն պակաս չէ և ՚ի նոցանէ երկու շուկայ միայն կայ ծածկուած, մնացեալքն բացօդեայ են և չինու-թեամբ պարզ ։ Պանդոկներու թիւն 150ի կը հասնի, որպէս և հացագործքն (ֆրանք) 180-200. վերջնոց առն և տուրն ամենէն աւելի ըն-թացիկ է. շուկայքն բաւական լայն են, ուր ամառ եղանակին, երբ հով մը կը լինի, անվարժ երթե-ւեկողք կը պարտաւորին աչքերնին գոցել ու այնպէս քալել, որպէս զի փոշի չըլենայ ։

Բերքի արտածութիւն (էքսփօրթասիօն). — Կարին դուրս կը խրկէ մեծ քանակութեամբ ցորեան, և գարի, նոյնպէս անասնոց մէջ ոչխար, ձի, կով, եզ, և անոնց կաշին ու բուրդ ։

Ներածութիւն (էմփօրթասիօն). — Կը բերուին Եւ-րոպական ամեն տեսակ ապրանքներ ու կանոնա-ւոր շէնքերու համար մեծ քանակութեամբ ըն-տիր փայտեր, որք Կարնոյ Հիւսիսակողման Սօ-ղանլը կոչուած անտառներէն, և Նարմանէն (Տայք նահանգի մի փոքր վիճակ) կը կտրուին ։ Պարսկաստանէն կը բերեն կուռկուռի ծխախոտ (Թէմպէքի), բամպակ. և ընտիր գորգեր (խալը ։)

Կարնոյ վաճառականութիւն և արհեստք առևտրական ու արհեստական վիճակն, բաղ-դատաբար, բաւական շարժուն են և ոչ մեռեալ, արդէն Օսմ. Հայաբնակ գաւառաց բոլոր կեդ-

րնական քաղաքներէն առաջին լինելով՝ ուղղակի յարաբերութիւն ունին անոնց հետ, ինչպէս Երզնկայի, Մշոյ, Բաղիշոյ, Վանայ, և այլոց հետ. ամեն օր բազմաթիւ կարաւանաց երթեւեկութիւնք անպակաս են քաղաքիս մէջ:

Տեղւոյս սովորական արհեստներն են պըղնձագործութիւն, դարբնութիւն, պայտառութիւն, զինագործութիւն, ոսկերչութիւն, դերձակութիւն, կօշկակարութիւն, թամբագործութիւն, հիւսնութիւն, ոստայնանկութիւն, օճառաչինութիւն, խաղաղորդութիւն, ներկարարութիւն, սեւ սաթի չինութիւն, մոմաչինութիւն. կան նոյնպէս ժամագործ, սիկարնիկ և սանտր շինող, որմնադիր և այլն և այլն: Յիշեալ արհեստներէն շատերն ունին իւրեանց տեսակներն և իրարմէ քիչ ու շատ կարևոր տեղ բըռնող. որոց մէջ պղնձագործութեան արհեստն զարգացեալ վիճակի մէջ է և կրնայ Պօլսոյ հետ մրցիլ: Արհեստաւորներն գիտեն հին և կոտորակեա՛լ պղնձեղէններն հալեցնելով այլ և այլ մեծութեամբ կաղապարել և ապա բոլորակի ծեծելով տախտակներ բանալ, զոր իրե՛նք ֆուլէջու կ'անուանեն: Երկրին ամեն կողմեր կը տարուին 'ի վաճառ տեղւոյս պատրաստած պղնձեղէններէն, սեւ սաթ, որմէ կը շինեն սիկարնիկ՝ Տայք նահանգէն (Բարձր Հայոց Արեւելահիւսիս) կուգայ:

Հայք կ'զբաղին գլխաւորաբար վաճառա-

կանութեամբ և արհեստներով, նոյնպէս են Ցոյնք և Պարսիկք. Մահմետականքն կը պարապին նպարավաճառութեամբ և մանաւոր առով ու տրով. կան իրենց մէջ բաւական թուով թամբագործ, մսավաճառ, խաղաղորդ. սոքա կ'ապրին նմանապէս անշարժ կալուածոց եկամուտներով ու կառավարական զանազան պաշտօններով: Սոքա ձիավաճառութեան մէջ առաջին տեղին կը գրաւեն և ոմանք ձիու բնաւորութենէն և աղէկութենէն լաւ հասկնալուն մէջ համբաւ ունին:

* * *

Քաղաքիս վերայ այսչափ գրել բաւ համարելով անցնիմք իւր գիւղերուն, որոնց անուանքն նախ նշանակեմք, իւրեանց ունեցած Հայկական ձևոց պատճառաւ, և ապա բնակութեանց թուոյն մեծութեան կարգաւ իրենց վերայ խօսիմք:

* * *

Կարնոյ գաւառին վերաբերեալ գիւղերուն թիւն 45–50 ի կը հասնի և ամենամեծ մասամբ խառնաբնակ են, այսինքն Արմենական և Մահմետական տարրերէ կը բաղկանան. սոյն գիւղերն առ հասարակ դաշտային լինելով ժողովուրդն, նման լեռնականաց, կոկորդական ձայն չունի: Բնութիւնն, որպէս վերև յիշած եմ, իւր ցրտութեամբ կը զլանայ պտղոյ ծառ մը հասցնելոյ բնակչաց համար, որք Վասպուրական

նահանգի մերայնոց նման միայն երկրագործութեամբ չեն զբաղիր, այլ գեղեցիկ հեռատեսութեամբ շատերն ալ արհեստաւոր են, ինչպէս պղնձագործ, պղնձաջինջ (գալայճը), դանակագործ, բեւեռագործ, որմնադիր, հիւսն, պայտառ, կտաւագործ և ջորեպան:

## ԳԼ. ԻԵ.

### ԿԱՐՆՈՅ ԴԱՇՏԻ ԳԻՒՂԵՐՈՒ ԱՆՈՒԱՆՔՆ(*)

Կան, Օձնի, Ջիթահող, Ագարակ, Խարարդ, Կեղ, Ըլըճա, Հինձք, Ումուտում, Կըրիչք, Մուտուրկա, Արծաթի, Տիարիգոմ, Ծինիս, Ըղտաձոր, Ղարահասան, Թուանջ, Գոմք, Սօվուք-ջերմիկ, Դուընիկ, Շեխնոց, Թեթկիր, Գեղախոռ, Ապըլհինտի, Սէօկիւթլի, Պատիչէն, Գզըլքիլիսէ, Բլուր, Միւտիւրլիւկ, Սալաձոր, Թօփալ-չավուշ, Նոր-չէն, Կրճնկոց, Սնկառինջ, Երկնուստ, Երկայն-մասուր, Շեփիկ, Եօղպէկ, Արշնի, Վերին գիւղ:

Շարունակեմք այժմ մեր գիւղագրութիւ-

(*) Կարնոյ գիւղօրէից վերայ ընդհանրապէս խօսած ատենս չեմ ուզեր շնորհակալութեամբ չյիշատակել Արժ. Տէր Յովհաննէս քահանայ Վաղարշակերտցին, որոյ սոյն գիւղերու մեծ մասին վերայ հըրատարակած 40 երեսէ բաղկացեալ ՃԱՆԱՊԱՐՀՈՐԴՈՒԹԻՒՆՆ մեր առած տեղեկութիւնք մասամբ մը ճոխացուցին վերաբերութեամբ այն գիւղերուն, զորս անձամբ այցելելոյ ոչ պատեհութիւն եւ ոչ իսկ պէտք զգացինք:

նըն այս կողմերուն և այն կարգաւ, զոր վերև յիշած եմ, նշանակելով հանդերձ կարեւոր մասի դիրքն և հեռաւորութիւնը Կարնոյ քաղաքի նկատմամբ ։ Գիւղօրայքն մեծագոյն մասամբ կը գտնուին Կարնոյ դաշտի (որոյ ընդարձակութիւնն արդէն սահմանած եմք երես 136) յԱրևմըտեան հիւսիսակողմն, միջին հաշուով $3^1/_4$–4 ժամու շառաւիղով կիսաբոլորակ մի կը կազմեն, որոյ կեդրոնն գրեթէ զԿարին քաղաք համարելով ։

ԿԱՆ. — Գիւղս կը գտնուի յԱրեւմտահիւսիս Կարնոյ և անկէ 1 ժամ հեռաւոր, որոյ դաշտավայրի բոլոր գիւղերու մէջ բազմահայութեամբ և կարևորութեամբ առաջինն է, զոր կրնամք գաւառիս Գիւղաքաղաք կամ Մայրգիւղ սեպել ։ Բնակութեանց թիւն է 280, որմէ 200 տուն Արմենական են և 80 Մահմետական ։ Հայք ունին Ս. ՓՐԿԻՉ անուամբ կոկիկ եկեղեցի մը, կառուցմամբ ոչ դարաւոր, չորս հատ քահանայ և ծաղկոց, ուր ծաղկելոյ փափաքով կը դիմեն 120 ի մօտ ուսանողք, յորս 25–30 իգական սեռէ են ։ Բնակիչք աւելի արհեստաւոր են քան թէ հողագործ ։ Տեղւոյս մերայնոց մասին կ'աւանդեն թէ «Շիրակայ մեծ քաղաքէն (Անի) գաղթած են» և չ'կարծեմ որ սոյն լակոնական խօսքն ստուգութենէ հեռու լինի ։

ՕՉՆԻ. — Բնակիչ 160 տուն, որմէ 100 Հայկական և 60 Տաճկական են, Հայք յանուն Ս.

ԵՐՐՈՐԴՈՒԹԵԱՆ կառուցեալ ունին եկեղեցի մը . կայ նաև ծաղկոց մը , որոյ՝ մէջ 50՝ մանչ և մի քանի աղջկունք կը դաստիարակուին դեղջկական ուղղութեամբ ։ Տեղւոյս բնակիչքն ևս գրեթէ կիսով չափ արհեստաւոր են ։ Հայերն ունին ընտանեկան և ընկերական գովելի կեանք մը և իրարու հետ սիրով կ'ապրին ։

ՋԻԹԱՀՈՂ. — Ունի 100 տուն բնակիչ , մեծագոյն մասամբ Հայ և միացեալն Մահմետական ։ Մերայինքն ունին Ս. ԱՍՏՈՒԱԾԱՆԻՆ անուամբ գեղեցկակերտ եկեղեցի մը , որոյ մէջ կայ ճարտարարուեստ խաչկալ մի , զարդարեալ կրօնական խորհրդաւոր պատկերօք . սոյն ընտիր ձեռակերտն Կարնոյ հին արհեստաւորաց չէնքն է , որով մարդս դիւրաւ կրնայ գաղափար մի կազմել այս ժողովրդեան մտաւոր ճարտարութեան և արհեստական ունակութեան վերայ . ունին Նախակրթարան մը 50–60 արական և իգական սեռէ բաղկացեալ մանուկներով . գիւղս շատ անգամ դրսէն ուսուցիչ չունենալով՝ տեղական քահանայից ձեռամբ կը դաստիարակուի տեղւոյս նոր սերունդն , որ տակաւին կարեկցութեան արժանի վիճակ մ'ունի ։

Ջիթահողի սահմանէն կանցնի գետակ մը , որ կը բղխի Հիւսիսակողմի « խաչափայտի » լերանց ճեղքուածքներէն , ոլորապտոյտ շրջելով կը դառնայ յԱրեւմուտ և կը խառնի 'ի Մօրին(*) ։

(*) Սեւ գետոյ մի լայն տեղին դարբէ 'ի վեր մօ-

# ԳԼ. ԻԸ.

## ՇԱՐՈՒՆԱԿՈՒԹԻՒՆ ԿԱՐՆՈՅ ԳԻՒՂՕՐԷԻՑ

ԱԳԱՐԱԿ. — *Բնակութիւնք 105 տուն, յորմէ 70 Հայկական և 35 Տաճկական են: Հայք ունին* ՍՈՒՐԲ ՀՐԵՇՏԱԿԱՊԵՏ *կոչուած եկեղեցի մը, կայ 2 քահանայ և մէկ ժամկոչ: Գիւղս Ազգին տուած է մի գոհար Պ. Մկրտիչ Խաչիկեան՝ ազնիւ երիտասարդն, զգայուն և հեռատես . . . որ բնակութիւնն այժմ հաստատած է քաղաքին մէջ, ուր 'ի շարս ուսեալ մասին պատուաւոր տեղի մը կը գրաւէ և որոյ պապու վերայ եղած հետևեալ տեղեկութիւնք կարևոր կը համարիմ պատմել և ապա շարունակել.*

*Կարնոյ ընդհանուր գաղթականութեան ժամանակը (տես էջ 140). միմիայն այս Ագարակ գիւղի Հայերն իւրեանց տեղէն չշարժեցան, ըստ որում Քահեա-Թորօ (Թորոս) Խաչիկեանն կարող կը լինի տեղւոյ Հայերն հանդարտեցնել և միանգամայն դիմադրել Կարապետ Եպիսկոպոսի կրից բռնութեան, որով գաւառիս համայն Հայերն կամէր տանիլ 'ի Ռուսաստան. յիշեալ Եպիսկոպոսն երբ զԹորոն կրկին համոզմամբ և մասամբ մը սպառնալեօք կուզէ իւր նպատակին բերել, այս անգամին մեր ազնիւ Թորոն բարկութենէն Բաբելոնեան հուր կըտ-*

---

*բացած եւ ոչ թէ առանձին լճակ է, զոր յիշած եմք յերես 137:*

րած ոտքերն գետին կը զարնէ, նման ճշմարտախօս Գալիլէին Երկրագնդիս դառնալու վկայութեանն, և կը գոչէ ասելով «մենք աւելի նախապատիւ կը համարիմք մեռնիլ մեր Օսմանցու հողին վերայ և չ'թողուլ զհայրենիս քան թէ երթալ օտարին հպատակ լինելով՝ չունենալ տուն և տեղիք:» Այս վեհանձն պատասխանն համբաւ կը հանէ գաւառիս մէջ՝ մինչև որ կը հասնի ձէնէթ մէքեան Սուլթան Մահմուտի ականջը և անմիջապէս հրաման կընէ Կարնոյ նոյն ատենուան կուսակալ հռչակաւոր Իսէթ փաշային, որ պատուէ զհայ Թորոն, որոյ հաւատարմութեան հոգին զիւր համբաւն, որպէս ասացի, մինչև կայսեր ականջը հասուցած էր:

Կուսակալն կը կոչէ առ ինքն զանի (Հայ Թորոն) և շատ մը խալէթններ (պարգև) այս ազնիւ Հայուն տալէն ետքը անոր կը հագցունէ կարմիր և գեղեցիկ ծերանի մը և կը վերադարձընէ յիւր գիւղ ու մունետիկ հանելով ամեն կողմերը կը պատուիրէ թէ «ով որ ազարակ գիւղի բնակչաց, որք իրենց հայրենի օճախ սիրելով չեն զաղթած, վնաս մը հասցնելու լինի «չարաչար պիտի պատժուի» այսպէս ահա մեր հայրենասէր Թորոն առօք և փառօք 'ի գիւղն կը վերադառնայ և դրացի Մահմետականացմէ ամեն տեսակ արգանք ընդունելոյ բաղդին կը հադիպի և ահաւասիկ իր վերջի կտակն, զոր ըրած է մեռած պահուն «իմ մահուանէն ետքը եթէ

աշխարհիս գործերն դարձեալ պատերազմ կը բերեն մեր այս Երկրին վերայ, դուք սիրեցէ՛ք հոգւով և մարմնով զՕսմանցին, սիրեցէ՛ք ձեր Հայրենիք, որոյ օճախ քակողին դէմն իմ չորացեալ սոկրոտիք պիտի բողոքեն՝ այս աշխարհի մէջ Սուլթանին առջև, և 'ի հանդերձեալումն արդարոյն՝ և թող նա (դաղթող) երևի թշնամի թէ՛ մեր Տէրութեան, թէ՛ մեր Ազգին և թէ՛ մեր այս Ագարակին, ուր ծնած և սնած եմք գիւղովին»

Նահապետ Թորոն
Աքարակցի

ԽԱՐԱՐՋ. — Բնակիչ 90 տուն, յորմէ 60 Հայ և 30 Տաճիկ են։ Հայերն ունին Ս. ԱՍՏՈՒԱԾԱԾԻՆ անուն եկեղեցի մը, սիրուն տեսքով և ճաշակաւոր կառուցմամբ. իւր խաչկալն ճարտարարուեստ գործ մի է, նուրբ և ընտիր. 'ի ծերոց կ'աւանդի թէ «այս է Արծն քաղաք, հռչակաւոր և պատմական, բազմաթիւ եկեղեցիներով և հազարաւոր բնակիչներով». սոյն աւանդութիւնն ճշմարտութեան կը մերձի երբ գիւղիս շրջապատի ընդարձակ աւերակաց տեղերն 'ի նկատ առնուի, որոցմէ, նման Մանազկերտ քաղաքին, դուրս եկած են երբեմն հին բաղանեաց և այլ շէնքերու հետքեր, պղնձէ անօթք, այլ և այլ զարդերու նշաններ և Հելլենական դրոշմ կրող դրամներ. մենք թողումք տեղւոյս հին վիճակի նկարագիրն Լաստիվերտա-

ցւոյ ճարտար գրչին և անցնիմք յայլ գիւղ։

ԸԼԸՃԱ և ԿԵՋ (*). — Սոյն երկու գիւղերուն վերայ մեր Տեղագրութեանց Ա. Մասի երես 17–18 խօսած լինելով՝ աստ կրկնել աւելորդ կը համարիմ։

ՀԻՆՁՔ. — Կարնոյ յԱրեւելահիւսիս և անկէ 3 ժամու չափ հեռաւոր. բնակութեանց թիւը 80, որմէ 50 Լուսաւորչական Հայ, 20 Հռոմէական Հայ և 10 տուն Մահմետական։ Մերայինքն ունին յանուն Ս. ԽԱՉԻ՝ շինուած եկեղեցի մը բարձր բլրոյ մը կողին վերայ, շրջապատեալ բաղում տապանաքարերէ։ Տեղւոյս Հայոց գերեզմանատան մի եզերաց վերայ մատուռիկ մի կայ, ոյր նկատմամբ կը պատմուի թէ «Մեծն Ներսէս Հայրապետի ճգնարանն եղած է»։ Հինձք գիւղն ունի գետակ մը՝ որ կը բղխի մերձակայ լեռներէն. սոյն ջրոյ մէջէն գիւղացիք մանր ձկունք կ'որսան երբեմն։

ՈՒՄՈՒՏՈՒՄ (յոյս). — Կարնոյ լերանց Հիւսիսակողման ստորոտը կը գտնուի, շինուած ընդարձակ բլրոյ մը կողին վերայ, և բաւական լաւ տեսարանաւ. ունի 78 տուն, որմէ 50 Արմենական և 28 Մահմետական են։ Արմենականքն ունին Ս. ՅԱԿՈԲ անուամբ գետնափոր եկեղեցի մը, հին և շատ ողորմելի. եկեղեցւոյս վիճակին նայելով կարելի է ասել թէ իւր շինու-

(*) Կեզ անուան տեղ սխալմամբ Պազ գրուած է գործիս Ա. Մասի յիշեալ երեսի մէջ։

թեան տանը զԱստուած միայն գետնի տակ պաշտելոյ աղատ կրցած են լինիլ։ Երկու տարա-կրօն բնակիչք Թաղերով իրարմէ անջատեալ կը բնակին . . . ։

Տեղւոյս մերձակայ լերանց մէջ երբեմն «կոմ-ծուծ» կոչուած վայրի կենդանիք կ'երեւին, որոց մասին տեղացիք կը պատմեն թէ գառան չափ մեծութիւն ունի և երկայն պոչ մը, որով կը շըր-ջապատէ ոչխարի սրունքները, այնպէս որ խեղճ ոչխարն կը մնայ անշարժ և ինքն զնորա կաթ ծծելով կը թունաւորէ, որմէ այլեւս ոչ ոք կը համարձակի ուտել. գիւղացիք բժշկական այլ և այլ դեղեր 'ի գործ կը դնեն ոչխարէն այդ-թոյն դուրս բերելոյ համար. զոր օրինակ արիւն կ'առնուն և յաճախ սառի նման պաղ ջրով կը լուանան ոչխարի ծիծերն և այնպէս կը կթեն ու կը թափեն. սոյն գործողութիւնն մի ամսոյ չափ կը շարունակեն և ապա կը համարձակին այդ-ոչխարի կաթէն ուտել։ Կարնոյ միւս լերանց մէջ սոյն օրինակ վնասակար կենդանիք ց'արդ չեն տեսնուած ։

ԿՐԻՉԲ. — Բնակութեանց թիւն 75, որմէ 40 տուն Հայ և 35 Տաճիկ, են։ Հայերն ունին ՔՐԻՍՏՈՍ ԹԱԳԱՒՈՐ անունով պարզ եկեղեցի մը։ Գիւղէս 1/2 ժամ հեռաւորութեամբ քարայր մի կայ փորուած, զոր «քարաքիթ» կանուա-նեն, որոյ նկատմամբ անորոշաբար կաւանդեն թէ «Ցէհրատ անուն մէկէ մը մնացած է»։

ՄՈՒՏՈՒՐԿՍ. — Կարնոյ Հիւսիսակողմն, բնակիչ 74 տուն, որմէ 60 Հայ և 14 Տաճիկ են. Հայք ունին ՍՈՒՐԲ ՅԱԿՈԲ անուամբ բաւական ճաշակաւոր եկեղեցի մը, քահանայ և ծաղկոց։

ԱՐԾԱԹԻ. — Բնակութեանց թիւն 70, որմէ 10 տուն Լուսաւորչական Հայ են, 40 Հայ Կաթոլիկ և 20 Մահմետական։ Լուսաւորչականքըն ունին մի եկեղեցի, կառուցեալ յանուն ՍՈՒՐԲ ՆՇԱՆի. գիւղս քաղաքէն 4 ժամ հեռու է դէպ 'ի Հիւսիսակողմն և շինուած Տումլու լերանց ստորոտը. ունի ջերմուկ մը, որ կը ծառայէ յառողջութիւն այս կողմերու բնակչաց։

ՏԻՆԱՐԻԳՈՄ. — Բնակիչ 70 տուն, կէսէն աւելի Մահմետական. Հայկականքն ունին ՍՈՒՐԲ ՄԻՆԱՍ կոչուած պարզ եկեղեցի մը և խեղճուկ ծաղկոց մը, սոքա ունին նմանապէս գետնափոր եկեղեցի մը, ուր զԱստուած պաշտելոյ համար մինչեւ այժմ պէտք չեն զգար որպէս զգայեր են երբեմն։

ՃԻՆԻՍ. — Ունի 68 տուն, որմէ 20 Հայ և 48 Տաճիկ են. առաջինքն ունին ողորմելի եկեղեցի մը՝ շինուած ՍՈՒՐԲ ԳԷՈՐԳԱՅ անուամբ, կայ ծաղկոց մը, որ չունենալէն տասն անգամ աւելի գէշ է, սա կը տեսնուի 3–4 տուն Յոյն։

ԸՂՏԱՁՈՐ. — Շինուած լերանց միջավայրը. ունի 65 տուն, 35 Հայ են և 30 Տաճիկ. եկեղեցին ՍՈՒՐԲ ՅԱԿՈԲ. Գիւղիս մերձակայ լեռներէն կը բղխին մի քանի աղբիւրք, պաղ և անուշա

համ, որոնք գլխիվայր կը վազեն կարկաջասահ ընթացիւք 'ի դաշտն Կարնոյ և հոն կոռոգեն բաւական ուռենիք և բարդենիք ու միացմամբ երկու ջրաղացքներու ջուր տալով' կը թափին Կարնոյ դաշտի Մօրին մէջ ։ Գիւղիս յԱրեւմըտակողմն Հայոց հին գերեզմանատան մէջ փոքրիկ եկեղեցի մը կայ և աւանդութիւն կըսէ թէ «Յունաց Հերակլ կայսեր ժամանակը երբ կենաց փայտն գերութենէն կը վերադարձնեն, այս գերեզմանատունէն անցած ատեն նոր մեռած պատանի մը դագաղէն յարութիւն կառնու, այս պատճառաւ բարեպաշտ քրիստոնեայք աստ փառաւոր եկեղեցի մի կը շինեն և կանուանեն զայն ՍՈՒՐԲ ՅԱՐՈՒԹԻՒՆ 'ի յիշատակ տեսնուած հրաշիցն» այժմ ուխտատեղի է սոյն եկեղեցին, որ հաւանօրէն պէտք է յաջորդ եղած լինի փառաւոր նախորդի մը ։

ՂԱՐԱՀԱՍԱՆ. — Բնակութիւն 65 տուն, 30 Հայ և 35 Թուրք ։ Հայք ունին ՍՈՒՐԲ ԱՍՏՈՒԱԾԱԾԻՆ անունով եկեղեցի մ'աւանց ծաղկոցի, զոր ունենալոյ յոյսն ալ կը պակսի ։

## ԳԼ. ԻԹ

### ՇԱՐՈՒՆԱԿՈՒԹԻՒՆ ԿԱՐՆՈՅ ԳԻՒՂՕՐԷԻՑ

ԹՈՒԱՆՋ. — Բնակութիւն 60, որմէ 20 տուն Հայ, 33 Թուրք և 7 Հռովմէական. աստ կայ երկու եկեղեցի, մին մերայնոց և միւսն Հռովմէականաց ։ Մեր Հայոց եկեղեցւոյ շրջապատը

ի է հին քարերով, նշմարելի են նոյնպէս աւերակաց հետքեր ։

ՍՕՎՈՒՔ-ՋԵՐՄՈՒԿ. — Կը գտնուի Կարնոյ յԱրեւելահիւսիս 1 ժամ հեռաւորութեամբ. ունի 60 տուն, որմէ 25 Հայկական և 35 Թուրքական են. Հայք ունին բաւական ճաշակաւոր եկեղեցի մը՝ կառուցեալ Ս. ՀՐԵՇՏԱԿԱՊԵՏԻ անուամբ, մէկ քահանայ, իսկ դպրոց «Աստուած տայ». գիւղիս շրջապատը լի են հանքային զանազան ջրեր, տաքութեան բարեխառնութեամբ իրարմէ տարբեր, որպէս և համով և գոյնով։ Սոյն հանքային ջրոց վերայ աւազաններ շինուած են, յորս ժողովուրդ (թէ քաղաքացի և թէ գիւղացի) կը լողանան յառողջութիւն, զոր յիրաւի շատ անգամ կը գտնեն ։

ԴՈՒԸՆԻԿ. — Բնակութիւն 55, 40 Հայ և 15 տուն Թուրք. Հայոց եկեղեցին է ՍՈՒՐԲ ԱՍՏՈՒԱԾԱԾԻՆ, որ ամեն տեղերու սովորական ՑՈՅՍՆ և ԱՊԱԻԷՆՆ է և այս ամենամեծ իրաւամբ. գիւղս ծաղկոց մ'ունի շատ ողորմելի և ժողովուրդ իրապէս ողբալի, որոց վիճակն աւելի իւրեանց ռէխոռբեան տալու է քան թէ դրացի Թրքաց ընկերական կացութեան, որ քաղցր բնութենէ զուրկ չէ ։

ԴՈՄՔ՝ (մակաղատեղիք) — Ունի 53 տուն, մեծագոյն մասամբ Թրքական. Հայկականաց եկեղեցին է ՍՈՒՐԲ ՑԱԿՈԲ, կայ քահանայ մը, իսկ ծաղկոց «Աստուած տայ» և ժողովուրդ

ջերմեռանդ է Աստուծով և բնաւ դպրոցով։

ՇԵԽՆՈՑ. — Կը գտնուի Կարնոյ յԱրեւելա-հիւսիս, վերոգրեալ Կան գիւղաքաղաքէն 20 վայրկենի հեռաւորութեամբ. բնակութեանց թիւն է 50, որմէ 40 Արմենական և 10 Թրքա-կան են. Արմենականքն ունին կոկիկ եկեղեցի մը, անուն ՍՈՒՐԲ ՅՈՎՀԱՆՆԷՍ, ժողովուրդն կրօ-նասիրութեան չափ չունի ուսումնասիրութիւն. գիւղիս մէջ կը պահուի մագաղաթի վերայ գրը-ուած ձեռագիր Աւետարան(*) մը։

ԹԵԹԿԵՐ. — Ունի 48 տուն, 40 Տաճիկ և 8 Հայ. վերջնոյն համար եկեղեցի և դպրոց «Աստուած տայ»։

ԳԵՂԱԽՈՒ. — 45 տուն, որմէ 35 Հայ և 10 տուն Թուրք են։ Հայք ունին քարուկիր ե-կեղեցի մը՝ կառուցեալ յանուն ՍՈՒՐԲ ՍԱՐԳԻՍ զօրավարին . . . ։

ԱՊԸԼՀԻՆՏԻ. — Բնակ. 44 տուն, 20 Հայոց, 24 Տաճկաց, առաջինք ունին ՍՈՒՐԲ ԱՍՏՈՒԱ-ԾԱԾԻՆ կոչուած եկեղեցի մը, դպրոց չունին։

ՍԷՕԿԻԻԹԼԻ. — Տուն 42, որմէ հանենք գլխաւոր առաքելոց թուով Հայ, մնացեալ 30 տուն Տաճկական են։ Տեղւոյս առաքելաթիւ Արմենական բնակութիւնքն կը պարծին ՍՈՒՐԲ ՅԱՐՈՒԹԵԱՄԲՆ, որ իրենց եկեղեցւոյ անունն է,

(*) Սոյն Աւետարանն Նւագրի անուն կրօնաւորին ձեռամբ գրուած է 'ի Հայրապետութեան Տեառն Պետ-րոսի գետադարձի։

առքա չունին վերնատուն, ուր հաւաքուելով Թերեւս մի օր հոգւով սրբուիլ լեցուին և սկսին քարոզել Երկրի ժողովրդեան ՀԱՅ և ԲԱՆ։

ՊԱՏԻՇԷՆ. — Բնակութիւն 40 տուն, յորմէ 30 Հայկական և 10 Մահմետական են. վերջինքն առաջնոց և առաջինքն վերջնոց հետ լաւ յարաբերութեան մէջ են։ Մերայինքն ունին Ս. ԳԷՈՐԳ անուամբ կոկիկ եկեղեցի մը, որոյ քահանայի տգիտութեան տխուր հետեւանքը ժողովուրդն պարտաւորուած է կրել, այս պատճառաւ գիւղիս Հայերն մարդոցմէ ալ և գրեթէ Աստուծմէ ալ ձեռք քաշելոյ վրայ են։

ԳԸԶԸԼ ՔԻԼԻՍԷ (կարմիր եկեղեցի). — Բընակութիւն 40 տուն, կիսով չափ Մահմետական. Հայերն ունին մի եկեղեցի՝ անուամբ Ս. ՆՇԱՆ, որմէ, 'ի զուր, նշան կը խնդրեն առանց դպրոց ունենալոյ և առանց գրի զօրութեան հաւատալոյ։ Ես չեմ կարծեր որ սոյն օրինակ անխելք որ և է հպատակ մը, լուսաւորութեան հետամուտ եղող մեր Օսմ. տիրող Կառավարութեան պատուաբեր կարենայ լինել։

ԲԼՈՒՐ. — Բնակութիւն 38 տուն, 20 Հայ և 18 Մահմետական. առաջինք ունին եկեղեցի մը Ս. ԳԷՈՐԳ անուն, իսկ դպրոց արդէն անուն չունի։

ՄԻՒՏԻՒՐԼՈՒԿ. — Բնակութիւն 37 տուն, որոյ միաւոր Թուոյն չափ Հայ և տասնաւորին չափ Տաճիկ են. Հայք եկեղեցի և դպրոց չու-

նին ։ Գիւղիս մերձակայ լերինքն ունին հետաքրքրական դիրքեր , զորս բնութեան խորհրդաւոր ձեռքն պատրաստած է ։

ԹՕՓԱԼ–ՉԱՎՈՒՇ .— Բնակութիւն 37 տուն, որմէ 8 տուն Արմենական և 29 Մահմետական են ։ Տեղւոյս Հայերն ունին Ս. ՅՈՎՀԱՆՆԷՍ (Հընադմնդութիւն) կոչուած պարզ եկեղեցի մը , որոյ այդ փոքրաթիւ ժողովուրդն հոգւով ջերմեռանդ է , մօք 'ի խաւարի և մարմնով չքաւոր ։ Իրենց դրացի մահմետականքն փեթակ ունին , որմէ կը հանեն պատուական մեղր 'ի վաճառ և դրամ (մետաղ) ունեցողներն միայն կարող են ճաշակել զայն . իսկ անկուածն 'ի հեռուստ միր ծռած, ուղածին չափ թող նայէ , եթէ գործ չունի ։

ՍԱԼԱՉՈՐ . — Բնակութիւն 36 տուն , որմէ 8 Հայ և 28 Թուրք են ։ Հայերն քահանայ և դպրոց չունին , այլ ունին եկեղեցի մը Ս. ՍԱՐԳԻՍ զօրավար ։ Գիւղս նախապէս բազմահայ եղած է , որպէս իւր շրջապատի հնական նշմարանքներն և պառկած տապանաքարինքն ցոյց կը տան ։

ՆՈՐ–ՇԷՆ . — Բնակութիւն 32 տուն , որոյ վերջի միաւոր Թուոյն եթէ ամբողջը բաժնենք , պիտի ունենանք քանորդին չափ Հայ , և նոյնչափ ալ Թուրք ։ Մեռեալ մօք Հայերն ունին Ս. ՅԱՐՈՒԹԻՒՆ անուամբ եկեղեցի մը փայտաշէն , զոր կառուցած է Անտոն անուն

Ռուսահայ մը, 'ի յիշատակ իւր ծնողաց։

ԱՐԲՈՒՆԻ. — Բնակութեամբ նախորդին հաւասար, Հայերն 20 տուն են Ս. ՅԱԿՈԲ եկեղեցիով, դպրոց չ'ունին և քահանայ քիչ անգամ կունենան։

ԿՐՃՆԿՈՑ. — Բնակութիւն 30 տուն, կիսով չափ Հայ, որք ունին եկեղեցի մը Ս. ԽԱՉ անուամբ, որ պաշապանն է իրենց թէ 'ի գիշերի և թէ 'ի տուընջեան. դպրոց չ'ունին ունենալոյ յոյսին հետ։

ՍՆԿԱՌԻՆՋ. — Բնակութիւն 30 տուն, որմէ 10 Հայկական և 20 Մահմետական, առաջինք ունին եկեղեցի մը Ս. ՄԻՆԱՍ կոչուած։

ԵՐԿՆՈՒՍՏ. — Բնակութիւն 28, որմէ 5 տուն Հայ և 23 Տաճիկ են. առաջինք ունին մի եկեղեցի յանուն Ս. ԳԱԲՐԻԷԼ ՀՐԵՇՏԱԿԱՊԵՏԻ։

ԵՐԿԱՅՆ-ՄԱՍՈՒՐ. — Բնակութիւն 26 տուն, յորմէ 20 Տաճիկ են և 6 Հայ, առանց եկեղեցւոյ և դպրոցի։

ՇԵՓԻԿ. — Բնակութիւն 25 տուն, որոյ միաւոր թիւն Մահմետական է և տասնաւորն Հայկական, որք ունին ողորմելի եկեղեցի մը։

ԱՐՇՆԻ. — Բնակութիւն 20 տուն, յորմէ 17 Հայ և 3 Տաճիկ են. Հայք ունին Ս. ՄԻՆԱՍ ըսուած եկեղեցի մը, ուր առաւօտ և երեկոյ խեղճ քահանայն կ'աղօթէ և կը յուսայ . . . ։

ԷՕԶՊԷԿ. — Ունի 17 տուն, որմէ 7 Հայ և 10 Տաճիկ են։ Այդ 7 մահացու [illegible] թուով

Հայ բնակիչներն ունին մի եկեղեցի յանուն Ս. ԹԱԴԷՈՍ և Ս. ԲԱՐԹՈՒՂԻՄԷՈՍ առաքելոց ։

ՎԵՐԻՆ ԳԻՒՂ. — Բնակութիւն 15 տուն Հայ և եկեղեցին Ս. ՀՐԵՇՏԱԿԱՊԵՏ ։

*
* *

Կարնոյ գաւառի վերոգրեալ 40 գիւղերէն զատ կան տակաւին մի քանի աննշան գիւղեր, մեծագոյն մասամբ Թըրքական ։

Որպէս յայտնի կը տեսնուի, գաւառիս բոլոր գիւղերն յանցեալումն ունեցած են համեմատական բազմահայութիւն մը, որ ներկայիս մէջ շատ նուազած է (*), 1829 ի ընդհանուր գաղթականութեան պատճառաւ, որոյ առաջք նոյն ժամանակի (ամիրայութեանատեն) ազգային Վարչութիւնն կամ Պատրիարքն կարող էին առնուլ, որպէս կ'առուգեն Կարնոյ խելահաս և հեռատես անձինքն, և չեն առած 'ի վնաս Ազգին և Տէրութեան հաւասարապէս ։

*
* *

Ամփոփելով գաւառիս դաշտի գիւղօրէից բնակութեանց թիւն կրնամք ունենալ 2000 տուն Հայկական և 1200 տուն Մահմետական. 36 եկեղեցի և ծաղկոց գրեթէ նոյնչափ, վերջինքն ամենամեծ մասամբ անուանական են ։ Մահմե-

(*) Խօսքիս ճշմարտութիւնն ինքնին կը տեսնուի, երբ իւրաքանչիւր գիւղի բնակութեանց թուոյն քով կը նշանակեմք եկեղեցին եւ իւր հին տապանաքարինք կամ գերեզմանատեղիքն ։

տականքն թէև լինին եկողք, սոյն ջրվէժն տեղադարութիւն պարտք կը դնէ վրաս խոստովանել՝ որ իւրեանց ունեցած յարաբերական վիճակէն Երկրի տարրական կամ բնիկ ժողովուրդն բաւական գոհ լինելոյ պատճառներ ունի։

Կարնոյ դաշտի Հայ գիւղացին արժանի է քաջալերութեան, զի ճարտար և աշխատասէր է ու բնականէն ներշնչեալ մտային այնպիսի տրամադրութիւններէ և ձգտումներէ, որով կարող է արհեստական զարգացման մէջ մեծ տեղի մը գրաւել։ Բաւական թուով Հայեր սեփհական հող չունենալով այս և այն գիւղերու մէջ կաշխատին այլոց. և ընդհանրապէս սովորութիւն չունին պանդխտութեան գնալ և դեգերիլ յօտարութեան շատ տարիներ և ընտանեսիրութեան . . . . այդ զօրաւոր զգացումն՝ որ առանց չուանի զիրենք կը կապէ գտնուած տեղը, կարծէ գտնուիլ Հայաբնակի այլ գաւառաց անհեռատես Հայոց սրտերուն մէջ. վասն զի պանդխտողքն, ինչ ազգէ կը լինին թող լինին, ուղղակի և դրականապէս վնաս կը հասցնեն թէ իւրեանց ազգին և թէ միանգամայն տիրող կառավարութեան գանձուն, և բաւս այնչափ պարզ ու դիւրըմբռնելի է որ բացատրութեան բնաւ պէտք մը չկայ։

*

* *

Ազգային կեդրոնական Վարչութեան որոշմամբ այժմ Սպեր, Խնուս, Կեղի, Դերջան, և

[…]րս, որք մասնաւոր փոխանորդներով կը կառավարուին, մտած են ընդգերիշխանութեամբ Կարնոյ Առաջնորդութեան (այդ մերձակայ վիճակաց Ազգային գործերուն դիւրութիւն մ'ընծայելոյ նպատակաւ)։

Կարնոյ Առաջնորդութիւնն կուսակալութեան կեդրոնը գտնուելով՝ իրաւամբ պարտաւորեալ է, Ազգային արեան բնական մղումէն, այդ Կուսակալութեան սահմանին մէջ գտնուող այլ վիճակաց Հայերուն գործոց օգնել՝ կառավարութեան հետ անոնց ունեցած յարաբերութեան մէջ և այդ վիճակներն են Արեւելահիւսիսէն Պայազիտ Արեւմուտէն Երիզա կամ Երզնկա, Հիւսիսային Արեւմուտէն Բաբերդ։

## ԳԼ. Լ.

### ԿԱՐՆՈՅ ԴԱՇՏԻ ՎԱՆՕՐԱՅՔ

Ա. ՍՈՒՐԲ ԼՈՒՍԱՒՈՐԻՉ. — Կը գտնուի Կարնոյ Արեւելահիւսիս և անկէ $1^{1}/_{4}$ ժամու չափ հեռու, մերձ Մուտուրկա կոչուած գիւղին (ոյր վրայ խօսուած է)։ Գմբեթաւոր սոյն մենաստանըն կառուցեալ է բարձր բլրոյ մը կողին վերայ, որ Կարնոյ դաշտի Արեւելեան գօտեւոր լերանց միոյն գրեթէ պորտ կը համարուի, շինուած է սրբատաշ քարերէ, ունի գեղեցիկ տեսարան և բաւական ծառաստան, զուարճալի վայրերովը։ Վանքէն 2–3 քարընկէց հեռաւոր փոքրիկ ջրըվէժ մի կայ, որ խշրտուքով մը վար թափած

առեն աղմուկ՜ կարձակէ.

ցիք « դող դող » կանուանեն , որոյ մօտակայ սր յարմար տեղը աւազան շինուած է ամառ. եղանակին մէջ լողանալոյ համար ։ Վանքն համայն Կարնեցւոց ուխտատեղին և միանգամայն զուարճավայրն է ։

Կաւանդեն թէ երբ Տրդատի հրամանաւ մեր սուրբ Գրիգոր Լուսաւորիչ կը տարուի յԱրտաշատ քաղաքն հոն խոր վիրապի մէջ ձգելոյ, այս կողմէն ճանապարհորդած լինելով՝ մի գիշեր աստ կիջեւանի , ետքէն բարեպաշտ քրիստոնեայք յանուն նորա (Լուսաւորչի) շինել կըտան զայս մենաստան և ՚ի յիշատակ խոր վիրապին գուբ մ՚ալ փորել կըտան . սոյն գուբն այժմ կը տեսնուի եկեղեցւոյ աւանդատան մէջ , 2 մեթր խորութեամբ ։

Ի Հնումն Կարնոյ Առաջնորդանիստ տեղին եղած է այս վանքն ։

Բ. Ս. ԱՍՏՈՒԱԾԱԾԻՆ կամ ԿԱՐՄԻՐ ՎԱՆՔ. — Կարնոյ Հիւսիսակողմն 3 ժամու հեռաւորութեամբ ։ Սոյն մենաստանն երկրաշարժէ շատ փոփոխութիւնք կրած և ապա վերաշինուած է . այլ ոչ այնչափ հոյակապ , որոյ առաջին հիմնարկութիւն մեծն Ներսէս Հայրապետին կընծայեն և աւանդութիւն կըսէ թէ « Մեծն Ներսէս Հայրապետ իւր ճգնարանին մէջ (Հինձք գիւղի գերեզմանատան եզերքը՝ որ վանքէս շատ հեռու չէ,) կը տեսնէ յերազի զՏիրամայրն Աստուա-

ծածքին ծիրանազգեստ, այս պատճառաւ յանուն Աստուածածնայ կառուցանել կըտայ այս Մենաստան» որմէ 20 վայրկենի չափ հեռու կը գտնուին Հռիփսիմեանց քարայրք (բաղկացեալ 2–3 քարանձաւներէ), յորս սուրբ կուսանք աղօթիւք ժամանակ անցուցած են երբեմն. այս տեղերը կան ընտիր ջրեր, հին և նուիրական աւերակաց նշաններ և գերեզմանք։

Գ. Ս. ԽԱՉԿԱՑ ՎԱՆՔ. — 'Ի Հիւսիսակողմն քաղաքին և անկէ 4 ժամու չափ տարակայ։

*
* *

Կարնոյ յիշեալ երեք վանքերն թէպէտև ունին ընդարձակ արտօրայք և մարգօրայք, ու մասնաւոր եկամուտներ բարեպաշտ ուխտաւորաց երթեւեկութենէն, այսու ամենայնիւ գաւառիս բարոյապէս օգուտ մը տալոյ վիճակի մէջ տակաւին չեն գտնուեր դժբաղդաբար, միայն թէ ց'արդ կը պահպանուին, որով ամայանալոյ ամենաողբալի կացութենէն փրկուած (*) են։ Գոհ եմ ասել որ այժմ այդ վանքերն կը պատկանին Կարնոյ մեր Ազգային Գաւառական Վարչութեան ուղղակի իրաւասութեան, որով և տրամադրութեան ներքև, և Գեր. Առաջնորդ՝ Հայր Օրմանեան զայնս իւր խնամոց յատուկ առարկայ ընելով՝ Վարչութեան հետ իմաստուն և

---

(*) Այս ալ կրնայ ուրախառիթ պարագայ մը համարուիլ բաղդատմամբ մեր յայլ գաւառս ուղեւորած առթիւ տեսած քանի մ'ամայացեալ վանօրէից հետ։

օրինակելի որոշումն ըրած են , զոր աստ մի քա-
նի տողով կ'ամփոփեմ « այդ վանքերու եկա-
մուտներն հաւաքել և զայնս անտեսագիտական
բարւոք վիճակի մը մէջ դնել, որոնցմէ գոյա-
ցած եկամուտովն մի ընծայարան բանալ Աստ-
ուածածնայ Կարմիր վանուց մէջ », ուր ծաղկե-
ցընել զյիշատակն և պսակել զնպատակն Մեծին
Հայրապետին Ներսիսի , ում կ'ընծայեն արդէն
սոյն վանուց նախնի կառուցումն , զոր վերև յի-
շեցի ։ Աստ պարտք կ'զգամ հրապարակաւ գո-
վել ամեն անոնք , որք մղում կը տան 'ի կա-
տար հանելոյ զայդ գործն , որ ընդարձակ գա-
ւառիս Հայ գիւղացւոց մտաւոր խաւարն փա-
րատելոյ ունի ճշգրիտ բնութիւն մը և այսէ շահն
Ազգային և շահն Կառավարութեան , զորս 'ի-
բարմէ կը նկատեմ միշտ անբաժան ։ Եւ միթէ
բնական չէ՞ և չե՞մք տեսներ ամեն օր՝ որ երբ
Երկնից Արեւն , յառաւօտեան պահուն, իւր լու-
սատու դէմքն մեր Աշխարհին ալ ցոյց տալով
հոն թագաւորած խաւարն անմիջապէս տեղի կը
տայ և դարձեալ ո՛վ տեսաւ զայդ Արեւն , որոյ
ծագած լոյսն նախ լերանց բարձունքներէն չ'ըս-
կըսէր և հետզհետէ չ'ծաւալէր իրմէն ցածր (խո-
նարհ) տեղերը և մինչև իսկ իւր ստորոտը . ա-
հա՛ մի բնական , որով անժխտելի օրինակ , որոյ
մէջ ամեն կեդրոնական քաղաքներն (զորս մենք
լերանց գագաթներուն նմանցուցինք , որպէս և
գիւղերն՝ նոյա ստորոտներուն) , իւրեանց բա-

ժինն և պարտականութիւն կրնան տեսնել, վերաբերութեամբ մեր գիւղացի մանկանց լուսաւորութեան և կրթութեան գործին :

*
* *

Կարնոյ մերձ, կէս ժամ հեռու, «Ապարահման ղազի» կոչուած ուխտատեղի մի կայ, որ կանոնաւոր մատուռ մի է քարուկիր, որոյ մէջ կայ գերեզման մը, որ կը գտնուի Մահմետականաց ձեռքը, մեր Հայերն ևս յարգանք կընծայեն այդ դամբարանին, այլ նկատմամբ կը հաւատան լինիլ, «Հայ նահապետի մը գերեզման» սոյն կէտն թէ ինչ աստիճան ստոյգ է, վաւերական բան մը չ'կայ :

Կարնոյ և իւր շրջակայքը ց'արդ պէտք եղածին չափ հնախուզական հետազօտութիւնք չէ եղած և 'ի նուրբ խուզարկութեան բազում յայտնութիւնք յուսալի են :

## ԳԼ. ԼԱ.

Հայ գիւղացւոց տարեկան կենաց չորս եղանակէ
համառօտ նկարագիր(*)

### ԳԱՐՈՒՆ

### ՄԱՐՏ, ԱՊՐԻԼ, ՄԱՅԻՍ

Գարուն երբ իւր առաջին նշաններն ցոյց կը

(*) Մենք կը խօսիմք ընդհանրապէս մեր ուղեւորած գաւառներու գիւղօրէից վերայ, 'ի նկատ չ'առնելով այն մասնաւոր տարբերութիւնքն, զորս այդ

տայ, Հայաբնակ գաւառաց Հայ գիւղացիներու աշխատութեանց ժամն հնչելոյ վրայ կը լինի։ Մարդիկ դուրս կ'ելնեն իւրեանց խոնարհ բնակարաններէն և ոմանք ևս գետնափոր տուներէն, յորոց շատ տեղերը համաձայն են Պլինիոսի պատմածին։ Ամենքն միահամուռ աշխատութեան կը պատրաստուին, արք և կանայք, ծերք և տղայք, երիտասարդք և կուսանք իբար անցման մէջ են. խոփն և արօրը, գութանն և վիծկին կը չինուին հետղհետէ։

Խոփաղի (անասուն դարմանող մշակ) այս ատենուան գործեր.— Մինչև ց'արդ աշխատաւոր եզներ և գոմէշներ ախոռներու մէջ հանգիստ կ'առնէին նախորդ տարուան չարաչար աշխատութենէն, մի քանի օր ևս տակաւին բանտարկուած են այդ անասունքն, որոնք դարնան մերձենալն զգալով՝ բնազդօրէն ուրախութեան ցոյցեր կ'ընեն և ոտքերնին գետին զարնելով որոտումներ կը հանեն։ Անասնապահներն կը կերցնեն անասնոց, սովորականէն աւելի, կուսպ (կտաւատի մէջէն ձէթ հանելէն յետոյ մնացեալն), գոմէշներն կրկին և կրկին ձէթով կ'օծեն, որպէս զի շուտով պարարտանան, զի աշխատութեան ժամերն կը մերձին։

*
* *

---

գաւառներն, մի եւ նոյն սովորութեան վերաբերութեամբ, իրարմէ աւելի կամ պակաս կրնան ունենալ եւ երբ տեսնեմք, որ այդ տարբերութիւնքն աչքի զարնելու չափ զգալի են, կը նշանակեմք ո՛ւր որ պատահին։

Խոտաղներն, որք իւրեանց հոգւոյն պէս կամ աչաց լուսոյ նման, ամբողջ ձմեռը, զանասունս դարմանեցին, առանց ախոռէն դուրս հանելոյ, կ'սկսին պարբերաբար դուրս հանել զանոնք և ոչ թէ աշխատցնելոյ, այլ միայն տանիլ յաղբիւր 'ի ջուր, ըստ որում ցարդ ախոռի մէջ ջուր կը խմցնէին անոնց և երբ այդ հեղ և անլեզու կենդանիներն դուրս կելնեն իրենց 6 ամսեայ արգելանոցէն օր և Արև կը տեսնեն, այն առեն հետաքրքիր և սիրուն եղանակաւ մը ցատկելով և խայտալով կը յայտնեն դարձեալ ուրախութիւննին, անասնոց այս ցատկելն կամ խայտալն «տըճիկ» կանուանեն և բայն «տըճկել»։ Անասնոց կարգին մէջ գոմէշներն աւելի զգուշութեամբ դուրս կը հանեն, որք այլ անասնոց նման, արձակ ու համարձակ չեն թողուր. վասն զի կրնան մարդուս վնասել կոխկռտելով կամ գլխոյ կատաղութեամբ. առ այս մեր գիւղացի կտրիճ մշակներն ի՞նչ կընեն. — Հպարտ զգացմամբ մը թեւերնին սօթտած՝ գոմէշի վզէն կը կախեն մի կարճիկ դերան, զոր «կոճ» կ'անուանեն, մի և նոյն առեն երկու մշակներ կամ խոտաղներ չուան նետելով գոմէշի գլուխը, և երկու կողմանէ կը բռնեն ամուր ու այսպէս ծանըր ծանր կը տանին 'ի ջուր. սոյն օրինակ գոմէշներն «մօլի» անուն կը կրեն, որոնց ճակատ և ոմանց ևս պոչի ծայր ու չորս ոտքերն բնականէն ճերմակ կը լինին, այդ ճերմակ տեղին կանուանեն «պաշ»։

### Խամախանէս (խամահանէս)

Գարնան սկիզբը անասուններն մի քանի անգամ ել և մուտ ընելէն յետոյ, և որովհետև ամբողջ ձմեռ մը կերան ու խմեցին անաշխատ, մէկէն 'ի մէկ լծան տակ մանելոյ չեն խոնարհիր և կապստամբին. գիւղացիք ունին մի յարմարագոյն սովորութիւն. այդ անասուններն աշխատութեան ընտելացնելոյ համար. շատ փուխր (կակուղ, դիւրափշրելի) հողեր կը վարեն գրեթէ անկանոն եղանակաւ մը, մեր գիւղացիք այդ աշխատութիւնն «խամախանէս» կանուանեն։

### Գիւղացւոց ընկերքն այս տարենուան

Գիւղացիք յաճախ կ'երթևեկեն 'ի քաղաք (որում կը պատկանին կամ գիւղին աւելի մօտ է) ընկեր մը գտնել, որմէ իրենց գարնան համար պէտք եղած դրամն առնուլ. շատերն դժբաղդաբար այնպիսի անսիրտ մարդոց ճիրաններու մէջ կիյնան, որոնցմէ առած փոքրիկ գումարին փոխարէն յետոյ շարունակ տալով տալով չեն կարող պարտքէ ազատիլ։ Հայ գիւղացւոյ մահու և կենաց օրերու սկիզբն է. նա ընաւ չնայիր առած դրամի վերադրի (տոկոս) շատին կամ քչին. այլ անհաշիւ սակարկութիւն մը կընէ, ինչպէս որ յարմարի և երբեմն իսկ դրաւ տալով արտ կամ այգի, եթէ ունին։ Այսուհետև առած ստակն պէտք չեղած տեղը բազում անգամ կը ծախսէ միամտաբար կամ աւելի ուղիղ

կը լինի ասել ողբատարար. խիստ շատերու համար արդէն ԽՆԱՅՈՒԹԻՒՆ ըսուած բանն երբեք նշանակութիւն չունի, նորա աչք ԱՌԱՏ է սիրտն ՀԻՒՐԸՆԿԱԼ և ձեռք ԲԱՑ ։ Գիւղացին այդ գրամոլին իւր երկրագործական վիճակի պէտքերն կը հոգայ, զի նա չունի ընտանեկան ֆոնբէզլներ, որոց մասին բան մը գրելն աւելորդ է, բաւական համարելով Մէճիտլուի գեղջկուհւոյն և իւր պառաւ մեծ մօր նկարագիրն, որ իւր համառօտութեամբն ընդարձակօրէն կը պարունակէ Արմենական գիւղացւոյն տնական կենաց պատկերն (տես էջ 75 և Գլ. ԺԳ) ։

## Գլ. ԼԲ.

### ԳՈՄՇԱԿՈՒԻ

Գիւղացիներն վերոյիշեալ եղանակաւ զանասուն կանոնաւոր աշխատութեան վարժեցնելէն ետքը գիւղին մէջ մասի գոմէշ ունեցողներն իրարու հետ կը խօսին, իւրեանց գոմէշներն հանել 'ի կռիւ ։ Գիւղացիք արդէն կիմանան, զի խօսքերնին ծածուկ չէ և ես յիմ ուղեւորութեան բնաւ չտեսի խորհրդապահութեան մի նշոյլ այդ Հայ մարդոց քով, ձայն կը տարածուի գիւղի ամեն կողմը թէ այս ինչ անձանց գոմէշներն այս ինչ տեղ կռիւ պիտի ընեն. ահա հոս է մեր Աշխարհի Հայոց գեղջկական կենաց մի հետաքրքրական կողմն, որ իրենց մէջ ամենուն առ հասարակ սիրելի է ։ Երբ որոշեալ

ժամն կը հասնի , երկու գոմշատարք հրաման կ՚ընեն մշակներուն թէ « դուրս հանեցէ՛ք ՄԵՐ մոլիներն և բերէ՛ք այս ինչ արտի մէջ (տեղւոյ անուն տալով) , ուր պիտի թողումք զանոնք 'ի կռիւ » . մշակաց արդէն ուզած բանն է , անմիջապէս տունը կը վազեն ուրախական ցոյցերով . երկու կողմանց մշակներն մոլիներու գլուխը դրուած չուաններու ծայրերէն կը բռնեն երկու կողմանէ. կոճն տակաւին գոմէշի վզէն չ՚հանած՝ ախոռներէն դուրս կը հանեն և կը տանին դէպ 'ի յայն տեղին , ուր պիտի լինի մեր գիւղացւոց գոմշակռիւն , զոր տեսնելոյ փափաքով մեծ և փոքր , արք և կանայք խուռն բազմութեամբ հոն կը դիմեն ։ Այս պահուս գոմշատարք ձեռքերնին ետեւնին դրած՝ վեհանձնօրէն կը կենան բազմութեան մէջ . մշակներն և մոլիներն բերած և պատրաստ կը կենան՝ անհամբեր սպասելով տեարց վերջնական հրամանին . վերջապէս հրամանն կ՚արձակուի . խոտաղներն զգոմէշս յարմար դիրքով մը կը կեցնեն , կոճերն վար կ՚առնուն վզերէն և իրարու մօտեցնելով կը տան ճակատ ճակատի , չուաններն քակելով իրենք ետ կը քաշուին . մոլիներն կռիւնին կը շարունակեն և կարելի է ասել 3-4 ժամէն աւելի ։ Գիւղի երիտասարդներն երկու կողմէն չուաններ ձեռքերնին բռնած՝ զգուշօրէն կը կենան , որպէս զի այդ երկու կռուասէր անասունք երբ զիրեար վնասելոյ չափ յառաջ երթան, յաղ-

թութիւնն տակաւին անորոշ մնացած , անմիջապէս իրարմէ զատեն ։

Ազնիւ վերծանող , այժմ մեր մօլլիներն տակաւին կռիւնին շարունակելոյ վերայ կը գրտնուին . տէրերն աչալուրջ հսկողութեամբ կեցած կը նային գործի վախճանն տեսնել , սիրտերնին կը նետէ իւրեանց այդ անասնոց յաղթութիւն տանելուն և կամ պարտութիւն կրելուն համար . վերջապէս կամ կռիւն երկարելով իրարմէ կը բաժնեն , կամ 'ի նոցանէ մին կը փախչի , որով և հանդէսն վերջ կը գտնէ . ներկայ եղողներն կը վերադառնան տուներնին և ոմանք ևս կը շնորհաւորեն զյաղթողին տէր , որոյ դէմքի ամեն կողմը կը տեսնուի բնական մի զուարթութիւն , իսկ յաղթուողի տիրոջ վերայ կը տիրէ խորին տրտմութիւն մը ։

Գիւղացւոց բուն գարնան գործեր

Խամահանդէսն և գոմշակռիւը վերջացած են , գիւղացիք յաճախակի 'ի դաշտս երթևեկել կ'սկսին , ոմանք գարընցան կ'ընեն և ոմանք աշընցաններն կ'ոռոգեն, եթէ ջրարբի են , նոյնպէս խոտաւէտ տեղեր և մարգեր , եթէ հորիզոնական դիրք ունին ու ջրոց ներքև են ։ Առաւօտեան կանուխ զոյգ զոյգ եզներն լծած , արօրով , խոփով , գութանով , վիծկիով , կենդանեաց ցորեկուան համար սնունդով (զի այս առեն դաշտերն զկենդանիս գոհացնելոյ չափ չ'ունին տակաւին բոյսեր դուրս տուած) և ա-

ռատ հացով կ'երթան իւրեանց աշխատութեան տեղին, ուր Երկիրը ճեղքելով յոյսերնին կը թաղեն և կ'սպասեն Երկնից կամարի գթութեան, որ անձրև ցօղէ յաճեցումն ցանուած ցորենոյն կամ թաղուած յոյսերուն, որովք ապրած են և տակաւին կ'ապրին այդ Երկրի հողագործներն, որոց ապագային արդարև վայ կը լինի, երբ Երկինք անգթանայ կամ պղնձանայ Մծբնայ Հայրապետի օրուան պէս.

## ԳԼ. ԼԳ.

### ՀՈՎԻՒ ԵՒ ՀՕՏ

Հայոց ոչխարներն կսկսին 'ի դաշտս և 'ի լերինս յաճախել, վասն զի ձիւներն երթալով ցամաք երկիրն արդէն կերևի և ոչխարքն նախորդ-տարիէն մնացած չոր խոտերու ծայրերովն գարնան սկիզբի ամիսներու մէջ կրնան կշտանալ, արեգակնային տեղերն, զոր « պառօծ » կ'անուանեն, բաւական խոտի ծայր ունին դուրս տըուած կամ ծլեցուցած, որով կրնան ոչխարաց նոր խոտի նուպարն (առաջի ճաշակն) տալ: Ոչխարներն կսկսին ծնանիլ, (մարտի սկիզբէն ց'վերջ մայիսի) գիւղօրէից վերայ առ հասարակ ուրախութիւն և հրճուանք կը տիրեն, հովիւք կը ժպտին և ոչխարքն ծնեալ գառանց հետ 'ի միասին կը ճարակեն. վասն զի այս ատենուան (մարտի սկիզբէն ց'ապրիլի կէս) ոչխարին տուած կաթն միայն զիւր գառնուկն հազիւ կարող է

մնուցանել և արդէն գառնուկն առատ կաթով մնանելոյ պէտք ունի բաւական օրեր ։

Մեր հովիւն կապանակը (երկայն վերարկու կամ գուրգուրուն թաղիքէ շինուած և թանձր, որով ձմեռուան ցուրտէն կը պաշտպանուի) հագած՝ կը հսկէ հօտին վերայ թէ 'ի մակաղատեղւոջ, թէ 'ի լերինս և թէ 'ի դաշտս, զի մի գուցէ գայլի մը կերակուր փախցունէ և կամ ոչխարի մը ծնանելոյ ատենը, դիպուածով մը, գառնուկն մեռանի, որ անձնանուէր հովուոյն համար մահ է, վերջապէս հովիւն կը հսկէ և ՍԻՐՈՎ կը հսկէ ։

*
* *

Երբ ոչխարք գոմէն դուրս հանել ուզուի հովիւն կ'առնու իւր հովուական գաւազան 'ի ձեռին, հացալից մախաղն կը կապէ կռնկին, գոմի դուռն բանալով չրթանց և ձայնի այլ և այլ նշաններ կը տայ ոչխարաց, որոնք անմիջապէս ոտքի կ'ելնեն և շուներն ալ կ'սկսին դլխով մըշտկել կամ զարնել ծոյլ ոչխարաց կռնկին և դմակին (գույրուք) և այսպէս բոլոր ոչխարներն դուրս հանելով հովուոյն բոլորտիքը շրջապատել տալէն յետոյ, նորէն շներն գոմէն դուրս կելնեն. հովիւն հօտին առջեւն ընկած՝ կը դիմէ դէպ 'ի սարեր վերստին յարաբերութեան մէջ մտնել Աստուծոյ և Բնութեան հետ. այս պահուս տիրասէր և հաւատարիմ գամփռներէն ոմանք հովուոյն շուրջը կը պատեն 'ի ճանապարհի չարու-

նակութեան, ոմանք ոչխարաց մէջ կը քայլին և ոմանք ևս հօտին ետևէն ընկնելով դանդաղաքայլ ոչխարներն կամ խումբէն հեռու մնացածներն կը քշեն, իբրև թէ «Նու-րէ-տէ» եղած ըլլային։

Երկու կամ երեք հովիւ հաղարաւոր ոչխարներ կարող են աներկիւղ առաջնորդել Երկրի ամենէն ամայի տեղերը, յորս մահկանացուն առիւծասիրտ իսկ լինի դարձեալ իւր մասնաւոր երկիւղի տագնապն կրնայ ունենալ, եթէ ոչ 'ի մարդկանէ, գոնէ 'ի բնութենէ. այս բանի գաղտնիքն ոչխարաց հետ երթացող 6–10 շանց հաւատարմութեան և երախտագիտութեան մէջ փնտռելու է. այս օրինակ շուներն գայլխեղդ (գայլ խեղդող) կ'անուանին, որոց վերայ հովիւն արդէն կատարելապէս վստահ է և ոչ ոք կարող է ոչխարին ձեռք դպցունել բացի հովուէն։ Եթէ 'ի հեռուստ մի գայլ երևի կամ մի անծանօթ մարդ, հովիւն իսկոյն սուլելով նշան կըտայ իւր գամփռերուն, որք կը պատրաստուին եկողին դիմադրելոյ կամ նորա վրայ յարձակելոյ, որ դարձեալ առանց հովուոյն նշանտուութեան չէ։ Հօտապահ շներն, որոց համար յատուկ ոչխարաց կաթ կայ սահմանեալ, փայտէ, սուրէ, հրացանէ բնաւ գլուխ չեն ծռեր, այնպէս որ երբեմն մարդս կը զարմանայ։

## ԳԼ. ԼԴ.

### Հովուական ճաշ

Հովիւն երբոր զոչխարս որոշեալ տեղին

կը հասցնէ զանոնք կը յանձնէ իւր հաւատարիմ պահպանողացն և ինքն աղբիւրի մը քով կամ մի այլ յարմար տեղը կը նստի հանգիստ առնուլ և ապա տօպրակէն դուրս կը հանէ իւր հովուական կօտ (փայտէ [illegible]) , մի քանի հատ ոչխարներ կթելով կը լեցնէ ու կը դնէ զայն բացօդեայ տեղ մը, քարերու տակ պաղեցնելոյ համար ։ Երբոր յոբնկուան իւր որոշած ճաշի ատենը կուգայ , հովիւն ունի բազում նշաններ զոչխարս առ ինքն հրաւիրել , շներն արդէն մըզում կըտան այդ հաւաքման , ոչխարներն խուռներամ գալով կը շրջապատեն զհովիւն , որ սոյն պահուն իւր աղալից պարկէն ափով աղ կը հանէ և ոչխարաց կը կերցնէ , շատերն իսկ կըգան ու կը լիզեն հովուոյն աղոտ ձեռքը ամենայն ախորժանօք , որ յետոյ ոչխարաց մաղալ կըտայ (հանգիստ կըտայ) , շներն կը կերակրէ և 'ի վերջոյ ինքն կը բերէ քարի տակէն կաթնալից կօտըն , որոյ երեսը սեր և միանգամայն ՍէՐ կապած է , հովիւն կ'սկսի իւր անսեթեւեթ , այլ պատուական ճաշիկն ընել . այս պահուս ոչխարքըն , իրենց սովորութեան համաձայն , տեղերէն չեն շարժիր ։ Կը պատահի որ ճաշի միջոցին ոչխար մը ծնանի հովիւն անմիջապէս պէտք եղած խնամքն կը տանի իւր ճաշն ձգած ։ Մէկ երկու ժամու չափ ժամանակ անցունելէն ետքը զոչխարս կը հանէ կրկին յարօտ և այսպէս գեղեցիկ և բնական կենօք զօրն երեկոյ ընելով

ծնելոց մէջէն ժիր գառնուկներն կը թողու մարց հետ և տկարներն յիւր տօպրակ կամ խուռճին մէջ (հայպայ) դրած՝ կը ձգէ «նէրի» (նոխազ) կոչուած մեծ և արու այծերուն վերայ ու կը վերադառնայ 'ի գիւղ։

Դարձեալ կը պատահի երբեմն որ մի բարեկամ, ցորեկ ատեն յարօտատեղին կամ ճաշին վերայ հովուոյն այցելութեան գալ ուզէ, շներն կարգելուն զինքն, որ կը պարտաւորի բարձրաձայն պօռալ և յայնժամ հովիւն մի ընտանի ձայնով կը կոչէ առ ինքն արգելիչ գամփռերն, և զանոնք 'ի հանդարտութիւն կը հրաւիրէ. այդ երախտագէտ անասունքն, գիտես թէ անմիջապէս կզգան եկող մարդոյ ներքին տրամադրութիւնքն ու ըստ այնմ կը հանդարտին կամ կը կատղին (սաստիկ բարկանալ) և զհովիւն շրջապատած՝ լըջօրէն կը դիտեն զայցելուն։

Հովուական պարգև

Ոչխարաց արածելոյ արօտատեղէն երբեմն պատուաւոր ճանապարհորդ մ'անցնի, մեր հովիւն կառնու մի սիրուն գառնուկ յիւր գիրկ կամ մի գեղեցիկ խոյ կը տանի ճանապարհի եզերաց վերայ կը կենայ, յորմէ 'ի հեռուստ երեւցող ճանապարհորդն պիտի անցնի և երբ մօտենայ հովիւն քաղաքավարութեամբ մը, անոր առջեւ կը բռնէ զգառնուկն և կը կենայ ակնածօրէն լուռ, ճանապարհորդն նրան կը տայ մի քանի դահեկան պարգև և կը մեկնի, եթէ

ժամանակ ներէ, կ՚առնու զգառնուկն հովուոյն գրկէն, բաւական զանի սիրելէն յետոյ, կրկին տիրոջ կը յանձնէ ու կը հեռանայ։

Հայաբնակ գաւառաց հովիւներու և գառնարածներու այս սովորութիւնն երբեմն գիւղացի մշակներն ևս 'ի գործ կը դնեն և փոխանակ ոչխար կամ գառնուկ բերելոյ ահագին եզ մը կը հանեն անցորդաց առջեւ։

*

* *

Մայիսի ծաղկապսակ ամսոց մէջ մտած եմք արդէն. Երկրի դաշտերն և բլուրներն, լեռներն և ձորերն առ հասարակ պճնած են գոյնզգոյն ծաղկամբք, երգեցիկ թռչուններն իւրեանց գեղեցիկ և մոգական դայլայլիկներովն զհայրն կենաց կը փառաւորեն։ Այս ամսոյ մէջ ամեն առաւօտ գիւղացի կանայք և օրիորդք, Արուսեակի ծագմանը, իրարու հետ կ՚ընկերանան, կռնակնին կը կապեն հաց և բանջարահան գործիք ու կը գնան 'ի դաշտս, առ 'ի քաղել զբանջարս և զծաղկունս և երբ կը հասնին իւրեանց կանխաւ ընտրած տեղին, յայնժամ ոչխարացնման կը սփռուին դաշտաց երեսը և իւրաքանչիւրն կ՚սկսի իւր հաշուոյն քաղել զընտիրըս 'ի ծաղկանց և 'ի բանջարեղինաց. այսպէս անխոնջ կ՚աշխատին մինչև ցերեկ և ապա իրարու ձայն տալով կը պատրաստուին ճաշելոյ, ամեն մէկ ընկեր իւր ունեցած հացն մէջ տեղը կը դնէ և ընկերութեամբ գեղջկական սեղան

մը կազմելով՝ անուշ ջրոյ մը շուրջը կը բոլորուին, աստ է տեսանել մեր գեղջկուհեաց անմեղ խընճոյքն, զոր կ'ընեն շատ ուրախութեամբ ։ Ճաշէն յետոյ իւրեանց աշխատանաց պտուղներն կ'սկսին կարգադրել փունջ փունջ կապելով, իւրաքանչիւրն իւր ճաշակին համաձայն ։ Այսպէս փոքր ինչ հանգիստ առնելէն ետքը, ոմանք ես փոքրիկ քուն մը կը քաշեն աղբիւրի մ'եզերքը . 'ի վերջոյ իւրեանց մէջէն երիցագոյնն ձայն կը տայ միւսներուն ասելով «ելէ՛ք, քոյրք իմ, ելէ՛ք չարչարուիլ, օրն հիվար (երեկոյ) է» . ամենքն վեր ելած՝ վերստին դաշտաց երեսը կը բռնեն ։ Օրն տարաժամութենէն զով լինելով՝ աշխոյժնին նորոգութիւն մը կ'զգենու և դարձեալ կը քաղեն, կը փնջեն, ու մեզարնին (1½ մեթր մեծութեամբ քառակուսի լաթ մը մաղէ և կտաւի նման գործուած) և տօպրակնին ։ Երեկոյեան վերադարձն կը մերձի, ոմանք գլխոյ պսակներ կը շինեն ծաղկեայ, սիրտերնին ուրախութեամբ լի է, ամենքն բնութեան տուած պարգևներով կը ժպտին, ոչ ոք 'ի նոցանէ տըրտումերես ունի, այդ հայուհիներն գլուխնին ծաղկամբք պսակած՝ վերադարձ կ'ընեն 'ի գիւղ, ուր կեցող այլ օրիորդք և անչափահաս մանչերըն կը դիմաւորեն զիրենք, իրարու բաժին կը հանեն ծաղիկներէն, և ուտելիքներէն, զորս գիւղի պառաւ կանայքն կսկսին գնահատել իրենց ընծայի մէջ, զոր այս պահուս կ'ընեն հա-

ւաքուած գիւղի անկլնական տեղերը ։

Բանջարեղէնքն կը ծառայեն Հայ գիւղացւոց 'ի կերակուր պահք աւուրց համար, զոր աւրողն ամենէն կը քարկոծուի (կ'անարգուի) ։

* *
*

Գարնան երեք և ամառուան առաջի ամիսները ոչխարներն, առ հասարակ, 'ի գիւղ կը բերուին կթելոյ համար և անոնց ամենէն աւելի կաթ տալոյ ժամանակն է մայիս 15էն ց'վերջ յունիսի. այս ատենն ոչխարներն երկու անգամ կը կթեն ։

## ԳԼ. ԼԵ.

Պերատեղէ (բերատեղէ)

Այսուհետև կը մտնեմք ամառուան ամենէն աւելի տաք ամիսները, դաշտերն և լեռներն կանանչ կերպարանքնին տակաւ առ տակաւ չորցնելոյ վերայ կը գտնուին, ոչխարաց կաթըն կ'սկսի նուազիլ, մանաւանդ եթէ ճամբայ չատ ընեն, այս պատճառաւ հովիւներն գիւղէն 1 ժամու հեռաւորութեամբ տեղի մը կընտրեն զոչխարս հոն 'ի կիթ բերել, մինչև բուն աշուն ։

Ցորեկին 'ի ժամ 7–8 գեղջկուհիք կռնակնին սեռիկ (ֆաանօղ) մը կապած՝ բուրդ մանելով խումբ խումբ կը դիմեն այն տեղը, զոր կ'անուանեն «Պերատեղ» և ուր հովիւն զհօտն պիտի բերէ հեռաւոր արօտատեղերէն ։ Այն կանայքն և աղջկունքը, որ բերատեղին կ'երթան 'ի կիթ

ոչխարաց կ'անուանին «Պերուար» (բերուար), հօ-վիւն, որպէս ասացի, զհօտն առած կը գայ բե-րատեղին, աստ նշան տալով ոչխարք շուրջ զտեղ-եաւն կը բոլորեն, գիւղի բերուարքն եկած պատրաստ կեցած են, յորոց իւրաքանչիւրն ու-նի իւրեան յատկացեալ տեղին, ուր նստելոյ համար մէկ մէկ քար տրուած է, որոյ վերայ կը բազմին. այս պահուս փոքրիկ աղջկունք խայ-տալով կը վազեն, հօտի մէջէն կթելի ոչխարնե-րըն մի առ մի կը բերեն բերուորաց առջև, կը կեցնեն, բռնելով ոչխարաց գլուխէն, իսկ այ-ծերուն մօրուքէն և բերուարքն կը կըթեն զա-նոնք մեղմօրէն ձայներ հանելով: Լմնալէն ետքը կաթերնին իրարու փոխ կըտան, ոմանք պար-տատէր կը մնան և ոմանք պարտապան, յետ այնու կաթնալից սեռիկնին կռնակնին կապած՝ դարձեալ խումբ խումբ 'ի գիւղ կը վերադառ-նան:

Գառնարած

Այս ատենը գառնարածն զգառինս առած՝ մի բլրոյ ետևը, ոչխարաց աչքէն անտես, ան-համբեր կ'սպասէ հովուոյն նշանտուութեան; նոյն և առաւել անհամբեր վիճակի մէջ են նաև խեղճ գառնուկներն և ուլուկներն, հովիւն նը-շան կըտայ գառնարածին, որ անմիջապէս կար-ձակէ զգառինս, որք, առանց կապանքի և պա-րըսպի բանտարկուած էին գառնարածի ազդե-ցութեան ներքև, ահա հոս կայ անբացատրելի

տեսարանի մը քաղցրութիւն, զոր կ'զգայ մահ-կանացուն, երբ կը տեսնէ այդ փոքրիկ և ան-լեզու անասնոց աճապարն դէպ 'ի իւրեանց ՄԱՅՐԵՐՆ, որոնք, որդեկորոյս ծնողացնման, շուարեալ կեցած՝ կընային սաստ և անդ, գլուխնին դարձնելով և ձայնելով գառինքն կը խնդրեն, մարդկային կարեկցութիւն հրաւիրող հայեացքներ նետելով առ հովիւն: Այժմ գառներըն եկած և մտած են ոչխարաց մէջ և 4–5 վայրկենի տեւողութեամբ ամեն գառներն մայրերնին կը գտնեն. երբեմն խառնաշփոթութիւնք հօտին մէջ կը տիրեն և գառներէն ոմանք մոլորելով չեն կրնար մայրերը գտնել, յայնժամ հովիւըն զանոնք կը յանձնէ իւրեանց մարց վաղվաղակի, այսպէս $^1/_2$–$^3/_4$ ժամու չափ գառներն իւրեանց մայրերու արդար կաթ ուտելէն ետքը գառնարածն և հովիւն յոտս կելնեն և կը մեկնեն զգառինս 'ի մարց կամ զմարս 'ի գառանց, և ապա հովիւն դարձեալ զոչխարս և գառնարածն զգառինս առած՝ կերթան կըկին 'ի դաշտս և 'ի լերինս, յորս ց'խոնարհիլ Արևուն արածելէն յետոյ ուշ ատեն կը վերադարձնեն զանոնք ի գիւղ:

Ջոմա

Գիւղացիներէն ոչխար շատ ունեցողներն, գիւղէն 4–5 ժամ հեռաւորութեամբ մի խոտաւէտ, լեռնադաշտ կամ յարմար ձորամէջ մի կընտ-

ջեն իւրեանց համար և հոն կը պատրաստեն վրաններ, մի քանի տուն այսպէս ի միասին կը բնակին և անդ կը կըթեն ոչխարս, անդ կը պատրաստեն սեր և կարագ, իւղ և պանիր, ժաժիկ և չորթան, գիւղացւոց այս սովորութեան « զոմա » անուն կըտան, որ 2–3 ամիս կը տեւէ և Քրդաց մէջ աւելի ընդհանուր է։

## ԳԼ. ԼԶ.

### ԱՄԱՌ

### ՅՈՒՆԻՍ, ՅՈՒԼԻՍ, ՕԳՈՍՏՈՍ

Ամառուան ամսոց սկիզբը խոտերն կսկսին քաղուիլ, բազմաթիւ սօրակներ (բանւոր կամ առօրեայ վարձկան) սարերը և ձորերն, դաշտերը և լեռները կը բռնեն, երկիւղն արդէն փարատած է ամեն կողմերէ. այսպէս մի ամսոյ չափ խոտաքաղութիւնն շարունակելով կը մերձի հնձոց ժամանակն, այսատեն մեր Հայ գիւղացիք խորին մտատանջութեամբ և գուրգուրալով կը նային արտօրէից վերայ, որոց հասկերն ատոքի ծանրութենէն գլուխնին ծռած են, որք մալուլ (տրտում) գիւղացւոյն դէմքը պահ մը ժպիտներով կը ծաղկեցնեն, որով իւր տխուր սիրտն կը լենայ գեղեցիկ յոյսերով։

Տարի կը լինի՝ որ արմատներն ուտող խլլուրդներ կամ հասկերն կրծող թրթուրներ կը գոյանան և մեծ աղէտ կը բերեն յուսալից արտերու գլխին, խեղճ գիւղացիք մարդոցմէ յոյսերնին

բոլորովին կորած՝ կը դիմեն Երկնից գթութեան. բերել կըտան Ս. Գեղարդ կամ այլ և այլ սրբոց մասունքներ, զանազան անուամբ Աւետարաններ, որովք հանդիսաւոր եղանակաւ անդաստան կ'օրհնեն երկարօրէն և սրտառուչ աղօթքներ տեղի կունենան դաշտաց մէջ, ուր մատաղ կընեն պարարակ եզներ «'ի բարձումն Աստուածային պատժոց» որպէս կանուանեն: Կը հասնի վերջապէս զարտօրայս քաղելոյ ժամանակն և ահա հունձք բաղումք են և մշակք ոչ սակաւք:

Մեծ արտերու մէջ կը լեցուին հնձաքաղներն, իւրաքանչիւր կարգն կամ խումբն ունի իւրեան գլխաւորն, զոր «հօնած» կանուանեն, որ ամենէն լաւ և արագ հնձողն է և որոյ պաշտօնն է միանգամայն սահման դծել միւս հնձողաց և այդ սահմանն, զոր հօնածն նեղ ճանապարհի պէս կը բանայ «հօն» կանուանեն, հօնածէն անմիջապէս ետքը եկողն «հօնած եղբայրըն» է: Հնձողներն ցորեկուան ճաշերնին կընեն, որոց գլխաւոր կերակուրն է լօկ ապուր և աղջրոյ մէջ պահպանուած բանջարեղէնք, եթէ օրն պահք է. իսկ եթէ ուտիք՝ կերակուրնին է թանապուր և կամ չիկաթան: Շաբաթ երեկոյ արտի տէրն արդէն կը բերէ ճաշ (կորկոտով շինուած), որոյ երեսին իւղն կալեկոծի, նոյնպէս մածուն, որ իրենց ամենասիրելի և շատ սովորական եղած ուտելիքն է: Ցորեկուան ճաշէն ետքը կուտեն սխտոր կամ կը խմեն սխտորաջուր, նոյնպէս

և քացախ. իրենք արդէն փորձառութեամբ գիտեն թէ սխտորն և քացախն շատ առողջապահական են ամառուան այդ տաքուն երբ Արեն կիզիչ է, որոյ ներքև օրն ի բուն չարաչար աշխատելոյ կոչուած են:

Կը յիշեմ թէ մի օր երբ ընդարձակ արտի մը հնձողաց այցելութեան գնացի, զիս թախանձանօք վար դրին և կարապետիս հետ ճաշերնիս ըրինք այդ գիւղացւոց հետ, որոց ճաշի եղանակն կամ կերակուրն, ինչ ալ լինէին, արդէն չէին կարող ինձ դժգոհութեան մը տեղի տալ, երբ իմ նպատակն էր անոնց կեանքն անձամբ շօշափել և սերտել: Բանի հետաքրքրական էր տեսանել, որ սոքա ի վերջոյ սկսան, իբրև մարսեցուցիչ, բարկ (թէօզին) քացախ խմել կարգաւ, նախ և առաջ ուղեւորիս հրամցուցին, իբրև վառուած սրտի զովարար, և իրենց խելքով իբարու կը բացատրէին քացախի այդ տաք պահուն ունեցած օգտակարութիւնն, ես արդէն անսովոր էի այդմ և չկրցայ ընդունիլ կամ'ի ձեռին առնուլ քացախին ամանն, սիրով թող տալով իմ բաժինն ագահ կարապետիս, որոյ գինւոյ նման խմելու փափաքն արդէն ծանօթ էի. սատ հնձողաց մէջ կայր մերձակայ գիւղի տէրտէրեան-վարժապետն, որ խնդրեց ինէ պատճառն հասկցնել քացախէն չխմելուս, որպէս զի իրենք ալ այնուհետև այդ սովորութիւնն ձգեն. պէտք զգացի այս պահուս դոհացուցիչ պատասխան

մի տալ այդ անձին՝ որ ներկայացնողն էր ամենուն, « ով գիւղացիք ասացի, դուք շատ իրաւունք ունիք քացախ խմելոյ և միանգամայն սխտոր վրան ուտելոյ, վասն զի դուք օրն ողջոյն Արեգական ճառագայթից ներքև չարաչար կաշխատիք և ձեր սիրտն, անշուշտ եղանակի բնական տաքութենէն, այրած և թերևս մրկած է. իսկ ինձ գալով՝ իմ սիրտն ալ ձեզ նման այրած է թէպէտև. սակայն . . . , այս վայրկեանիս Արևուն ձեզ տուած նեղութեան դարմանն քացախն ընտրած էք և չունիք այլ դարման մ՚ ՚ի ձեռին. ուստի դորա գործածութիւնն կրկին կը յանձնարարեմ ձեզ ՚ի զովացումըն. առ այս իրենք շարունակեցին քացախի այդ օրինակ գործածութիւնն և ապա վերջացուցին գեղջկական ճաշն, որմէ յետոյ սոքա ունեցան հանգստութեան ժամեր, յորս ոմանք սկսան խուրձերու շուքին տակ անհոգօրէն քուն քաշել, ոմանք մանգաղնին կամ գերանդինին սրել:

* * *

Արտ քաղելոյ ատեն, երբ պատուաւոր անցորդ մը մերձակայ ճանապարհէն անցնելոյ լինի, յայնժամ արդի հոնածն մեծ խուրձ մը կապած՝ կը տանի և անցորդին առջև և ՚ի պատիւ անոր յոտին կը կանգնեցնէ զխուրձն, իւր բնական դիրքովն, ապա պարգևն, ինչ որ է, ընդունելով կրկին իւր խուրձովն կը վերադառնայ

առ իւր ընկերս . դարձեալ յաւարտ արտին մի և նոյն բանն կընէ հոնածն իւր տիրոջ նկատմամբ , որմէ չալ մը կսպասէ ։

Շաբաթ երեկոյները արտօրէից հնձողներն խաղալով և ուրախութիւն ընելով 'ի գիւղ կը վերադառնան , զի հետևեալ օրն ՕՐ ՀԱՆԳՍՏԵԱՆ է, հետևաբար դառն քրտանց մէջ մտնել չ'կայ , և պէտք է Ս. պահել զայդ օրն , երկիւղածութեամբ յեկեղեցի դնալ, ուրկէ դուրս կրնան կեանք չունենալ, հոգւով ու մարմնով կամ նամով և նմուշով անհետանալ այդ Երկրի կապոյտ կամարի տակից ։

## ԳԼ. ԼԸ.

### ԿԱԼ ԵՒ ԿՈՒԹ

Երբ հունձքերն դաշտերէն կը բերուին, յայնժամ կառավարութենէն գիւղի տասանորդ առնողն թէ' Մահմետական լինի այն և թէ' Հայ կը գայ 'ի գիւղն , ուր ամենէն պատուաւոր բնակավայրն իրեն համար պատրաստուած է . այն պաշտօնեայն « Շահնա » կը կոչուի , ում համար այսուհետև հաւն ու հաւկիթ , ձուազեղն և մածուն , սերն և կարագ առատ են . գիւղի այդտղան չարայի որկորն իսկ ունենայ , դարձեալ չիրակայ ամբարք չեն պակսիր . նա ամենուն կը հրամայէ , ամեն բանի կարող է և ամեն ժողովներու նախագահն , որ ունի իւր իրաւասութեան ներքև 2-3 ստորադաս մարդիկ , որոնք խստե-

րու խուրձեր կը համբեն , կալերու ցորեաններն կը չափեն և այլ գործեր կը տեսնեն վերաբերութեամբ տասանորդական տրոց ։

Դաշտերն, շատ արտերու հետ, արդէն սկըսած են չորանալ , բնութիւնն օր ըստ օրէ մի տխուր պատկեր կզգենու և իւր բազմատեսակ զարդերէն կը մերկանայ , ծաղիկներն թափած են և շատերու կոկոններն գոցուած , որք այլ ևս չ'կամին հոտ ներշնչել մարդոց, յորոց բազումք մարդկային և միանգամայն Աստուածային օրինաց հակառակ կը վարուին , որպէս յաճախ կը տեսնուի մեր Հայաբնակ գաւառաց գիւղական մասի տարեկան կենաց շրջանին մէջ ։

Հովիւներն զոչխարս կը խուզեն և տակաւին գիւղացւոյն գիշեր ու ցորեկ յայտնի չեն ։

Արտերէն որայքն արդէն 'ի կալատեղն եկած են և տակաւին կըգան . գործածելի անասուններն են եզ , կով , ձի և ոմանք էշ . իրենց գործիքներն են « կամ » և « ճառճառ » . առաջինն 2 կանգուն երկայնութեամբ , մէկ կանգուն լայնութեամբ և 3–4 մատ թանձրութեամբ փայտ մի է , որոյ գլուխն ծռուած է դէպ 'ի վեր , սորա տակի երեսն կայծքարերով շարուած է , և վրայի երեսը մարդ մը կը կենայ , թէ ծանրութիւն պատճառելոյ և թէ լծան երկու եզներն կառավարելոյ համար . երկրորդն , զոր մեծ քանակութեամբ հունձք ունեցողներն միայն կը գործածեն , կը բաղկանայ $1^1/_2$ կանգուն երկայ-

նութիւն և 1 թիզ տրամագիծ ունեցող 2 փայտեայ գլաններէ, որոց վերայ, զանազան ուղղութեամբ ուրաքինման կտրող (բայց քիչ սուր) երկաթներ կան հաստատուած. գլաններն կը դառնան երկու կողմերէն յարմարցուած փայտերու մէջ, որոնց վերայ մի մարդ կը նստի, դարձեալ թէ ծանրութեան և թէ միանգամայն զգործիս (*) քաշող ձիերն կառավարելոյ։

Ճառճառն, որ շատ գործ կը տեսնայ, աւելի յարդ կը պատրաստէ քան թէ ցորեան։ Մեր գիւղացիներն մի լաւ սովորութիւն ունին, որ վերոյիշեալ 2 գործիքներու առջևը, շարք մը տուարներ մէկ գծի վրայ քովէ քով կապած՝ կը քալեցնեն, որոց ոտքի տակը կը մանրուին հասկերն, որոնցմէ ցորեանի հատիկներն դուրս կուգան. կալատեղին շրջան ընող անասնոց սոյն շարքն «կալատիղ» կանուանեն Վասպուրականի գիւղացիք, և Մշեցիք «կոռի»։

Կալերն յառաջ կերթան, հովերն պարբերաբար կը փչեն, որով ցորեան յարդէն կը զատեն, շեղջերն կը բարձրանան և խեղճ գիւղացին դարձեալ ուրախութիւն ու տրտմութիւն խառնօրէն կզգայ յինքեան, ուրախութիւն՝ զի կը տեսնէ իւր աչաց հանդէպ չարաչար աշխատանաց և դառն քրտանց արդիւնք եղող կար-

(*) Սոյն գործիքին եզներ ալ կը լծուին, սակայն ձին աւելի ընդհանուր է, որպէս զի շատ արագօրէն դառնայ. սորա համար զոյգ ձի ալ կը գործածեն։

մրուկ ցորեաններն, (*) յորոց շատ սիրայօժար կը տայ « զԿայսերն Կայսեր և զԱստուծոյն Աստուծոյ ». Նա վեհ սրտով տակաւին կը տայ վանուց վարդապետաին, կըտայ գիւղի քահանային, կըտայ վարժապետին (եթէ ունին), կըտայ ոչխարարած և գառնարած հովիւներուն, կըտայ մշակին և խոտաղին, կըտայ անդիարածին, կը տայ քղիրին, կըտայ պահապանին (Խօ.....ճէ). այդ գիւղացին տակաւին բաժին կը հանէ իրմէն աւելի աղքատաց և բաժին կը հանէ քնչուին, որ կեցած է կալին աւընթեր չափելոյ պահուն ։ Գիւղացին իւր ցորենի բաժանումն տակաւին կըչարունակէ և այս անդամին մի այլ չեղջէ կըտայ չէրչին, կըտայ խանութպանին, որմէ ապրանք առած է, զոր « փարթալ » կանուանեն այսպէս կը լեցնեն քաղաքացւոց բեռները և ահա ցորեաններու չեղջերն աներևոյթ եղած են ։ Այս ամեն արդարև յուսահատ կերպարանք մի կ'զգենու մեր գիւղացին, որ վիղ ծռած՝ և գլխիկոր յիւր տնակն կը վերադառնայ կողակցին դուժ տալ թէ « կին էլ ցորէն չ'մնաց կալատեղ, զմէն գնաց, Աստուած թող նորէն տայ, նորէն ուրախանանք, ողջ մնան մեր եզներն և մեր բազուկներն »։

Հուսկ ուրեմն կալի տկուցք, զոր « խղուղ »

---

(*) Որով կը հոգայ իւր բոլոր պէտքերն եւ կը վճարէ պարտքերն, զի գիւղացւոց գրեթէ բոլոր սակարկութիւնք ցորենով կը լինին։

կ'անուանեն, կրկին և կրկին կը ծեծեն և վրան կալ ընելով մնացած ողորմելի ցորեաններն կը հանեն, որով կը պատրաստեն իրենց տան պարէնը, որ շատ անգամ չբաւելով փոխառութիւն կ'ընեն տարեկանի (շաւդար) և մանաւանդ գարիի, մինչև յաջորդ տարուան կալ ու կութի ժամանակն. սոյն օրինակ փոխառութիւնն «սալաֆ» կ'անուանեն։ Այսպէս գործերնին շարունակելով կ'աւարտեն կալերն մինչև աշնան առաջի ամսուան 15ին, որմէ ետք ձմեռն օր ըստ օրէ զգալի լինելոյ վերայ կը գտնուի։

## ԳԼ. ԼԸ.

## ԱՇՈՒՆ

### ՍԵՊՏԵՄԲԵՐ, ՀՈԿՏԵՄԲԵՐ, ՆՈՅԵՄԲԵՐ

Հայ գիւղացիք աշնան սկիզբը կ'սկսին խոտերն դիզել, դէզերն գլխել(*), ախոռներու, գոմերու և տանց ծակ ծուկներն կաւով ծեփել, դուարներու գլուխները դնելոյ համար կապանքներ պատրաստել, մսրանիք (մսուններ) վերանորոգել, քայքայեալ տեղերն շինել և այլն։ Ախոռի դուռն արդէն առ հասարակ տան վերի անկիւնը բացուած է, հետևաբար անասուններն իրենց երթևեկութեան առաջին ճանա-

(*) «Դէզ գլխել» կ'անուանեն երբ խոտի դէզն բրգաձեւ չարելէն եւ աւարտելէն ետքը գլխուն վերայ մի քանի խուրձ եղէգ կամ տարբեր խոտ կը ձգեն, որպէս զի դէզն ձիւնէ եւ անձրեւէ անվնաս մնայ։

պարհն ունին տան միջավայրը և թէ ե՞ր աղագաւ գիւղացիք պարտաւորուած են տարօրինակ ճաշակ մի տալ անանոց այդ բնակութեան չէնքի կերպին, մի զատ հարց է, որոյ պատասխանն շատ հետաքրքրական, զոր աստ 'ի վեր հանել չունիմ նպատակ։

*

Աշուն կը վարեն կորդ երկիրներ գութանով, որ Վասպուրականի մէջ 4 լուծէ կը բաղկանայ և Տուրուբերանի մէջ շատ անգամ 7 է, վասն զի առաջնոյն հողերն կակուղ են, և երկրորդին պինդ։ Գութանի մաճակալն ամենէն մերձաւոր եզողէն սկսեալ կարգաւ նշանակեմք անուանքն այդ լծոց. Ա. սեւ։ Բ. մրգուգուն։ Գ. աբու։ Դ. խնձորգուն։ Ե. ուժգուն։ Զ. խօսրէկ։ Է. փոշեգուն։ Զափահասքն առաջի լուծերուն վերայ և անչափահասքն վերջնոց վերայ կը նստին, ընդմէջ պարապ ձգելով. գութանի լծուարներն անանոց ընթացքին հակառակ ուղղութեամբ նստած լինելով՝ նոցա կռնակներն կը մաժեն (մեղմաբար չփել) և 'ի քաջալերութիւն Հայկական և Քրդական երգերով կը գովեն զանասունըս, որոց աշխոյժն կը զօրանայ, կորովն կը վերանորոգուի, զի այդ անբանններն, գիտես, թէ ԲԱՆ ՄԸ կ'զգան գովասանքէ։

## ՁՄԵՌ

ԴԵԿՏԵՄԲԵՐ, ՅՈՒՆՈՒԱՐ, ՓԵՏՐՈՒԱՐ

Ձմեռուան եղանակին Հայաբնակ գաւա-

ռայց գիւղօրէից համար առ հասարակն օր հանգըստեան է, նման կիւրակէ աւուրց. խոնջեալ կենդանիք կը կապուին ախոռներու մէջ, մալիներն կամ նշանաւոր եղներն այդ բնակութեանց անկիւնները՝ պատուաւոր տեղերն արդէն գրաւած են, գիւղապետն պատրաստած ունի ընծայի տեղն, որ ախոռի միջավայրն է, մէկ մեթր բարձրութեամբ, որոյ բոլորտիքը չուրջանակի թումբեր են քաշուած, որոց եռեւը նոյն ուղղութեամբ կը կենան տան գոմշու ձագերն՝ իւրեանց հօգւոյն հատորները։ Այս խորհրդատեղին կը հաւաքուին մեր գիւղացիքն տարուան տխուր եղանակին, անուսուցիչ մանուկներ մանաւոր տեղերը առանձնացած՝ վէգ կը խաղան, երիտասարդներն վէգով ընկոյզ(*), որով կը վատնեն իւրեանց թանկագին ժամերն։ Ծերերն, ընդ որս նաեւ գիւղապետն, կայլոն (չըպուխ) կը ծխեն եւ իրարու պատիւ կ՚ընեն. այս ատենուան խորհրդակցութեան նիւթերու տեսակներն աւելի շատ են. ղառամեալներն ձայն չունին զի «իրենց բան լմնցած է». իսկ խելահասներն կը խորհին եւ կը խորհրդակցին, մին կը չափէ առանց կանգունի, միւսն կը ձեւէ առանց մկրատի, եւ մէկալն կը կարէ առանց ասեղի. կը խօ-

(*) Ոստան գաւառի Քուրդերն գիւղացւոց այս բօշէ սովորութիւն գիտնալով 'ի ձմերան մեծ քանակութեամբ ընկոյզ կը բերեն 'ի գիւղօրայս եւ ցորենի հետ կը փոխանակեն, 1 եւ տալով 2–3 առնլով։

սին երկարօրէն և դատողաբար ընդհանուր Երկրին վերայ, փեսայի և հարսի վերայ, ճակատագրի կամ բաղդի վերայ, վերջապէս երկրաւոր և երկնաւոր շատ բաներու վրայ. բայց չեն խօսիր բնաւ գրելոյ և կարդալոյ վերայ, կամ իրենց բացատրութեամբ սեւի ու սիւտկի (գրի և թղթի) վերայ, առ այս լուռ են և լուռ, զի սիրտերումն չկայ ուսման սիրոյ հուր: Եթէ գտնուի մէջերնին մի լուսամիտ անձ, որ կարենայ վերջի ամենակենական կէտի վերայ խօսք մը բանալ, շուտ կը կարկեն դորա լեզուն ասելով թէ «մեր ճժեր շատ կարդալով անաստուած կը լինին կամ մեր պապկնական ժամ, պատարագ չեն ճանաչեր(*):»

(*) Թէ է՞ր այս ամենատխուր եւ ամենավտանգաւոր եզրակացութեան եկած է եւ կը գայ օր ըստ օրէ Երկրի Հայ ժողովրդեան միտքն եւ զայրոյթ կըզգայ Կրթական գործէն եւ թէ ո՞յք են գլխաւոր պատճառներն, որով եւ պատասխանատու այս սպառնալից երեւոյթին, այս մասին, երկասիրութեանս շրջանակէն դուրս, պատեհ առթիւ մը, ունիմ յուզելիք մի քանի կենսական խնդիրներ, որոնք Ազգային գոյութեան եւ ապագային հետ այնպէս սերտիւ կապուած են, որպէս հոգին եւ մարմին, դրական փաստերով ցոյց տալ Երկրի լուսաւորութեան համար ճիգ թափող կարդ մը զանգակաւոր ուղտաւորներու անհաշիւ ուղղութիւն, որոց համար ց՛արդ քանի հազարաւոր ոսկիներ ծախսուած են եւ կը ծախսուին, ի՞նչ հակապատկեր արդիւնք յառաջ եկած՝ եւ թէ Երկրի զարգացեալ եւ հեռատես մասի գաղափարն ի՛նչ է վերաբերութեամբ

Երբեմն անձամբ տեսած եմ, որ իրենց մէջ այնպիսի բանաւոր խորհուրդներ տեղի կ'ունենան և գաղափարներ կը յայտնուին, որոնց արժէքն իրենք իսկ չգիտեն հեղինակ լինելով հանդերձ։ Երկրի պատուական կլիմայն արդէն զիրենք օժտած է մտային զօրաւոր կարողութեամբ մը. սակայն անմշակ մնալով կը մեռնի մտաւոր այդ կենդանի զօրութիւնն, որ 19րդ դարու կատարեալ դերասանն է։ Գիւղացիք զիրեար լաւ գիտեն յարգել, համաձայն իւրեանց բարոյական և նիւթական աստիճանին. մէջերնին երբ խօսքի տէր մի օտարական գըտնուի, խօսից կարգն միշտ իրենն է և ամենքն բերաննին բացած և ականջնին սրած լռիկ ու մնջիկ անոր մտիկ կ'ընեն, ինչ կուզէ թող խօսի, բաւական է որ յուսադրական լինի և նիւթն առնուած՝ տեղական ու փորձառական կեանքէ։

## ԳԼ. ԼԹ.

### Գիւղէ յղուած լուսանկարներ

Ձմեռ եղանակին գիւղի մէջ եթէ կայ մի տիրացու կամ փոքր ինչ ընդերձանութիւն վարժ քահանայ, կը լինի մանկանց վեցամսեայ վարժապետ, որոյ վարձքն արդէն ցորենով կը փոխարինուի։ Տիրացու-վարժապետն զուսանողս

---

մեր ակնարկած խնդրոց, զորս այժմ կը թողում իւրեանց մթութեան եւ ծանրակշիռ վիճակին մէջ ու կանցնիմ շարունակել իմ ներկայ ըսելիքն։

ու- կրթելոյ բարեմտութենէն չարժեալ՝ իւր կըշ-տին դրած է մի հաստ գաւազան, որ կը ծա-ռայէ «'ի վախ և ոչ թէ 'ի ծեծ», և որոյ շատ տեսակներն ինքն արդէն քաջ գիտէ. դասերն կա-ւանդէ 20–25 տղայ իւր գլխին ժողոված ոտքի վերայ, չեմ խօսիր դասագրեանց տեսակներու և վիճակի մասին. Ջանասէր դասատուն յօնքեր լինելոյ արդար փափաքովն որատես ուսանողաց աչքերն կը հանէ յանդէտս և ձմեռն ողջոյն այս-պէս կանցունեն ախոռի մի անկիւնը:

Ձմեռուան ժամասացութիւն (*)

Գիւղի ողորմելի քահանայն զգիւղացիս կոչել կը տայ յեկեղեցին, ձեռամբ ծերունի ժամ-կոչի մը, որ տանեաց վերայ ման գալով կը պօ-ռայ բոլոր ձայնովն «օրհնեալ է Աստուած 'ի ժամ հրամայեցէ՛ք, ողորմի Աստուած ռէս Տա-ւօ (դաւիթ) կամ այս ինչ անուն (տան մեծի անունն տալով), որ ներսէն աչքերն ճմլթկելով կը պատասխանէ «Աստուած ողորմի»:

Եկեղեցւոյ մէջ քահանայն ամեն ինչ է (բա-ցառութիւն շատ քիչ տեղեր), այսինքն եկե-ղեցւոյ բոլոր ասմունքներն միայնակ ասելոյ դա-տապարտուած է. ժամակոչն երբեմն կ'օգնէ իրեն, եթէ յիրաւի, աչքն կարենայ որոշել հնու-թենէն շարականի կամ ժամագրքի գիրերն,

(*) Ամառուան ժամասացութիւնն յար եւ նման է ձմեռուանին, միայն թէ քահանայն գրեթէ ունկընդիր չունենար:

զօրս տէր պապան եղած տեղէն կապելով կ՚ըն-թեռնու առանց ՚ի միտ առնլոյ ։ Տառերու լե-զուն սահած է և ոչ ոք կրնայ կանոնաւոր պար-բերութիւն մը լսել ու այս բանն յառաջ եկած է չուսուցանելոյ ճշմարիտ հնչմունքը ։ Տարուան մէջ 3–4 անգամ պատարագ կը լինի և գիւղացիք կը յաճախեն յեկեղեցի . իսկ միւս օրերն ժողո-վուրդն կամ բնաւ չ՚ըլլար և կամ կը բաղկա-նայ , 2 պառաւէ և մէկ ծերուկէ ։

Հարկ չ՚կայ այլևս եկեղեցւոյ չէնքի խեղ-ճութիւնն նկարագրել , քանի որ ազնիւ ընթեր-ցողիս ց՚արդ անծանօթ չէ մնացած . նոյնպէս չեմ ուզեր ծանրանալ եկեղեցւոյ քայքայեալ դրան և փայտէ բանալիին վերայ , որոնց կրնայ բնաւ պէտք չունենալ ։

# ԳԼ. Խ.

## ՏԱՆՈՒՏԻՐԱԿԱՆ ԻՇԽԱՆՈՒԹԻՒՆ

Մեր Հայ գիւղացւոց այժմեան տանուտի-րական իշխանութիւնն քիչ կը տարբերի նախ-նեաց ժամանակի վիճակէն և այս իսկ է նշան հարազատ ԱԻԱՆԴԱՊԱՀՈՒԹԵԱՆ այդ հին . . . ժողովրդեան , որ քաջ գիտէ ամեն ինչ վրայ տալ թող չ՚տալոյ համար իւր պապկնական Բը-նակավայրն , ուր երբեմն Սահակ և Մեսրոպ թարգմանեցին , Եզնիկ փիլիսոփայից , և Եղիշէն մրմունջ կարդաց . . . ։

Տան մէջ ամենէն մեծն (տարեւոր) յարգելի և պատկառելի է ամենուն համար, եթէ ծերութենէն մտաւոր կարողութիւնն կամ մարմնական կազմութիւնը չեն խանգարուած, նա արդէն իւր գերդաստանի բացարձակ հրամայողըն է, ոչ ոք նորա հրաման ոտնակոխել կը համարձակի, զի տան ՏԷՐ և ՆԱՀԱՊԵՏՆ է, եթէ գտնուի երբեմն ստահակ երիտասարդ մը՝ որ ինչ ինչ պարագայից մէջ անհնազանդ լինի, առ ժամանակ մի է այդ և ապա, այլոց միջնորդութեամբ, ձեռք համբուրիւ, սիրելի կը դառնայ տանուտեառն, որ զնորա գլուխն գըրկելով սրտագին համբոյր կըտայ նման, որպէս անառակ որդւոյ: Ինչպէս է Պապն տան արական սեռի վերայ, նոյն է և մամիկն իգական սեռի նկատմամբ: Ամառ եղանակին երբ ամենքն կերթան 'ի սար և 'ի ձոր, տանուտէրն ընդհանրապէս կը մնայ 'ի տան ('ի գեղջ) և ամեն երեկոյ հարց ու փորձ կընէ զիւր զաւակաց ողջութենէն, զաւուր ապահովութենէն և վերջապէս զօրն երեկոյ ընելէն: Տան բոլոր առն և տուրը յիւրում ձեռին է և առանց իրեն մէկը չունի իրաւունք բան մը գնելոյ կամ վաճառելոյ:

*

* *

Հօր և մօր ողջութեանը զաւակներն շատ և շատ քիչ անգամ իրարմէ կը բաժնուին, որ

«Տան հիմն քակել կամ օճախը մարել է» ։ Երկրագործական վիճակնին իսկ զիրենք պարտաւոր կը կացուցանէ, որպէս զի իրարմէ չբաժնուին, զի այդ արհեստն բազմամարդութիւն կը պահանջէ, որպէս յայտնի է ։

Երբ տանուտէրն ծերութենէն այլևս անկարող լինի գործելոյ, տանուտիրական իշխանութիւնն կը յանձնէ իւր երեց որդւոյն և կամ ամենէն աւելի խելահաս ճարտարին, ինքն գործէ և գործելէ կը քաշուի. այսու ամենայնիւ տակաւին իւր վերին իրաւասութիւնն դրեթէ կը պահէ և կը միջամտէ մանաւանդ այն գործառնութեանց, որոց մէջ փորձառու է ։

Յետ այսօրիկ տանուտէրն կը լինի տան պապիկն, և որպէս ասացի, յաճախ կը տեսնուի եկեղեցւոյ պարսպի ՇՈՒՔԻ ներքև նստած, ուր հանգիստ կ'առնու, դրեթէ միշտ մտազբաղ հանդերձեալ աշխարհին վերայ. զի ինքն երկրաւոր լինելոյ վիճակէն դադրելոյ շատ ժամանակ չունի. այդ ողորմելի մարդն հաստ գաւազան մի ունի 'ի ձեռին, սակայն բազում անգամ պատահած եմ, որ ոտքի ելած առենը կռնակն տուած է եկեղեցւոյ հիմնաքարին, առանց որոյ, մի օր աչօքս տեսի, որ ընկաւ երեսի վերայ, թռաւ ձեռքի գաւազան՝ իւր ծերութեան միակ նեցուկն և եթէ դէպքով մը ջերմեռանդ կարապետս կայծակի արագութեամբ չհասնէր և զինքն չվերցնէր գետնէն, նորա բանն բու-

սած էր ու հարկ կը լինէր զքահանայն կոչել և թաղման հանդէս կատարել:

Այսպէս ալ տանտիկինն կը լինի տան մամիկն, երբ չափազանց պառաւած է և գործերն կը յանձնէ տան մեծ հարսին, եթէ ամենէն աշխատասէրն և անտեսագէտն է(*):

Տան մը մէջէն երբ մի կարեւոր անհատ 'ի պանդխտութեան գնուի, այդ տունն միշտ սգաւոր է. այս հաշուով, ուշիմ վերծանող, կրնաս գիտնալ թէ որչափ սգաւոր տուն կայ Հայաբնակ գաւառաց մէջ, մանաւանդ երբ 'ի նկատ առնուս նոցա պանդուխտներու թիւն, զոր շատ տեղեր նշանակած եմ որչափ որ կարելի եղած է:

## ԳԻՒՂԱՊԵՏ (քեահեա) ԸՆՏՐԵԼՈՅ ԿԵՐՊՆ

Գիւղին պետ մ'ընտրելոյ համար մեծէն մինչև փոքր 'ի մի կը հաւաքուին նիւթական կամ բարոյական կարողութեան տէր մէկի մը տան առընթեր կամ մի այլ հրապարակային տեղ, ուր խորհուրդ ընելով՝ ձայնից մեծամասնութեամբ յարմարագոյն մի անձ կ'ընտրեն, զոր մի քանի գլխաւորք հետերնին առած՝ կը տանին Առաջնորդին և արդէն գնած են մի նախշուն շալ (գօտի) և կը յանձնեն զայն Սրբազա-

(*) Աչքի զարնելիք պարագայ մի է, որ մեր գիւղացի կանայքն արանց հետ համեմատելով, աւելի անտեսագէտ են:

նին, որում կը յայտնեն գիւղի որոշ կամքն 'ի մասին գիւղապետի ընտրութեան ։ Առաջնորդն, գօտին 'ի ձեռին ոտք ելած՝ պահպանիչ մը կ'ըսէ և զգօտին կը կապէ նորընտիր գիւղապետին գլուխը ։ Այսպէս մեր գիւղապետն գլուխն մեծցուցած քթին հետ և շրջապատեալ իրեններէն՝ առօք և փառօք կը վերադառնայ 'ի գիւղն, ուր խնճոյք մը կազմելով կը կոնծեն զգինին և զօղին. յաջորդ օրը խնճոյքին համար եղած ծախքերն, զոր օրինակ գիւղապետի շալն, մորթուած դառնուկն և այլն, ամենքն հաշիւ ընելով՝ գիւղի տրոց համեմատութեամբ մէջերնին կը բաժնեն և իւրաքանչիւրն իրեն բաժին ընկած կը վճարէ, թէև ոմանք ոչ առանց տարօրինակ հայհոյանաց ։

Գիւղականաց աստիճանքն

Գիւղի ժողովուրդն կը բաժնուի չորս գըլխաւոր աստիճանի. Ա. Խամբայ կամ պճեղ կ'անուանի, որ 1 տուրք ունի ։ Բ. կիսախամբայ կամ կիսապճեղ, որ $1/2$ տուրք ունի ։ Գ. Թուարեկ, որ $1/4$ տուրք ունի ։ Դ. կէս Թուարեկ, որոյ տուրքն նախորդի կէսն է, այսինքն $1/8$ ։ Այս համեմատութիւնն 'ի նկատ կ'առնուի կառավարական հարկերու և այլ տրոց մէջ ։ Ո'վ որ բնաւ տուրք մը չ'կրնար վճարել, իրեն պարտականութիւնն է գիւղի հիւրերուն ծառայութիւն ընել և անոնց ձիերը դարմանել ։ Երբեմն գիւղի

ժողովներու մէջ կալ և կռիւ տեղի կ՚ունենան, երբ տիրող կառավարութեան պաշտօնեայն կեցած՝ կը պահանջէ սայլ կամ ձի, եթէ գտնուի, և այլն(*). այս խռարանցման մէջ ծերունիք կը յաջողին զատահակն հայրաբար խրատելով հնազանդութեան բերել, որով խնդիրն կը վերջանայ. կը պատահի նաև որ ուժեղ գիւղապետի մէկ ապտակն բաւական կը լինի զատահակն կարգի բերել:

Գիւղացւոց անհնազանդներն 'ի հնազանդութիւն ածելոյ այս հայրական եղանակն զիրենք արդարև գովութեան արժանի կը հանդիսացնէ. զի տեղական կառավարութիւնն գըլխացաւէ կ՚ազատի: Գիւղապետներն «մելիք» ալ կ՚անուանեն շատ տեղերը:

## ԳԼ. ԽԱ.

Վանական տուրք (դրդւէ)

Ա. Ամէն վլծկի կամ գութան ունեցող տուն, տարուան ընթացքին մէջ, մէկ օր իւր վլծկին կամ գութան, պէտք եղած մշակներով, վանուց հողին վերայ աշխատցնելոյ պարտական է. տուն մ՚եթէ վանքէն շատ հեռու լինելով գիւղացին դժուարութիւն ունենայ 'ի վանս գընալոյ, դրամն կը տայ և ինքն չ՚երթար: Բ. Իւրաքանչիւր տուն, թէ աղքատ լինի և թէ հա-

(*) Սոյն օրինակ պահանջից օլաւմ. անուն կը տան՝ որ ձրի կը նշանակէ:

րուստ , տարուան հնձոց ժամանակը , մէկ օր մարդ մը տալ պարտի վանուց արտերն քաղելոյ համար . ոմանք դրամ կը տան փոխանակ մարդոյ ։ Վանուց համար այս օրինակ աշխատութիւնք կ՚ըսուին շուղարա , որ խիստ ուրախութեամբ տեղի կ՚ունենան , տաճուլ և շուանեան իրենց պաշտօն անհանգիստ կը վարեն և նոյն օրը վանքն կը կերակրէ զաշխատաւորս ։ Կանայք ևս կը գան վանուց գարիներն քաղել 'ի պահանջել հարկին ։ Գ. Ամէն տուն և կամ նոյն է ըսել իւրաքանչիւր գիւղ իւր բոլոր ոչխարաց կաթն մէկ օր վանուց կը տայ . եթէ այդ թեմական գիւղն վանքէն այնչափ հեռու ըլլայ , որ զհօտն 'ի վանս բերել կարելի չը լինի , յայնժամ վանուց պտղի հաւաքող վարդապետն 'ի գիւղն կը գայ և զոչխարս կթել տալէն յետոյ չինել կը տայ իւղ և պանիր , զորս գիւղի անասուններով կը փոխադրէ ։

Կողոպուտ

Դ. Վանուց իրաւունքն է արական սեռէ մեռնողի մը սովորաբար հագած զգեստներ , որք կողոպուտ անուան ներքև կը տրուին՝ հոգեբաժին , այսինքն մեռնողի հոգւոյն համար , եթէ հարուստ մէկը լինի մեռնողն , մեր հայր սուրբ միայն անձնական զգեստովն չ՚բաւականանար , այլ ուզած դուարներէն մին ևս կը տանի ։ Իգական սեռէ մեռնողի մ՚երբեմն արծաթեղէնքն ալ կ՚առնուն՝ իբր մեղաց գին , եթէ

հարուստ է՝ զգեստին ալ կէսն ։

Բայց 'ի յիշեալ տուրքերէն, տարուան մէջ, բացառիկ տուրքեր ալ կը տան վանուց, ինչպէս ցորեան, տարեկան, գարի, ձէթ (պէյնիր եաղը), իւղ, պանիր, հաւկիթ, նոյնպէս միաբանաց համար գուլպա. վանական այս կարգի տուրքերն աւելի այն գաւառներ կը տան, յորս նօղը-պօտի սովորութիւնն վերցուածի պէս է(*) ։

Խաչօխնա (խաչ օրհնէա)

Մեր Հայ գիւղացիք այսպէս կ'անուանեն, երբ իւրեանց ննջեցելոց հոգւոյն յատուկ պատարագ ընել տան և այս առթիւ այլոց հացկերոյթ կը տան հետևեալ եղանակաւ ։

Տանուտէրն (ժամ ընել տուողն) կը դնէ հօչէօե կամ թէշնէկ ահագին պտուկներով, իւղն կը հալեցնեն պղինձներով, կը կոչեն զգիւղացիս մեծամեծ խումբերով և խիստ շատ տեղեր անխտրապէս, որոնք կը գան հոգւոյ ճաշն ուտել ։ Մայր-Տան թոնիրի (Բանտըր) շրջապատը երկայն տախտակներ կամ կաշէ սօֆրաներ կը շարեն. աւելորդ է ըսել որ իրենց նստարանն կամ հանգըստարանն Երկիրն է, ուր կը զարնեն Պօղոսու-քահանայն և վարդապետ հայր սուրբ (եթէ գործով մը գիւղի մէջ կը գտնուի կամ թէմական վանքէն կոչուած է) տան վերի գլուխը բազմած են, լիարբերան կը լեցուին ճաշի թէպսա-

---

(*) Վասպուրական եւ Տուրուբերան նահանգներն ց'արդ կը պահեն պօղչի սովորութիւնն ։

ներն, որոց վերայ իւղն լճացած՝ կը ծփայ մատակարար կանանց արդարաշարժութենէն. այս պահուս ամէն ոք անհամբեր կ'սպասէ տէր պապայի ՀԱՅՐ ՄԵՐին, զոր ջերմեռանդօրէն կ'արտասանէ և խաչակնքմամբ ճաշն կ'սկսի ուտելու: Ագահօրէն ուտելոյ անվարժ մարդիկ, սեղանի առատութենէն, շատ անգամ կը կշտանան ոչինչ կերած: Հոգւոյ ճաշն տակաւին կը շարունակի և չերեփի (քեփչէ) նման խոշոր դրդալներն վար ու վեր անընդհատ կը շարժին. տան հարսներն ու երիտասարդներ, մոմի նման, դիմացնին կեցած կը վառուին պարպուածներն անմիջապէս լեցնելոյ համար. այսպէս ահա կը կշտանան ամենքն ալ:

Երկրորդ սեղան կը նստին կանայքն և աղջըկունք(*), որք արանց նման, ճաշելոյ կերպէ մասին անմիցանակ չեն և առ այս իրաւունք ունին. վասն զի իրենց չարաչար աշխատութեամբն արանց կը հաւասարին: Ի վերջոյ տան երէցն Հայրմերի լըմանը՝ չեշտելով կ'արտասանէ «օրհնեցի և պահպանեցի զտունս, զտեղիս, զայրըս և զկանայս, զծերս և զմանկտիս, զկերողս և զկերցնողս, նոյնպէս ընծայեցեալս ձեր, որ 'ի հողոյ տապանիս իցեն, 'ի լոյս երեսաց իւրեանց հանգուցանիցէ և դարձեալ զհոգիս նոցա ար-

(*) Ըստ որում իգական սեռին արականին հետ մէկ սեղանի վերայ ճաշ չընելոյ սովորութիւնն տակաւին կը պահուի, իբրև Ճախնեաց սովորութիւն.

ժանիս լեցի յարքայութեան Երկնից, զմնացորդս բարի յիշատակ և անփորձ արասցէ, Աստուած շէն և պայծառ պահեսցէ և սեղաննիդ առատացուսցէ ամէն»։ Քահանայն (*) նմանօրինակ եղանակաւ կանանց սեղանն ևս օրհնելէն ետքը ամենքն միահամուռ իրեն ձեռքը կը համբուրեն և կը մեկնին հետզհետէ։

## ԳԼ. ԽԲ.

### Քրդաց վերայ համառօտակի

Քուրդ ցեղի ընտանեկան կեանքն քիչ կը տարբերի մեր գիւղական Հայոց ունեցածէն։ Սոքա կը բաժնուին երկու գլխաւոր կարգի. Ա. աստանդական (վրանաբնակ). Բ. նստկան (հաստատուն բնակութիւն ունեցող)։ Առաջինքն հողին վերայ քրտինք թափել ոչ 'ի հօրէ տեսած են և ոչ 'ի մօրէ սորված. իրենք կենաց աշխատութեան վերայ նոր յաւելում մի ընել տակաւին չ'գիտեն, այսու ամենայնիւ երջանիկ ապրելոյ հնարքներուն քաջ ծանօթ են. իւրեանց գլխաւոր հարստութիւնքն կը կազմուին ոչխարներէ և ձիերէ, շատերն արդէն կը պահեն յատուկ ժոյգներ հեծնելոյ համար։ Ընդհանրապէս ունին պետեր, որք Խան կ'անուանին, որ ազնուական գերդաստանէ սերեալ կը նշանակէ։ Թոռուններուն հրամաններն անդառնալի են

(*) Հոգ չէ թէ ինչ ըսելն չ'հասկնար եւ սխալներով ալ կը շարադրէ։

և վճիռնին վաղ կամ անագան միշտ գործադրելի ։ Իւրաքանչիւր թոռուն իւր հպատակ բոլոր վրանաբնակներն 'ի միասին առած՝ Աշէրէթ կամ Հաշէրէթ կը կոչուի և իրարմէ կ'որոշուին տոհմական ու միանգամայն իրենց բնակած վայրերու անուանի տեղերէն ընդունած անուանց ներքև, յորոց մի քանի նշանաւոր ցեղեր աստ կը նշանակեմ, զորօրինակ Ճէպրանլը, Զիլանլը, Պըլէքլը, Սէփքըքլը, Զօրէքլը և այլն ։

Վրանաբնակաց մէջ կը գտնուին նշանաւոր տաղանդի տէրեր, (ուղղակի արդիւնք իւրեանց ծծած օդի ներգործութեան), այլ խոպան և բոլորովին անմշակ մտօք, զի դաստիարակութիւնն, որով և քաղաքակրթութիւնն իրենցմէ տակաւին շատ հեռու է, հարստութիւն քաջասրտութեան չափ նշանակութիւն գրեթէ չունի սոցա մէջ, քաջասիրտն ամենէն պատուաւորն է, ում ամենքն կը հպատակին սիրով։ Բ. Նստական մասն կը պարապի երկրագործութեամբ, որ բոլորովին անզարգացեալ վիճակի մէջ կը գտնուի ։ Հայոցմէ աւելի մեծ քանակութեամբ ոչխար պահելոյ ապահովութիւն ունին, որպէս և բաւական քաղցր յարաբերութիւն մերայնոց հետ, երբ մի և նոյն գիւղին կը պատկանին ։ Իրենց ընտանիքներէն շատերն ունին նախշուն գորգ (քէլէմ) գործելոյ արհեստն, որով կընեն գլխաւոր առ և տուրնին ։

* * *

Քրդական տարրէն, որպէս յիշեցի, շատ քիչեր Հայկական յատկանիշներէ զուրկ են և ոմանք և՛ս Հայոց կնքահայր կը լինին խաչ բռնելով կամ այլոց բռնել տալով, այսուհետև այդ քուրդն փեսայի տան քիրվէն է և անոր պաշտպանն նեղ վայրկեաններու մէջ(*)։

Սոքա կրօնական պարտականութեան մէջ շատ թերի են, մանաւանդ վրանաբնակներն, թէպէտև ունին կրօնական գլուխներ, որոնք շէխ կը կոչուին, որոց խօսքերը և խրատներն Աստուածային պատգամի չափ իւրեանց կը ներգործէ, կը վայելէն ամեն տեսակ յարգանք ու պատիւ։ Քուրդերն ասոր նման թերի են նաև քաղաքական պարտականութիւն կատարելոյ մասին, այսինքն կառավարութեան տուրք տալուն մէջ, որ գիտես թէ ինքնուրոյն վիճակ մ'ունին. վասն զի իւրաքանչիւր Պետն Տէրութեան մասնաւոր տուրք մը կըտայ իւր հպատակաց կողմանէ և ապա ինքն անոնցմէ կընդունի։

Այս ցեղն շատ վրէժառու է, այնպէս որ յորդոց յորդիս կը տևէ, նոյն իսկ եղբայր եղբօր դէմ'և վրէժն կը լուծուի միայն մահուամբ(**)։

(*) Հայերն՝ թէ՛ քաղաքացիք եւ թէ՛ գիւղացիք՝ Քրդաց Քրիվա բառով կը կոչեն, որ կնքահայր կը նշանակէ։

(**) Դուն ուրեք յանցաւորին կը ներուի, եթէ իւր ընտանիքն հետ առած՝ երթայ ներողութիւն խնդրել իւր թշնամիէն, որուն գրեթէ գերին կը դառնայ այնուհետև. այս տեսակ պարագայից մէջ, համաձայն իրենց սովորութեան, միջնորդի դեր կատարողն յանցաւորի ընտանիքն է միայն։

Քրդաց մէջ պանդխտութիւնն ամենամեծ նախատինք համարուած է, ամեն ով կապրի իւր ընտանեաց քով և դոհ իւր կացութենէն, և երբ իւրեանց կոխած տեղէն դժգոհութիւն մը զգան, բնաւ դժուարութիւն չունին փոխադրուիլ (կէօչ ընել) ուրիշ տեղ մը, որ հաճոյ լինի իրենց և անասնոցն: Ունին մի այլ սովորութիւն, այն է թէ երբէք առանձին ճամբորդութիւն չեն ըներ, կուզէ լինին ունեւոր կուզէ լինին չունեւոր, գովելի է ընկերական այս համերաշխ զգացումնին, որով լաւ ըմբռնած են թէ ճանապարհորդաց համար ամեն ինչ յուսալի այդ ապառաժ երկրի մէջ, թէ միայնութիւնն մահ է իւրեանց համար և կեանք՝ երբ տեսնեն ղայն այլոց վերայ: Մեր գիւղացւոց ճանապարհորդութեան կերպն գրեթէ միշտ միայնութեամբ է, ուրեմն թող ականջ խօսի այդ անտարբեր Հայ-մարդոց, որք, ըստ իս, իւրեանց կեանքէն շատ քիչ դժգոհութիւն զգալոյ իրաւունք ունին. վասն զի իրենք արդէն կը հետեւին այնպիսի ուղղութեան մը, որ ամեն ազգաց մէջ հաւասարապէս կրնայ դատապարտելի համարուիլ:

Ուստի խօսքս կը վերջացնեմ Եղիշէ Ս. հօր գրած հետեւեալ տողերովս թէ «զուգութիւն է մայր բարեաց և անզուգութիւն ծնող չարեաց» որոյ մէջ կը փափաքիմ ընդ միշտ տեսնել Ազգի և Կառավարութեան շահերն անբաժան:

---

Ծանօթ. — Հետեւեալ երեսին վերայ կը նշանակեմք Հայաբնակ գաւառաց մէջ գործածուած անուանց կրճատեալներէն մի քանիները:

## ԱՐԱԿԱՆ ԱՆՈՒԱՆՔ

| Անկրճատ | Կրճատեալ |
|---|---|
| Աբրահամ . | Աբրօ |
| Առաքել . | Ռըկօ |
| Աւետիս . | Աւօ, Աւտէ կամ Աւտօ |
| Գասպար . | Գասպօ, Գապօ կամ Գապէ |
| Գրիգոր . | Գորիկ, Գրկօ կամ Գորկո |
| Դաւիթ . | Դաւօ |
| Զաքար . | Զաքօ, Զքօ կամ Զքէ. |
| Թովմաս . | Թումօ կամ Թումէ |
| Կարապետ . | Կարօ |
| Համբարձում . | Խամբօ կամ Խամբար |
| Մաքսուտ . | Մախսօ |
| Մարտիրոս . | Մարտօ, Մարտէ կամ Մարտիկ |
| Մելքոն . | Մէլօ |
| Միքայէլ . | Մքէ, Մուքէ կամ Մուքօ |
| Մխիթար . | Մխօ |
| Մկրտիչ . | Մկօ, Մկրէ կամ Մկըր |
| Մնացական . | Մնօ |
| Մովսէս . | Մոսօ կամ Մուսա |
| Յակոբ . | Ակէս, Յակօ կամ Յակէ |
| Յարութիւն . | Յարօ կամ Յարթին |
| Յովհաննէս . | Յովօ կամ Յովէ |
| Պաղտասար . | Պղտօ, Պաղտօ կամ Պղտէ |
| Պետրոս . | Պիտօ կամ Պէտէ |
| Սահակ . | Սըհօ կամ Սախօ |
| Սարգիս . | Սրկօ կամ Սրկէ |
| Սեղբակ . | Սեղօ : |

## ԻԳԱԿԱՆ ԱՆՈՒԱՆՔ

| | |
|---|---|
| Եղիսաբեթ . | Եղսօ |
| Իւղաբեր . | Օղիկ |
| Հռիփսիմէ . | Խուռիկ |
| Մարիամ . | Մարան կամ Մայրօ |
| Նուպար . | Նուպօ : |

ՎԵՐՋ ԵՐՐՈՐԴ ՄԱՍԻ

**(ԱՒԱՐՏ)**

# ՑԱՆԿ ԳԼԽՈՑ

Երես




# ՎՐԻՊԱԿՔ

| Երես | Տող | Սխալ | Ուղիղ |
|---|---|---|---|
| 23 | 4 | *որոց* | *յորոց* |
| 30 | 14 | *ընդ ես* | *ընդ իս* |
| 32 | 6 | *Ազնունեայ* | *Բզնունեաց* |
| 33 | 9 | *Արճու* | *Արճչու* |
| 117 | 12 | բուղլա | բուգլա |
| 125 | 22 | *Պուրկազցիք* | *Պուրնազցիք* |
| 127 | 15 | ՍԱՅԼԻՈՐԻ | ՍԱՅԼԻՈՐ |
| 149 | 15 | Պ. | Բ. |
| 207 | 8 | *լինելոյ* | *չինելոյ* |

*Ծանօթ. — Երկասիրութեանս Բ. Մասի մէջ գըտնուած Անձրեւացիք բառն պէտք է ընթեռնուլ Անձեւացիք ։*

## ՀԵՂԻՆԱԿԻՆ ԵՐԿԱՍԻՐՈՒԹԻՒՆՔ

Նկարագրական Ուղեւորութիւն ի Հայաբնակ Գաւառս Արեւելեան Տաճկաստանի.

### ՏԵՂԱԳՐՈՒԹԻՒՆՔ

Սարէն եւ Ձորէն, Հնէն եւ Նորէն պիտանի գիտնոց

| | | | | |
|---|---|---|---|---|
| Մասն | Ա . . . . . . . . . . . . | Գին | 8 | Դահեկանի |
| » | Բ . . . . . . . . . . . . | » | 10 | » |
| » | Գ . . . . . . . . . . . . | » | 8 | » |



*Կը գտնուին բոլոր գրավաճառաց քով.*

*Դպրոցաց համար գաւառացւոց զեղչ կը լինի.*

Հրատարակելի. — Ջամալ-Միրան եւ Հայ Նազլուն
(Ազգ. վիպասանութիւն)